ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

7

ՀՈՒԼԻՍ

ԵՐԵՎԱՆ • 1965

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7 ՀՈՒԼԻՍ · 1965
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 44-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении



Բովանդակություն

# Содержание



# ՄԻՇՏ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՏ, ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՄԱՐ

Իր կազմակերպման առաջին իսկ օրից Սովետական Միության կոմունիստական պարտիան, սերտորեն կապված լինելով աշխատավորական մասսաների հետ, իր գործունեության գերագույն նպատակն է համարել անձնվիրաբար ծառայել ժողովրդին և, կանգ չառնելով ոչ մի բանի առջև, նրան հասցնել իր վերջնական նպատակին՝ կոմունիստական հասարակարգի կառուցմանը:

Ժողովրդի երջանկության մեջ տեսնելով իր ամբողջ գործունեության իմաստը, մեր պարտիան Վ. Ի. Լենինի առաջնորդությամբ դեռևս ցարական կառավարության դաժան պայմաններում իր շուրջը համախմբեց բանվոր դասակարգին և աշխատավոր գյուղացիությանը, նրանց ցույց տվեց ազատագրության միակ ճիշտ ուղին և բազում դժվարությունների հաղթահարման ու կոհողությունների գնով խորտակեց շահագործողական կարգերը, հաստատեց նոր և արդար հասարակարգ:

Շարունակելով իր պատմական միսիան, կոմունիստական պարտիան սովետական իշխանության տարիներին ավելի համախմբեց աշխատավորական մասսաներին, լայն հորիզոններ բացեց նրանց ստեղծագործական անսպառ կարողությունների գործադրման ու նոր կյանքի կառուցման համար: Կոմունիստական պարտիայի փորձված ղեկավարությամբ Սովետական Միության բոլոր ազգերի աշխատավորները իրենց ավագ եղբոր՝ ռուս մեծ ժողովրդի օգնությամբ առաջ ընթացան յոթ մղոնանոց քայլերով և պատմական ամենակարճ ժամանակամիջոցում չտեսնված հաջողությունների հասան ժողովրդական տնտեսության, կուլտուրայի ու գիտության զարգացման բնագավառներում, իրենց անծայրածիր հայրենիքում ապահովեցին սոցիալիզմի լիակատար ու վերջնական կառուցումը: Նրանք ամբողջ աշխարհին ցույց տվին, թե ինչպիսի մեծ սխրագործությունների է ընդունակ իշխանությունն իր ձեռքը վերցրած և կոմունիստական վեհ իդեալները ոգեշնչված ժողովուրդը, պատմության իսկական կերտողը:

Ժողովուրդը եղել և մնում է այն մայր հողը, որից մեր պարտիան ամեն օր, ամեն ժամ ստանում է նոր ուժ, սովորեցնում է նրան ու սովորում նրանից: Պարտիան միշտ ժողովրդի հետ է, ժողովուրդը՝ պարտիայի հետ: Բոլոր բնագավառներում մեր երկրի ձեռք բերած հաջողությունները արդյունք են սերտ միասնությամբ կոդված սովետական ժողովրդի հերոսական աշխատանքի և կոմունիստական պարտիայի կազմակերպչական ու գաղափարա-դաստիարակչական վիթխարի գործունեության:

Գնալով ավելի են ամրապնդվում մեր պարտիայի ու ժողովրդի միասնությունը, նրանց անքակտելի կապերը, և դա հասկանալի է: Չէ որ ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակի, սովետական հասարակության միասնության ուժեղացման

շնորհիվ բանվոր դասակարգի կոմունիստական պարտիան վերածվել է սովետական ժողովրդի ավանգարդի, դարձել է **ամբողջ ժողովրդի պարտիա**՝ ընդարձակելով իր ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա: «**Պարտիան,**— ասված է ՍՄԿՊ ծրագրում,—**մեր դարաշրջանի, ռևոլյուցիոն մեծ վերափոխումներ կատարող սովետական ժողովրդի միտքն է, պատիվը և խիղճը: Պարտիան աչալուրջ նայում է ապագային, ժողովրդի առջև բացում է առաջընթացի գիտականորեն հիմնավորված ուղիներ, մասսաների մեջ արթնացնում է վիթխարի եռանդ, նրանց առաջնորդում է դեպի հոյակապ խնդիրների լուծում**»:

Պլանաչափորեն ու հաջողությամբ լուծելով իր առջև դրված խնդիրները, սովետական ժողովուրդը ստեղծագործական աշխատանքի լայն ճակատով թևակոխել է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, որը բնութագրվում է կոմունիստական պարտիայի, որպես սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի, դերի ու նշանակության հետագա աճմամբ: Դա միանգամայն օրինաչափ երևույթ է, որը համապատասխանում է դեպի կոմունիստական հասարակարգ ընթացող սոցիալիստական երկրի զարգացման բուն պրոցեսին: Այդ համապատասխանությունը պայմանավորված է նրանով, որ ժողովրդի հետ սերտորեն կապված, մարքս-լենինյան ռևոլյուցիոն տեսությամբ պինված մեր պարտիան է ղեկավարում կոմունիզմի կառուցման ամբողջ աշխատանքը, դրան տալիս կազմակերպված, պլանաչափ ու գիտականորեն հիմնավորված բնույթ:

Զարգացման ներկա շրջանում, անշեղորեն կենսագործելով ՍՄԿՊ XX, XXI և XXII համագումարների մշակած գլխավոր գիծը, պարտիան բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի հետ միասին բոլոր միջոցները գործի է դրել կոմունիստական շինարարության հարցերը հաջողությամբ լուծելու: Նա առանձնահատուկ ուշադրություն է նվիրում սովետական ժողովրդի տնտեսական գլխավոր խնդրի՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը և անում է ամեն ինչ, որպեսզի նորագույն տեխնիկայի ու գիտության նվաճումների արմատավորման, երկրի լրիվ էլեկտրիֆիկացման, արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման, քիմիայի լայն կիրառման, բնական, նյութական ու աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման միջոցով ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում բարձրանա աշխատանքի արտադրողականությունը, խոշոր չափերով ավելանա նյութական բարիքների արտադրությունը, որն ամենից առաջ օգտագործվելու է ժողովրդի օրավուր աճող պահանջմունքների բավարարման, նրա նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման համար:

Պարտիայի Կենտրոնական կոմիտեն ու սովետական կառավարությունն այդ ուղղությամբ իրականացրել են մի շարք միջոցառումներ, որոնք ժողովրդի նկատմամբ ցուցաբերած հոգատարության, նրա կյանքի պայմանների բարելավման վառ վկայությունն են: Այսպես, անցած տնտեսական տարվա չորրորդ եռամսյակում բարձրացվեց ամբողջ երկրի լուսավորության և առողջապահության ավելի քան 9 միլիոն աշխատողների, ինչպես նաև հյուսիսային շրջանների բնակչությանն սպասարկող բոլոր ճյուղերի բանվորների ու ծառայողների աշխատավարձը: Այդ նույն տարում սպառման և հանրային ֆոնդերից բնակչությանը տրվող վճարումներն ու արտոնությունները կազմեցին 36,6 միլիարդ ռուբլի և նախորդ տարվա համեմատությամբ աճեցին 6,7 տոկոսով: Սպառման և հանրային ֆոնդերից բնակչության ստացած վճարումներն ու արտոնությունները մեր ռեսպուբլիկայում 1964 թվականին հասան 289,2 միլիոն ռուբլու կամ 1963 թվականի համեմատությամբ աճեցին 9,7 տոկոսով: Միութենական բոլոր ռեսպուբլիկաներում կզալի չափով լայնացվեց լուսավորության և առողջապահության հիմնարկների ցանցը, կառուցվեցին դպրոցների, մանկապարտեզների, հիվանդանոցների, սանատորիաների, հանգստյան տների նոր շենքեր, կենցաղային ու կուլտուրական սպասարկման բազմաթիվ օբյեկտներ, հասարակական սննդի ձեռնարկություններ և այլն:



Առանձնապես խոշոր աշխատանք կատարվեց բնակարանային շինարարության ասպարեզում, որը կենսական նշանակություն ունի բնակչության համար: Քաղաքներում ու գյուղական վայրերում պետական միջոցների, ինչպես նաև բանվորների ու ծառայողների խնայած միջոցների հաշվին և պետական վարկի օգնությամբ շահագործման հանձնվեցին ավելի քան մեկ միլիոն 900 հազար բնակարաններ: Բացի դրանից, գյուղերում կոլտնտեսությունների, կոլտնտեսականների ու ինտելիգենցիայի կողմից կառուցվեց մոտ 375 հազար բնակելի տուն: Միայն մեր ռեսպուբլիկայում անցյալ տարի նոր բնակարաններ ու տներ փոխադրվեցին, ինչպես նաև վաղ կառուցված տներում բնակարանային պայմանները բարելավեցին 90 հազար մարդ:

Հաշվի առնելով երկրում ծանր արդյունաբերության զարգացման բնագավառում ձեռք բերված խոշոր հաջողությունները և ժամանակակից առաջավոր ինդուստրիայի ամուր բազայի առկայությունը, կոմունիստական պարտիան խնդիր է դրել մեծ չափերով զարկ տալ ժողովրդական լայն սպառման ապրանքների արտադրությանը, սովետական մարդկանց համար արտադրել ավելի շատ ու բարձրորակ հագուստեղեն, կոշկեղեն, ինչպես նաև կահույք, սառնարաններ, լվացքի մեքենաներ, հեռուստացույցներ, պարենամթերք և այլն: Կատարելով պարտիայի առաջադրած այդ խնդիրը, երկրի արդյունաբերական ձեռնարկությունները նշանակալից չափով ավելացրել են լայն սպառման ապրանքների արտադրությունը, որը նպաստել է ապրանքաշրջանառության մեծացմանը: 1964 թվականին, 1963 թվականի համեմատությամբ, ՍՍՌՄ-ում ապրանքաշրջանառությունը մեծացել է 4,5 միլիարդ ռուբլով, կամ համադրելի գներով 5,3 տոկոսով: Նույն ժամանակաշրջանում մեր ռեսպուբլիկայում ապրանքաշրջանառությունը աճել է 8,1 տոկոսով: Իհարկե, այդ ուղղությամբ հաջողություններն ավելի մեծ կլինեին, եթե ռեսպուբլիկայի առևտրական կազմակերպությունները պատշաճ կերպով ուսումնասիրեին բնակչության պահանջարկը, իսկ ժողտնտխորհին ու արդյունաբերական ձեռնարկությունները լուրջ ուշադրություն ցուցաբերեին ժողովրդական սպառման ապրանքների որակի բարելավման ու ասորտիմենտի ընդլայնման նկատմամբ:

Գործելով ժողովրդի համար և առաջին պլանի վրա դնելով նրա բարեկեցության սիստեմատիկ բարձրացումը, պարտիան վարում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համամասնական, պլանաչափ զարգացման քաղաքականություն, ժամանակին համապատասխան միջոցառումների է դիմում ետ մնացող ճյուղերն առաջ մղելու և ամբողջ երկրում նյութական բարիքների արտադրության ընդհանուր վերելք ստեղծելու համար: Այդ նպատակին են ուղղված պարտիայի Կենտկոմի մարտյան պլենումի որոշումները, որոնք լայն հնարավորություններ են ընձեռում երկրում հացահատիկի, մսի, կաթի ու գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունն ավելացնելու և կոլտնտեսային գյուղացիության նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու համար:

Երկրի առջև դրված խնդիրների հաջող լուծման համար բացառիկ կարևոր նշանակություն ունի նոր մարդու դաստիարակությունը, որի վրա պարտիան առանձնահատուկ ուշադրություն է դարձնում: Նրա ծավալած ամենօրյա քաղաքական-դաստիարակչական աշխատանքի շնորհիվ ավելի ու ավելի են բարձրանում սովետական մարդկանց գիտակցականությունը, քաղաքական ու արտադրական ակտիվությունը, գնալով բազմապատկվում են կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարողների շարքերը:

Պարտիայի հանդեպ լի հավատարմությամբ՝ ժողովրդի արժանավոր զավակները, արտադրության, գիտության, կուլտուրայի ու մյուս բնագավառների առաջամարտիկները պատասխանատվության բարձր կգացումով են մտնում պարտիայի շարքերը և նրա հետ իրենց բախտը կապում ոչ միայն գաղափարապես, այլև կազմակերպորեն: Պարտիայի շարքերում ընդունվածների թիվն առանձնապես մեծ է ՍՄԿՊ XXII համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում: Բավական է ասել, որ 1961 թվականի հոկտեմբերի մեկից մինչև 1965 թվականի հունվարի մեկը պարտիայի շարքերն են ընդունվել 2 498 հազար թեկնածու և 2 282 հազար անդամ: Միայն 1964 թվականին պարտիայի անդամության թեկնածու են ընդունվել 879,4 հազար մարդ: Դա հետպատերազմյան տարիների՝ պարտիայի շարքերի ամենամեծ համալրումն է:

Մեր պարտիան, որի շարքերում այժմ կան մոտ 12 միլիոն մարդ, իր անդամներից պահանջում է ակնվորեն ծառայել ժողովրդին, անձնական օրինակ ցույց տալ աշխատանքում ու կենցաղում, լինել սկզբունքային, աչքի լույսի պես պահպանել պետական ու հանրային ունեցվածքը, ակտիվորեն մասնակցել հասարակական աշխատանքներին և այլն: Պարտիան հոգ է տանում, որպեսզի կոմունիստները անմիջականորեն աշխատեն նյութական արտադրության բնագավառում և ապահովեն իրենց ավանգարդային դերը:

Գոհունակությամբ պետք է նշել, որ նյութական արտադրության տարբեր ճյուղերում ներկայումս գտնվում է կոմունիստների 72,4 տոկոսը, որից արդյունաբերության և շինարարության մեջ զբաղված են 35,9, գյուղատնտեսության մեջ՝ 22,6 տոկոսը: Այդ կոմունիստները տարբեր մասնագիտությունների տեր որակյալ կադրեր են, որոնք աշխատում են գործարանների, ֆաբրիկաների, հանքերի, նորակառույցների և գյուղատնտեսության առավել դժվարին ու վճռական տեղամասերում: Այսպես, օրինակ, կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատող կոմունիստների ավելի քան մեկ քառորդ մասը, թվով 520 հազար հոգի, այժմ տրակտորիստներ, կոմբայնավարներ և գյուղատնտեսական այլ մեխանիզատորներ են, որոնք իրենց հայրենանվեր աշխատանքով ընդհանուր հարգանք են վայելում գյուղում: Նույնը կարելի է ասել կոմունիստ գյուղատնտեսների, զոոտեխնիկների, անասնաբույժների, տնտեսությունների ղեկավարների և մյուս ընկերների մասին, որոնք ջանք չեն խնայում սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացումն ապահովելու և երկրին ավելի շատ ու ավելի էժան գյուղատնտեսական մթերքներ տալու համար:

Կոմունիստական շինարարության մեծ ու հոյակապ խնդիրները հաջողությամբ լուծելու նպատակով, պարտիան հաճախակի խորհրդակցում է ժողովրդի հետ, հաշվի է առնում նրա կարծիքը, առաջարկություններն ու ցանկությունները. Պարտիան առաջնորդվում է լենինյան հայտնի ցուցումով. **«Մենք կարող ենք կառավարել միայն այն ժամանակ, երբ ճիշտ արտահայտենք այն, ինչ ժողովուրդն է գիտակցում»**: Արտահայտելով ժողովրդի բուն կարծիքն ու ցանկությունները,



հաշվի առնելով նրա հարուստ փորձը, պարտիան մշակում է իր քաղաքական գիծը և հոգ տանում, որպեսզի այն ճշտորեն կիրառվի ինչպես համապետական մասշտաբով, այնպես էլ տեղերում, որպեսզի ճիշտ գործի մեր պետական ու հասարակական կազմակերպությունների ամբողջ սիստեմը, որպեսզի հաջողությամբ լուծվեն կոմունիստական շինարարության խնդիրները: Լենինյան պարտիան, գրում է «Պրավդան», կոմունիստական շինարարության մեջ սուբյեկտիվիզմի և ինքնահոսի թշնամին է: Նրան խորթ են պրոժեկտորությունը, վաղահաս հետևությունները և հապճեպ, ռեալությունից վերծ որոշումներն ու գործողությունները, պարծենկոտությունն ու շաղակրատանքը, վարչարարությամբ տարվելը, գիտության ու պրակտիկ փորձի կողմից արդեն մշակվածը հաշվի առնել չցանկանալը: Կոմունիզմի կառուցումը կենդանի, ստեղծագործական գործ է, նա չի հանդուրժում գրասենյակային մեթոդներ, միանձնյա որոշումներ, մասսաների պրակտիկ փորձի անտեսում:

Կոմունիստական շինարարության խնդիրների լուծման գործում մեր պարտիան անգնահատելի օգնություն է ստանում բազմաթիվ թելերով իր հետ կապված բոլոր աշխատավորներից: Նրանք սովետների, արհմիութենական, կոմերիտական և հասարակական մյուս կազմակերպությունների միջոցով նախաձեռնում ու լուծում են արտադրական առաջադրանքների կատարման, կենցաղային ու կուլտուրական սպասարկման և նոր մարդու դաստիարակման հետ կապված բազմաթիվ հարցեր: Իրենց ողջ ուժերը, անսպառ եռանդը նվիրաբերելով պարտիայի ծրագրի իրագործմանը, սովետական մարդիկ ջերմորեն պաշտպանում են այն նորն ու առաջավորը, որոնց ամենուրեք արմատավորումն ու տարածումը նպաստում է մեր ընդհանուր առաջընթացին: Այդ ամենի հետ միասին, նրանք համարձակորեն քննադատում են կյանքում նկատվող թերությունները. երկրի տարբեր ծայրերից պարտիային իրազեկ են պահում գործերի վիճակի մասին, իրենց նամակներում ու դիմումներում բողոքում են դեռևս նկատվող բյուրոկրատիզմի, անտնտեսվարության, վարչարարության փաստերի, ինչպես նաև աշխատավորների կարիքների բավարարման գործում առանձին պաշտոնյաների կողմից ցուցաբերվող անհոգի վերաբերմունքի դեմ:

Ուշի-ուշով ունկնդրելով աշխատավորների ձայնին, պարտիան պահանջում է խիստ պատասխանատվության ենթարկել բոլոր նրանց, ովքեր չարաշահում են իրենց պաշտոնական դիրքը, բյուրոկրատական վերաբերմունք են ցուցաբերում աշխատավորների առօրյա կարիքների բավարարման գործում, ժամանակին անհրաժեշտ ընթացք չեն տալիս նրանց դիմումներին, անտեսում են ներքևից եկող քննադատությունը, զբաղվում են շաղակրատությամբ ու տապալում հանձնարարված գործը:

Պարտիայի քաղկոմները, շրջկոմները, սկզբնական կազմակերպություններն ու սովետական օրգանները պետք է հետևողականորեն կատարեն պարտիայի այդ պահանջը, բարձրացնեն բոլոր աշխատողների պատասխանատվությունը և հետևեն, որպեսզի նրանք իրենց գործունեության ընթացքում արդարացնեն պարտիայի ու ժողովրդի վստահությունը, պրակտիկայում արմատավորեն աշխատանքի լենինյան ոճը և բարեխղճորեն կատարեն իրենց վրա դրված պարտականություններն ու հանձնարարությունները:

Առաջին պլանի վրա դնելով արտադրական առաջադրանքների կատարման ու գերակատարման համար մղվող պայքարը, պարտիական կազմակերպություններն և սովետական օրգանները մշտապես պետք է իրենց ուշադրության կենտ-

րոնում պահեն նաև բանվորների, կոլտնտեսականների, ծառայողների, մեր ամբողջ բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման, կյանքի ու աշխատանքի պայմանների բարելավման, արտաաշխատանքային ժամանակի ռացիոնալ օգտագործման և այն բոլոր հարցերը, որոնք սերտորեն առնչվում են մարդկանց ամենօրյա պահանջմունքների բավարարման հետ: Այս առումով չի կարելի քննադատական խոսք չասել Երևանի առանձին պարտիական կազմակերպությունների, գերատեսչությունների ու հիմնարկությունների հասցեին, որոնք անբավարար ուշադրություն են հատկացնում բնակչության սպասարկմանը:

Նորմալ երևույթ չէ, երբ բազմաթիվ ահազանգումներից հետո էլ Երևանի քաղաքային տրանսպորտն անկանոն է աշխատում: Քաղաքացիներն իրավացիորեն գանգատվում են, որ առավոտյան, աշխատանքի գնալու ժամերին հաճախ խախտվում է տրանսպորտի երթևեկության գրաֆիկը, տրամվայներում, տրոլեյբուսներում, ավտոբուսներում տիրում է աննորմալ վիճակ, մարդիկ երկար ժամանակ սպասում են կանգառներում, ուշանում գործից: Տրանսպորտի պարտիական կազմակերպությունները, իհարկե, քննել են այդ հարցը և որոշումներ կայացրել: Բայց ի՞նչ օգուտ որոշումներից, երբ տրանսպորտը շարունակում է անկանոն գործել:

Քիչ թերություններ չկան նաև առևտրական կազմակերպությունների աշխատանքում: Չնայած առևտրի մինիստրության մի շարք հրամաններին ու կոլեգիայի որոշումներին, առևտրի առանձին միավորումներում ու հասարակական սննդի օբյեկտներում դանդաղ են արմատավորվում բնակչության սպասարկման առաջավոր ձևերը, խիստ ձգձգվում է այդ ուղղությամբ մշակված միջոցառումների իրականացումը: Ավելին, կադրերի ոչ ճիշտ ընտրության, դաստիարակչական աշխատանքի անտեսման ու թույլ հսկողության հետևանքով առևտրի առանձին օղակներում տեղի են ունենում չարաշահումներ ու վատնումներ, թերաչափման ու թերակշռման դեպքեր:

Նշված և մյուս թերությունները չէին լինի, եթե բարելավվեր կադրերի ընտրության, դաստիարակության ու որակավորման գործը, թողտվություն չցուցաբերվեր պետական կարգապահությունը խախտողների հանդեպ, բարձր հիմքերի վրա դրված լիներ կատարման ստուգումը: Անհրաժեշտ է հիշել, որ Վ. Ի. Լենինը կտրականապես պահանջում էր **«Ստուգել աշխատանքը, խորամուխ լինել բուն էությանը, կրթել, սովորեցնել, ձաղկել անխնա: Ուսումնասիրել մարդկանց, գտնել ՀՄՈՒՏ աշխատողներին: Այժմ դա է գլխավորը, բոլոր հրամաններն ու որոշումները կեղտոտ թղթի պատառ են առանց դրա»**:

Միշտ լինելով ժողովրդի հետ և գործելով հանուն նրա բարօրության, կոմունիստական պարտիան անսահման հավատ է տածում ժողովրդի անսպառ ուժի ու բանականության նկատմամբ և նրան հաստատորեն առաջնորդում է դեպի կոմունիզմ:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Հ. ՕԳԱՆԵՍՈՎ

## ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄՆ ԱՆՊԱՐՏԵԼԻ Է

*Մարքսիզմ-լենինիզմի դրոշը, որ բարձր են պարզել բոլոր երկրների կոմունիստները, վառ փողփողում է ամբողջ աշխարհում: Այդ ուսմունքը աշխատավոր մարդուն բերեց ազատություն և երջանկություն, դարձավ գիտելիքների անսպառ աղբյուր, որից իրենց գործունեության գաղափարները, ձևերն ու մեթոդներն են քաղում աշխարհի բոլոր մարքս-լենինյան պարտիաները:*

*Այդ ուսմունքի շնորհիվ սոցիալական մեծագույն փոփոխություններ տեղի ունեցան աշխարհում, մարդկային հասարակությունը վիթխարի տեղաշարժեր կատարեց իր զարգացման մեջ: Այդ տեղաշարժերի ցուցանիշներից մեկը ռևոլյուցիոն ուժերի ավանգարդի՝ կոմունիստական և բանվորական պարտիաների թվի և կազմակերպվածության աննախընթաց աճն է:*

*Շուրջ երեք հարյուր անդամ ուներ անցյալ դարի 40-ական թվականներին ստեղծված Կոմունիստների միությունը: Դրանից հետո Լենինի մեծ պարտիան, դառնալով անպարտելի քաղաքական և մասսայական ուժ, առաջինը զարգացրեց Մարքսի ուսմունքը, առաջինը կիրառեց այն կյանքում: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի ազդեցության ներքո Եվրոպայի և Ասիայի շատ երկրների ժողովուրդներ ուժեղացրին պայքարը հանուն իրենց ազգային և սոցիալական ազատագրության: Ռևոլյուցիոն հզոր վերելքի պայմաններում բանվորական շարժման օբյեկտիվ պահանջները հանգեցրին նոր կոմունիստական պարտիաների կազմավորմանը մի շարք երկրներում (1918—1920 թվականների ընթացքում կոմունիստական պարտիաներ կազմակերպվեցին Ավստրիայում, Արգենտինայում, Գերմանիայում, Լեհաստանում, Հոլանդիայում, Հունգարիայում, Հունաստանում, ԱՄՆ-ում, Բուլղարիայում, Դանիայում, Մեքսիկայում, Մեծ Բրիտանիայում, Ինդոնեզիայում, Իսպանիայում, Մարոկկոյում, Թուրքիայում, Ուրուգվայում, Ֆրանսիայում և այլ երկրներում): 19-րդ դարի 40-ական թվականների համեմատությամբ կոմունիստների թիվն ավելացավ գրեթե հինգ հազար անգամ:*

*Կոմունիստական և բանվորական պարտիաների թվական կազմի հետագա աճը պարզորոշ երևում է հետևյալ տվյալներից: 1935 թվականին կային կոմունիստական և բանվորական 61 պարտիաներ՝ 3 միլիոն 141 հազար անդամներով, 1956 թվականին՝ 75 պարտիաներ՝ 33 միլիոն անդամներով, իսկ*

մեր օրերում կան շուրջ 90 պարտիաներ, որոնք իրենց շարքերում ընդգրկում են ավելի քան 46 միլիոն կոմունիստ։

Միայն վերջին մի քանի տարում առաջացան 14 նոր կոմունիստական պարտիաներ, իսկ աշխարհի կոմունիստների թիվն ավելացավ ավելի քան 10 միլիոնով։

Ժամանակին համընթաց քայլող ոչ մի մարդ չի կարող անտարբեր լինել կոմունիստական շարժման, մարքսիզմ-լենինիզմի վսեմ գաղափարների նկատմամբ։ Այժմ հարյուրավոր ժողովուրդներ խորապես գիտակցում են, որ համաշխարհային սոցիալիստական սիստեմի նվաճումներն ինչ-որ տարերային զարգացման արդյունք չեն, որ դրանք հետևանք են կոմունիստների պարտիայի գործունեության, մի պարտիա, որը զինված է մարդկային հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների խոր իմացությամբ և հմտորեն ղեկավարում է աշխատավոր մասսաներին։

Մարքս-լենինյան աշխարհայացքը, իր նպատակներով, էությամբ և սոցիալական բովանդակությամբ կոմունիստական լինելով, պահանջում է բոլոր աշխատավորներին ազատագրել շահագործման, կեղեքման և անհավասարության բոլոր ձևերից։ Իսկ դրան կարելի է հասնել միայն սոցիալիստական ռևոլյուցիայի ուղիով ընթանալով։ Ահա թե ինչու մարքս-լենինյան աշխարհայացքն անխզելիորեն կապված է բանվոր դասակարգի ազատագրական շարժման հետ։

Իր ավելի քան հարյուրամյա պատմության ընթացքում կոմունիստական ուսմունքը միշտ էլ հանդիսացել է բանվոր դասակարգի վստահելի ուղեցույցը, նրան կողմնորոշել է դասակարգային պայքարի, հասարակության ռևոլյուցիոն վերակառուցման ամենաբարդ իրադրությունների մեջ։ Մարքսիզմ-լենինիզմը ոչ միայն արտահայտում է բանվոր դասակարգի շահերը, այլև լիովին համապատասխանում է աշխատավորների բոլոր խավերի կենսական ձգտումներին։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները կողմնորոշեցին բանվոր դասակարգին և նրան սովորեցրին գիտակցելու իր ուժը։ Պրոլետարիատի թուլությունը նրա կոտորակվածության մեջ է, իսկ ուժը՝ համախմբման մեջ։ Բոլոր երկրների բանվորները հարազատ են իրար, որովհետև մեկ է նրանց ընդհանուր նպատակը, ընդհանուր են նրանց դասակարգային շահերը։ Նրանք ձգտում են տապալել կապիտալի լուծը։ Այդ ընդհանուր շահը նրանց համախմբում է կապիտալիզմի միջազգային ուժի դեմ։ Ինտերնացիոնալիզմը ոչ միայն հնարավորություն, այլև անհրաժեշտություն է բանվորների համար, քանի որ դա սոցիալիզմի և կոմունիզմի համար նրանց հաջող պայքարի պարտադիր պայմանն է։ Ահա թե ինչու Կոմունիստական պարտիայի մանիֆեստի «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» կոչը այսօր էլ մնում է որպես յուրաքանչյուր կոմունիստի ամենահիմնական կոչերից մեկը։

Կոմունիզմի գաղափարներն արդիականության մեծագույն ուժն են և վիթխարի ազդեցություն ունեն մարդկության առաջընթացի վրա։ Նրանք հաղթանակ են տարել սովետական երկրում, ուր ծավալուն ճակատով ընթանում է կոմունիստական հասարակարգի կառուցումը։ Այդ գաղափարները տիրապետող են դարձել սոցիալիզմի ամբողջ համաշխարհային սիստեմում։ Այդ ամենահաղթ գաղափարներին հետևում են նաև կապիտալիստական լագերի, գաղութային և կախյալ երկրների աշխատավոր ժողովուրդների ամենալայն մասսաները, որոնք ոտքի են ելել հանուն ազատության և խորտակում են աշխատավորությանը կաշկանդող կապանքները։

Կոմունիզմի գաղափարները տիրապետում են մասսաներին, չնայած շահագործող դասակարգերի կատաղի դիմադրությանը, հակառակ այն բոլոր մեքենայությունների, որոնք գործադրում են սոցիալ-դավաճանները, ռևիզիոնիստները և կապիտալի մյուս վարձկանները։ Մեր օրերում էլ, ինչպես ավելի քան հարյուր տարի առաջ, Կոմունիստական պարտիայի մանիֆեստի ժամանակաշրջանում, ինչպես և 47 տարի առաջ, Հոկտեմբերից հետո, ռեակցիոն բուրժուազիան նոր կատաղի արշավանք է սկսել մարքսիզմ-լենինիզմի դեմ, փորձում է տեռորի միջոցով մարել կոմունիզմի գաղափարների լուսաճաճանչ շողերը։ Կոմունիստական աշխարհայացք ունենալու համար այժմ մարդկանց դատում ու զնդաններն են նետում Իսպանիայում, Փորթուգալիայում, Հունաստանում, Գերմանական Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում, հալածում են ԱՄՆ-ում և կապիտալի մյուս երկրներում։ Հենց այդ կատաղի հալածանքը և բանվոր դասակարգի լավագույն ներկայացուցիչների նկատմամբ կազմակերպված դատավարությունները վկայում են բուրժուազիայի դատապարտվածությունը, նրա անզորությունը, նրա սարսափը կոմունիզմի հանդեպ։

Բուրժուազիայի գաղափարախոսներն իրենց առջև խնդիր են դրել բոլոր ստոր միջոցներով վարկաբեկել կոմունիզմը աշխատավորների աչքում, պառակտում մտցնել կոմունիստական շարժման մեջ, շփոթություն առաջացնել կոմունիստական ու բանվորական պարտիաների շարքերում, ջլատել սոցիալիզմի համաշխարհային լագերը։

Բուրժուական ռեակցիոն մամուլը և ռադիոն, իմպերիալիստական ռեակցիայի ողջ պրոպագանդիստական ապարատը ճչում են «կոմունիզմի ճգնաժամի», նրա «թուլացման, քայքայման» և անգամ համաշխարհային սոցիալիստական սիստեմի տրոհման մասին, մարքս-լենինյան պարտիաների միջև լուրջ, «անհաշտելի հակասությունների» առկայության մասին և այլն։ Բայց, ինչպես և անցյալ տասնամյակներում, կապիտալի սպասավորները բաղձալին ընդունել են իրականության տեղ։

Տարակույս չի կարող լինել այն բանում, որ սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ընթացքում կոմունիստական պարտիաների կամ սոցիալիստական երկրների միջև կարող են առանձին դեպքերում որոշ տարաձայնություններ առաջանալ քաղաքականության կամ էկոնոմիկայի այս կամ այն հարցի շուրջը։ Սակայն այդ տարաձայնությունները բնավ անտագոնիստական չեն։ Դրանք հետապնդում են քաղաքական ու տնտեսական վերափոխությունների ավելի արդյունավետ ուղիներ որոնելու, սոցիալիստական տնտեսության անսպառ հնարավորություններն ու ռեզերվներն առավելագույն չափով օգտագործելու նպատակներ։ Դրանք հետապնդում են նաև սոցիալիստական երկրների արտադրողական ուժերի զարգացման մեջ նոր թռիչք նախապատրաստելու նպատակներ։ Համենայն դեպս կյանքը, եղած բոլոր փաստերն ու թվերը հերքում են բուրժուազիայի գաղափարախոսների բարբաջանքները «կոմունիզմի ճգնաժամի» վերաբերյալ։ Միայն մի քանի թվեր բավական են ցույց տալու համար, թե որքան մտացածին ու սնանկ է նրանց տեսությունը սոցիալիստական համագործակցության երկրների «տրոհման, քայքայման և թուլացման» մասին։ Այսպես, եթե 1917 թվականին սոցիալիզմի երկրի տերիտորիայի, բնակչության և արդյունաբերական արտադրության տեսակարար կշիռն ամբողջ

աշխարհում կազմում էր համապատասխանաբար 16%, 8% և 8%-ից էլ պակաս, ապա 1937 թվականին այդ տեսակարար կշիռը (ներառյալ ՄԺՌ-ն) կազմեց 17%, 8% և 10%, իսկ 1963 թվականին սոցիալիզմի համաշխարհային սիստեմը՝ 26%, 35,6% և 38%։ Այդ տվյալներն ակնառու կերպով վկայում են ոչ թե սոցիալիզմի համաշխարհային սիստեմի «քայքայման» կամ «թուլացման», այլ նրա աճման ու ամրապնդման մասին։

Սոցիալիստական պետությունների 1964 թվականի և ընթացիկ տարվա առաջին ամիսների տնտեսական գործունեության արդյունքները պարզորոշ կերպով ցույց են տալիս, որ սոցիալիստական եղբայրական երկրները շարունակ ընթանում են առաջ, նոր բնագծեր նվաճելով կապիտալիզմի հետ ունեցած տնտեսական մրցակցության մեջ և ապահովելով աշխատավորության կենսամակարդակի հետագա բարձրացումը։

Հանրային արտադրության, աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման և տեխնիկական առաջադիմության տեմպերի արագացման հզոր աղբյուրներից մեկը սոցիալիզմի երկրների համագործակցությունն ու փոխօգնությունն է՝ լիակատար իրավահավասարության, կամավոր սկզբունքի և փոխադարձ շահավետության հիման վրա։ Այս ասպարեզում անգնահատելի ծառայություններ ունի տնտեսական փոխօգնության խորհուրդը։ Հենց նրա գործունեության մեջ պարզորոշ դրսևորվում է սոցիալիզմի լագերի աշխատավորության պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրսևորումը։

Պատմության թատերաբեմից իջնող հասարակարգի գաղափարախոսներին միշտ էլ թվում է, թե իրենց հետ մեկտեղ անդունդ է գլորվելու ամբողջ աշխարհը։ Ուստի բնական է, որ անհետացող հասարակության գաղափարախոսները բոլոր դժբախտությունների ու չարիքների պատճառը այն սոցիալական կարգի մեջ են տեսնում, որը գալիս է փոխարինելու հին կարգին։ Մեռնող ֆեոդալիզմի պաշտպաններն ասում էին, թե ամեն ինչ լավ կլիներ և ֆեոդալիզմը կշարունակեր բարգավաճել, եթե միայն XVIII դարի առաջին կեսին օրորոցի մեջ խեղդեին այն մի քանի նորածիններին, որոնք հետագայում դարձան փիլիսոփա էնցիկլոպեդիստներ և որոնք գաղափարապես նախապատրաստեցին 1789 թվականի ֆրանսիական բուրժուական ռևոլյուցիան։

Անցել են բավական շատ տարիներ և թվում է՝ ժամանակն է հասկանալու, որ ամենևին էլ այդ նորածին երեխաները չեն եղել ֆեոդալիզմի կործանման պատճառը։ Բանը պատմության տրամաբանության մեջ է, սոցիալական անխուսափելի առաջադիմության մեջ։

Արդի կապիտալիզմի օբյեկտիվ տնտեսական օրենքներին քաջ ծանոթ մարդիկ լավ են հասկանում իմպերիալիստների և նրանց գաղափարախոսների ձգտումների պատրանքայնությունը։ Երբ նրանք աշխատում են կապիտալիստական սիստեմը ամեն կերպ փրկել կործանումից կամ թեկուզ երկարաձգել նրա գոյությունը։ Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում, իսկ կյանքը հաստատում է, որ նրանց չի հաջողվի անգամ բթացնել կապիտալիստական աշխարհի սուր հակասությունները։ Վերջիններս գնալով ավելի են սրվում, քանի որ կապիտալիզմի պայմաններում այնպիսի օբյեկտիվ տնտեսական օրենքներ են գործում, որպիսիք ոչ ոք չի կարող վերացնել։ Այդ հակասությունները կչքանան միայն կապիտալիզմի կործանումից հետո։ Կապիտալիստական սիստեմի կործանումը պայմանավորող օբյեկտիվ օրենքների իմացությունը մարքսիստ-լենինյաններին հնարավորություն է տալիս ճիշտ կողմնորոշվելու պատմության



իրադարձություններում և գիտականորեն որոշելու իրենց գործունեության խնդիրներն ու միջոցները։

Կոմունիստական աշխարհայացքը ինտերնացիոնալ է իր էությամբ։ Դրա աղբյուրը հենց կոմունիզմի բնույթի մեջ է։ Բարձր աստիճանի կոմունիզմը հասարակական հարաբերությունների այն ստադիան է, երբ անէանալու են մարդկանց միջև եղած ամեն տեսակ սոցիալական տարբերությունները, երբ հասարակության մեջ լիովին տիրապետելու են մարդկանց համագործակցության ու փոխօգնության հարաբերությունները, երբ բոլորը հոգ են տանելու յուրաքանչյուրի և յուրաքանչյուրը՝ բոլորի նկատմամբ։

Կոմունիստական աշխարհայացքի ինտերնացիոնալիզմն են արտահայտում մարդկանց ընկերական փոխօգնության հարաբերությունները։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմը ծնունդ է առել դեռևս կապիտալիզմի օրոք՝ որպես բոլոր երկրների բանվոր դասակարգի ընդհանուր շահերի արտացոլում։

Ինտերնացիոնալիզմը նշանակում է տարբեր երկրների բանվոր դասակարգի համախմբում միջազգային սոցիալիստական մեկ ջոկատի մեջ, որը գործում է կապիտալիզմի դեմ և նպատակ ունի սոցիալիստական հարաբերություններ հաստատել մարդկանց միջև։ «Կապիտալիզմը միջազգային ուժ է։ Նրան հաղթելու համար հարկավոր է բանվորների միջազգային միություն, նրանց միջազգային եղբայրություն»,— գրում էր Վ. Ի. Լենինը (Երկեր, հ. 30, էջ 367)։

Կապիտալիստական ստրկության դեմ բանվոր դասակարգը իր պայքարը մղում է ազգային պետությունների շրջանակներում։ Բայց բոլոր երկրների պրոլետարներն ունեն ընդհանուր վերջնական նպատակներ, այն է՝ նվաճել քաղաքական իշխանությունը և կառուցել կոմունիզմ։ Նրանք ունեն մեկ ընդհանուր թշնամի՝ բուրժուազիան, որն իմպերիալիզմի դարաշրջանում օրհասական կռիվ է մղում ռևոլյուցիոն ուժերի առաջխաղացման դեմ։

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ բոլոր երկրների բանվորների պայքարը հաջողության կհասնի միայն նրանց միասնության դեպքում։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմը բանվորների և բոլոր երկրների աշխատավորների շահերի ընդհանրության գաղափարախոսությունն ու քաղաքականությունն է։ Նա հակադրված է բուրժուական նացիոնալիզմին, որն ազգային թշնամություն ու անիրավահավասարություն է քարոզում, իրարից անջատելով տարբեր ազգերի ու ռասաների աշխատավորներին։ «Բուրժուական նացիոնալիզմ և պրոլետարական ինտերնացիոնալիզմ՝ ահա երկու թշնամական-անհաշտ լոզունգներ, որ համապատասխանում են ամբողջ կապիտալիստական աշխարհի երկու մեծ դասակարգային լագերներին և արտահայտում են երկու քաղաքականություն (ավելին՝ երկու աշխարհայեցողություն) ազգային հարցում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 20, էջ 13)։

Նացիոնալիզմը ճանապարհ է հարթում բուրժուական, հակակոմունիստական գաղափարախոսության առջև, որն ամեն կերպ աշխատում է գրպարտել սոցիալիստական իրավակարգը, կեղծել կոմունիստական պարտիաների քաղաքականությունն ու նպատակները։ Բուրժուական նացիոնալիզմի կրողները ձգտում են ջլատել աշխատավորների ուժերը, կազմալուծել նրանց շարքերը։

Ամեն մի երկրի բանվոր դասակարգի ազգային և ինտերնացիոնալ խնդիրները անխզելի են միմյանցից։ Քաղաքական իշխանություն նվաճելու, իր դիկտատուրան հաստատելու և սոցիալիզմ կառուցելու համար մի երկրի պրոլետարիատը կարիք ունի մյուս երկրների աշխատավոր մասսաների օգնությանը։

Միևնույն ժամանակ սոցիալիստական ռևոլյուցիան, երկրագնդի որ մասում էլ որ այն հաղթանակի, նպաստում է միջազգային բանվորական շարժման ամրապնդմանը, նրա ջոկատների ռևոլյուցիոն պայքարի հաջողությանը։

Հոկտեմբերյան սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը համոզիչ կերպով ցույց տվեց լենինյան ինտերնացիոնալիստական քաղաքականության ճշտությունը։ Ռևոլյուցիան զարկ տվեց բանվորական շարժմանը կապիտալիստական երկրներում և ազգային-ազատագրական պայքարին գաղութներում, այն նպաստեց աշխարհի բոլոր ռևոլյուցիոն ուժերի համախմբմանը։

Ճեղքելով համաշխարհային իմպերիալիզմի ճակատը և մարդկության առջև բացելով դեպի սոցիալիզմ տանող ուղին, մեր երկրի աշխատավորները, կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, պատվով են կատարում իրենց ինտերնացիոնալ պարտքը։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը, որը ծագել է որպես բանվոր դասակարգի ներսում հարաբերությունները որոշող սկզբունք, Ռուսաստանում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակից հետո դարձավ սոցիալիզմի երկրների ժողովուրդների փոխհարաբերության հիմք։ Դա այն հարաբերությունների ձևն է, որը տիրապետում է սոցիալիստական սիստեմում։ Նա արդեն ցույց է տվել իր բարերար դերը մարդկանց նոր փոխհարաբերությունների ստեղծման ու զարգացման գործում։

Արդի պայմաններում Սովետական Միության կոմունիստական պարտիան և եղբայրական մյուս բոլոր պարտիաները ավելի բարձր են պարզում պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը, նոր դրույթներով ու հետևություններով հարստացնելով մարքսիզմ-լենինիզմը։

Մեր պարտիան, հաստատակամորեն պաշտպանելով մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքը, մյուս կոմպարտիաների հետ մեկտեղ, ամեն ինչ անում է բոլոր սոցիալիստական երկրները, մարքս-լենինյան բոլոր պարտիաները, արդիականության բոլոր ռևոլյուցիոն ուժերը համախմբելու իմպերիալիզմի ու գաղութատիրության դեմ, հանուն ազգային ազատագրության, հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի մղվող պայքարում։

Կոմունիստները խաղաղության և բոլոր ժողովուրդների բարեկամության ամենավճռական ու քաջարի մարտիկներն են։ Խաղաղության և բարեկամության, պետությունների խաղաղ գոյակցության գաղափարները, որ այնպիսի հետևողականությամբ պաշտպանում են կոմունիստական և բանվորական պարտիաները, այժմ տիրապետող են դարձել ամբողջ առաջադեմ մարդկության շրջանում։ Կոմունիստների խնդիրներն ու նպատակները մոտիկ և հասկանալի են ամբողջ աշխարհի հասարակ մարդկանց։ Այդ նպատակները միանգամայն պարզ ու հստակ են, այն է՝ կանխել միջուկային պատերազմը, հասնել զինաթափման և ընդհանուր անվտանգության սիստեմի ստեղծման, արտադրողական ուժերը օգտագործել միայն խաղաղ նպատակներով՝ ժողովուրդների կենսամակարդակը բարձրացնելու համար, տնտեսական և կուլտուրական համագործակցություն հաստատել բոլոր ժողովուրդների միջև, իսկ տարբեր հասարակարգ ունեցող երկրների միջև հաստատել խաղաղ գոյակցություն։ Կոմունիստների այդ ծրագրին իմպերիալիստները ոչ մի դրական ծրագիր չեն կարող հակադրել, որովհետև այդպիսին չկա նրանց մոտ, իսկ սպառազինու-



թյունների մրցավազքի և պատերազմի հրահրման նրանց քաղաքականությունն ավելի ու ավելի ատելի է դառնում ժողովրդական մասսաների համար։

Մարքսիզմ-լենինիզմն անգնահատելի ու հսկայական նշանակություն ունի համաշխարհային սոցիալական ռևոլյուցիայի ծավալման համար։ Միայն նա է ցույց տալիս այն միակ ճշմարիտ ուղին, որի միջոցով իր դարն ապրած սոցիալ-տնտեսական ֆորմացիան պետք է փոխարինվի նոր, կոմունիստական ֆորմացիայով։ Նրա ծրագրի հիմնական դրույթներն են.

1. ավելի զարգացնել և ըստ ամենայնի ամրապնդել համաշխարհային սոցիալիստական սիստեմը, հասնել նրա ուժերի առավելագույն գերակշռությանը իմպերիալիզմի լագերի նկատմամբ, շահել կապիտալիզմի հետ ունեցած տնտեսական մրցակցությունը.

2. ուժեղացնել բուրժուազիայի տիրապետության դեմ կապիտալիստական երկրների ռևոլյուցիոն ուժերի վճռական հարձակումը, այդ պայքարում համախմբելով հակաիմպերիալիստական և դեմոկրատական բոլոր ուժերը.

3. ակտիվորեն աջակցել ազգային-ազատագրական ռևոլյուցիաների հետագա խորացմանը, դրանք փոխարկելով սոցիալիստական ռևոլյուցիաների.

4. պայքարել տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության համար, որը, անտարակույս, կապահովի սոցիալիզմի լագերի ուժերի առավելագույն գերակշռությունը կապիտալիզմի նկատմամբ։

Այդ խնդիրների իրականացումն է ծառացած ռևոլյուցիոն ուժերի առջև։ Սակայն դրան հասնելու համար ամենից առաջ անհրաժեշտ է պահպանել ու ամրապնդել ռևոլյուցիոն ուժերի, առաջին հերթին կոմունիստական պարտիաների միասնությունը ազգային ու միջազգային մասշտաբներով։ Բանվոր դասակարգի պարտիաների ստեղծումը, ամրապնդումն ու զարգացումը ռևոլյուցիայի ճիշտ ղեկավարման խնդրի ամենակարևոր մասն է։ Կյանքն ապացուցել է, որ համաշխարհային սոցիալիստական ռևոլյուցիայի ճակատագիրը անմիջականորեն կախված է այն բանից, թե կոմունիստական պարտիաները որքան ճիշտ են վարում իրենց քաղաքականությունը։ Որքան ավելի փորձված ու հասուն, գաղափարապես զինված ու կազմակերպչորեն համախմբված են կոմունիստական պարտիաները, այնքան ավելի արագանում է համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսի ընթացքը։

Մեր գաղափարախոսությունն ամենազոր է, որովհետև նա ճիշտ է արտացոլում իրականությունը։ Միմիայն ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմը կարող է ուղեցույց ծառայել ներկայումս աշխարհում ընթացող սուր և բարդ պայքարում։ Այդ իսկ պատճառով անհրաժեշտ է անդուլ մաքառել նրա գիտական սկզբունքների ռևիզիոնիստական, դոգմատիկ և սուբյեկտիվիստական խեղաթյուրումների դեմ։ Դրանում է արդիականության ռևոլյուցիոն խնդիրների հաջող լուծման գրավականը։

Մարքսիզմ-լենինիզմը աշխարհը վերափոխող ռևոլյուցիոն պրոցեսի ինտերնացիոնալ մեծ դրոշն է։ Անզիջում պայքարելով այդ տեսության անաղարտության համար, ամեն տեսակ աղավաղումների դեմ, մենք հաստատ երաշխիք կունենանք համաշխարհային սոցիալիստական ռևոլյուցիայի նոր, պանծալի հաղթանակների համար։

Մարքսիզմ-լենինիզմի մեծ հաջողությունների դարաշրջանը համաշխարհային պատմության ամենաբուռն և շրջադարձային ժամանակաշրջաններից մեկն է, երբ իր դարն ապրած կապիտալիստական վարձու ստրկության հին

աշխարհը պատմական օբյեկտիվ օրենքների ներգործության շնորհիվ քայքայվում ու խորտակվում է, երբ հաղթանակում է սոցիալիզմի նոր, լուսավոր աշխարհը։ Այդ դարաշրջանը դեռ իր հավասարը չի ունեցել մարդկության պատմության մեջ ո՛չ միայն իր մեծ իրադարձություններով, հասարակական հարաբերությունների միահյուսման բարդությամբ և դասակարգերի պայքարի սրությամբ, այլև պատմական զարգացման արտակարգ արագ ընթացքով և ժողովուրդների կյանքում տեղի ունեցած ամենախոր փոփոխություններով։ Սոցիալիզմի հաղթանակի հետ զուգընթաց աճում ու ծավալվում է ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը, որը խորտակիչ հարվածներ է հասցնում իմպերիալիզմի ընդհանուր սիստեմին։

Եթե չլիներ համաշխարհային սոցիալիստական համագործակցությունը, ազգային-ազատագրական շարժման ուժերը ի վիճակի չէին լինի հասնելու քաղաքական անկախության և, հատկապես, ձեռնամուխ լինելու տնտեսական ինքնուրույնություն նվաճելու խնդիրների իրականացմանը։

Կյանքն ակնառու կերպով ցույց տվեց, որ ազգային-ազատագրական ռևոլյուցիաների հեռանկարներն իրականում կախված են ո՛չ միայն յուրաքանչյուր երկրի ներսում գոյություն ունեցող պայմաններից։ Դրանք անհամեմատ մեծ չափով կախված են միջազգային իրադրությունից, այն պայմաններից, որոնց մեջ ծավալվում է սոցիալիստական սիստեմի պայքարը կապիտալիստականի դեմ, պետությունների խաղաղ գոյակցության առկայության պայմաններից։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմը վճռական դեր է խաղում ազատագրված ժողովուրդներին հակառևոլյուցիայի կամ գաղութատիրության ներմուծումից պաշտպանելու գործում։ Մեր ժամանակներում ազգային-ազատագրական շարժման ուժը նրանում է, որ նա այլևս մեկուսացած չէ, այլ կարող է հենվել սոցիալիզմի լագերի ամբողջ հզորության, ինչպես նաև կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի ռևոլյուցիոն շարժման վրա։ Ահա դրա մեջ մենք կրկին տեսնում ենք պրոլետարական ինտերնացիոնալիզմի վառ դրսևորումը։

Կոմունիստական գաղափարախոսությունը, մարքսիզմ-լենինիզմի տեսությունը ներառնում է լավագույն այն ամենը, ինչ ստեղծել են հասարակական գիտությունները դարերի ընթացքում։ Այդ գաղափարախոսությունը առաջացել է մարդկության ամբողջ պատմական փորձի գիտական վերլուծության և ընդհանրացման շնորհիվ։ Միևնույն ժամանակ նրա մեջ ամենից ավելի լրիվ, հետևողական ու ազնիվ կերպով արտացոլված են բազմաթիվ սերունդների լավագույն գործիչների նվիրական մտքերը, աշխատավորների վսեմ երազանքներն ազատ ու երջանիկ կյանքի վերաբերյալ։

Հենց դրա մեջ է կոմունիստական գաղափարախոսության անհաղթահարելի ձգողական ուժը։ Կոմունիստները գործի մարդիկ են։ Նրանք չեն սահմանափակվում սոսկ դեպի լուսապայծառ ապագա կոչերով, այլ իրականում այն կառուցում են անսպառ եռանդով ու այնպիսի ծավալով ու տեմպերով, որպիսիք չգիտեր և չէր կարող գիտենալ բուրժուական հասարակությունը։ Կոմունիստական իդեալների նկատմամբ հավատարմությունն արտահայտվում է ոչ թե խոսքով, այլ գործով։ Եվ միայն նա է հավատարիմ մեծ Լենինի պատգամներին, ով ոչ թե խոսքով, այլ գործով է պայքարում մեր պարտիայի որոշումների իրականացման համար։

Գ. ԲՐՈՒՏՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների
դոկտոր-պրոֆեսոր

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՍԵՄԱՆՏԻԿԱՅԻ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆԸ[1]

Ժամանակակից փիլիսոփայական դպրոցների մեջ հազիվ թե գտնվի այնպիսին, որն ավելի կրքոտ հանդես գա բառերի, հասկացությունների ստույգ կիրառման օգտին, քան այն դպրոցը, որն իրեն անվանում է սեմանտիկա։ Եվ, միաժամանակ, դժվար է նշել որևէ փիլիսոփայական դպրոց, որն ավելի բազմանշանակ կիրառում ունենա, քան սեմանտիկան։ Այս պարադոքսալ վիճակը, թերևս, այն ինտելեկտուալ պատիժն է, որին սեմանտիկյան փիլիսոփայությունն արժանացել է ոչ այնքան քննադատների, որքան իր հետևորդների ու պաշտպանների կողմից։

Քննարկվող պրոբլեմի գիտա-պատմական մոտեցումը ցույց է տալիս, որ անհրաժեշտ է իրարից խիստ տարբերել սեմանտիկայի առնվազն հետևյալ ըմբռնումները։ Ա) Սեմանտիկան որպես լեզվաբանական ուսմունք։ Ավելի ստույգ այն անվանվում է սեմասիոլոգիա (իմաստաբանություն) և ուսումնասիրում է բառերի ու նախադասությունների, ընդհանրապես լեզվական արտահայտությունների իմաստային կողմը։ Իմաստաբանությունը լեզվաբանական գիտության կարևորագույն բնագավառներից մեկն է։ Բ) Սեմանտիկան որպես տրամաբանական ուսմունք։ Թյուրըմբռնումներից խուսափելու համար այն իրավամբ անվանում են տրամաբանական սեմանտիկա։ Վերջինս ժամանակակից ձևական տրամաբանության արագընթաց զարգացող ճյուղերից մեկն է և հետազոտում է ֆորմալիզացված լեզուների մեկնաբանությունները, նշանների սիստեմները որպես իմաստի արտահայտման եղանակներ։ Գ) Սեմանտիկան որպես փիլիսոփայական ուսմունք կամ սեմանտիկյան փիլիսոփայություն։ Այս վերջինը միասեռ չէ։ Սեմանտիկյան փիլիսոփայություն ասելով, մի կողմից, նկատի է առնվում նեոպոզիտիվիզմն իր զարգացման սեմանտիկյան փուլում։ Փիլիսոփայական այս մտահղացման կողմնակիցները (Ուայտհեդ, Ռասսել, Վիտգենշտայն, Տարսկի, Կարնապ, Այեր և ուրիշներ), իրենց ուսմունքն անվանում են նաև ակադեմիական սեմանտիկա։ Մյուս կողմից, սեմանտիկյան փիլիսոփայություն է անվանվում Կոժիբսկու և նրա հետևորդների՝ Հայակա-

1 Բելգրադի համալսարանում հարավսլավյան փիլիսոփաների համար կարդացած դասախոսության համառոտագրված տեքստը։— Խմբ.։

վայի, Ջոնսոնի, Լիի, Ռապոպորտի, Չեյզի ուսմունքը, որն ավելի ստույգ կոչվում է ընդհանուր սեմանտիկա։

Այս երկու խմբերի փիլիսոփաների հայացքների միջև կան ինչպես ընդհանուր, այնպես էլ տարբերիչ գծեր։ Ընդհանուրն այն է, որ երկու խումբն էլ փիլիսոփայական հետազոտության հիմնական օբյեկտը լեզուն են համարում։ Սակայն, եթե ակադեմիական սեմանտիկան սահմանափակվում է լեզվի հարցերի տրամաբանական և տեսական-իմացաբանական քննարկմամբ, ապա ընդհանուր սեմանտիկան գլխավորը համարում է լեզվի դերը մարդուն շրջապատող աշխարհի ճանաչման պրոցեսում, մարդկանց փոխհարաբերության գործում, աշխարհի սոցիալական վերափոխության բնագավառում։ Որոշակի տարբերություն կա լեզվի իմացական հարցերում ակադեմիական սեմանտիկայի և ընդհանուր սեմանտիկայի մոտեցման մեջ։ Սակայն այդ հարցը տվյալ դեպքում դուրս է գալիս մեր քննարկման շրջանակներից, որի նպատակն է ընդհանուր սեմանտիկայի փիլիսոփայության բնութագրումը դիալեկտիկական մատերիալիզմի տեսակետից։

Ընդհանուր սեմանտիկայի առաջացումն անմիջականորեն առնչվում է լեհ ինժեներ Ալֆրեդ Կոժիբսկու (1879—1950) Գիտություն և ողջամտություն. ոչ արիստոտելյան սիստեմի և ընդհանուր սեմանտիկայի ներածություն խորագիրը կրող աշխատության հետ, որն առաջին անգամ լույս է տեսել անգլերեն լեզվով ԱՄՆ-ում, 1933 թվականին։ Այդ թվականն էլ պաշտոնապես համարվում է ընդհանուր սեմանտիկայի՝ որպես փիլիսոփայական ուսմունքի, առաջացման տարին։ Անցած մոտ երեք տասնամյակի ընթացքում սեմանտիկյան փիլիսոփայությունը տարածվել է ԱՄՆ-ում, Անգլիայում և այլ երկրներում։ Հիմնադրվել են ընդհանուր սեմանտիկայի միջազգային ընկերություն, ընդհանուր սեմանտիկայի միջազգային ինստիտուտ, հրատարակվում է ընդհանուր սեմանտիկյան երկու ամսագիր, տեղի են ունենում այդ փիլիսոփայությանը նվիրված կոնգրեսներ, կոնֆերանսներ և այլն։

Կոժիբսկին և նրա հետևորդները ընդհանուր սեմանտիկան չեն դիտում որպես փիլիսոփայություն սովորական իմաստով։ Այն համարում են գիտական մի ուսմունք, որը սովորեցնում է՝ ինչպես օգտագործել մեր ներվային համակարգությունը՝ կյանքի բոլոր բնագավառներում ճիշտ կողմնորոշվելու համար։ Ընդհանուր սեմանտիկայի որոշ ջատագովներ հասնում են անգամ այնպիսի ծայրահեղությունների, որ Կոժիբսկու ուսմունքն անվանում են «սոցիալիզմի նոր գիտական մեկնաբանում», այն ներկայացնում որպես սոցիալական բոլոր տառապանքներից ազատագրվելու արմատական եղանակ։ Դրանով պետք է բացատրել այն հանգամանքը, որ Ալֆրեդ Կոժիբսկու աշխատություններն ավելի են ճանաչված ընթերցողների լայն շրջաններում, քան նեոպոզիտիվիզմի կարկառուն ներկայացուցիչներ Վիտգենշտայնի և Կառնապի ուսումնասիրությունները։

Ընդհանուր սեմանտիկայի ներկայացուցիչներն իրենց ուսմունքը հակադրում են արիստոտելյան փիլիսոփայությանը և, հատկապես, տրամաբանությանը, ընդհանուր սեմանտիկան համարում են «կազմակերպման ոչ-արիստոտելյան սիստեմ», որն ավելի շուտ մեթոդ է, քան փիլիսոփայական տեսություն։

Որո՞նք են այն հիմնական սկզբունքները, որոնց վրա խարսխվում է ընդհանուր սեմանտիկան։

**Ոչ-լրիվության սկզբունք:** Այս սկզբունքի համաձայն յուրաքանչյուր հաս-



կացություն (ինչպես նաև այն արտահայտող բառը) ներկայացնում է բազմաթիվ հատկանիշներով օժտված առարկան (ռեֆերենտը)՝ իր միայն մի կողմով։ Կարևորը, ընդհանուր սեմանտիկների կարծիքով, այն է, որ տարբեր մարդիկ միևնույն առարկան կարող են հասկացության միջոցով արտահայտել ռեֆերենտի տարբեր հատկանիշների օգնությամբ։ Այստեղից էլ իմացաբանական այն եզրակացությունը, թե միևնույն առարկայի մասին հասկացությունը չի կարող միևնույնը լինել տարբեր մարդկանց համար։

Ոչ-լրիվության սկզբունքն ընդհանուր սեմանտիկները փորձում են հիմնավորել պրոպոզիցիոնալ ֆունկցիայի օգնությամբ, ըստ էության միակողմանիորեն մեկնաբանելով մաթեմատիկական տրամաբանության այդ կարևորագույն հասկացության բովանդակությունը։ Մաթեմատիկայի սկզբունքները անգլերեն գրքում Ռասսելը և Ուայտհեդը պրոպոզիցիոնալ ֆունկցիան սահմանում են որպես մի կամ մի քանի փոփոխակ պարունակող այնպիսի արտահայտություն, որը վերածվում է դատողության, երբ փոփոխակները փոխարինում ենք անհատական առարկաների անուններով։

Ընդհանուր սեմանտիկայի սիստեմի տարբերությունն արիստոտելյան սիստեմից տվյալ հարցում ընդհանուր սեմանտիկները տեսնում են նրանում, որ այն, ինչ արիստոտելյան տրամաբանության մեջ դատողություն էր համարվում, պրոպոզիցիոնալ ֆունկցիայի է վերածվում ընդհանուր սեմանտիկայի տեսությունում։

Սակայն, ցանկացած դատողության նույնացումը պրոպոզիցիոնալ ֆունկցիայի հետ իրավացի կլիներ միայն այն դեպքում, եթե դատողությունները միշտ կոնտեքստից անկախ դիտվեին։ Իրականում, իմացության պրոցեսում, մտքերի հաղորդակցման ընթացքում դատողություններն արտահայտվում են որոշակի իրավիճակում, իրար հետ փոխգործակցության մեջ. հետևաբար՝ կոնկրետ կոնտեքստում։ Այդ էլ հնարավորություն է ընձեռում որոշելու դատողության համապատասխանությունը օբյեկտիվ իրականությանը, որոշելու նրա ճշմարիտ կամ կեղծ լինելու հարցը, մի բան, որ չի կարելի կիրառել պրոպոզիցիոնալ ֆունկցիայի նկատմամբ։

Ոչ-լրիվության սկզբունքի և պրոպոզիցիոնալ ֆունկցիայի ընդհանրությունը քննարկվող փիլիսոփայության ներկայացուցիչները տեսնում են այն բանում, թե այդ երկու ըմբռնումների համաձայն, բառերն ու նախադասությունները լոկ նշաններ են, որոնք կոնկրետ, որոշակի բովանդակություն չունեն։

Պրոպոզիցիոնալ ֆունկցիայի՝ ընդհանուր-սեմանտիկների մեկնաբանության և վերջինիս կողմից առաջադրված ոչ-լրիվության սկզբունքի իմացաբանական արմատները հիմնականում լեզվաբանական ռելյատիվիզմի մեջ են, բառի նշանակության սուբյեկտիվ մոմենտի բացարձականացման, սուբյեկտիվ մոմենտը օբյեկտիվից անջատելու և նրան հակադրելու մեջ, իմացության պրոցեսում զգայականի և տրամաբանականի դիալեկտիկական միասնությունը չըմբռնելու մեջ, տրամաբանական մտածողության պրոցեսում սենսիտիվ մոմենտի չափազանցության մեջ։

Ընդհանուր սեմանտիկայի փիլիսոփայության սկզբունքների համակարգության մեջ կենտրոնական տեղ է գրավում ոչ-նույնության սկզբունքը: Ընդհանուր սեմանտիկայի հիմնադիր Ա. Կոժիբսկին այդ սկզբունքը դիտել է որպես գոյի և իմացության համապարփակ օրենք։ Ըստ նրա, մենք ապրում ենք այնպիսի աշխարհում, ուր ոչ-նույնությունը այնպիսի համընդհանուր երևույթ է,

ինչպիսին ձգողականության ուժը և, հետևաբար, յուրաքանչյուր նույնացում (իդենտիֆիկացիա) այս կամ այն չափով դատապարտված է կեղծ գնահատական լինելու։ Ընդհանուր սեմանտիկայի ոչ-արիստոտելյան համակարգությունը, նրա կողմնակիցների կարծիքով, հիմնված է արմատապես ժխտական նախադրյալի վրա՝ «նույնության» ամբողջական և լրիվ ժխտման վրա։

Ոչ-նույնության սկզբունքը, ըստ նրա հեղինակների, հիմնվում է օպերացիոնալ սահմանման վրա, բխում է այդ սահմանումից։ Ըստ օպերացիոնալիզմի ընդհանուր սեմանտիկյան մեկնաբանման, սահմանել որևէ հասկացություն, նշանակում է անմիջականորեն նշել այն գործողությունները, որոնց իրականացման դեպքում առաջանում է սահմանվող հասկացության ռեֆերենտը։

Օպերացիոնալ սահմանման տեսությունը մշակել է ամերիկացի նշանավոր ֆիզիկոս Պերսի Բրիջմենը։ Օպերացիոնալիզմը, որպես ֆիզիկական գիտության առարկա, հատուկ մասնագիտական քննարկման նյութ է։ Տվյալ դեպքում մենք նկատի ունենք հարցի փիլիսոփայական մեկնաբանությունը, որը տվել է ամենից առաջ ինքը՝ Բրիջմենը։ Նկատենք նաև, որ ընդհանուր սեմանտիկայի նշանավոր ներկայացուցիչ Ռապոպորտը Բրիջմենի իմացաբանական առանձին եզրակացություններից մի ամբողջ փիլիսոփայական սիստեմ է մշակել և ամփոփել այն Օպերացիոնալ փիլիսոփայություն խորագիրը կրող աշխատության մեջ, որն անգլերեն հրատարակվել է ԱՄՆ-ում։

Օպերացիոնալ սահմանումը, օպերացիոնալ վերլուծությունը Բրիջմենի և նրա հետևորդների մեկնաբանմամբ հիմնվում է սուբյեկտիվ իդեալիզմի ելակետային դրույթների վրա։ Բացարձականացնելով գիտության մեջ էքսպերիմենտի, գործիքների, տարբեր գործողությունների դերը, սուբյեկտիվիզմի դիրքերից մեկնաբանելով օբյեկտի և դիտումների միջոցների փոխհարաբերությունը միկրոաշխարհի երևույթների բացահայտման գործում, օպերացիոնալիզմի կողմնակիցները հանգում են շրջապատող աշխարհը սուբյեկտից ածանցված լինելու հակագիտական եզրակացությանը։

Եթե վերանանք օպերացիոնալ սահմանման նեոպոզիտիվիստական մեկնաբանությունից և քննարկենք նրա տրամաբանական բովանդակությունը, ապա կնկատենք որոշակի ընդհանրություն օպերացիոնալ և գենետիկ սահմանումների միջև։ Նրանց նմանությունը նրանումն է, որ թե՛ օպերացիոնալ և թե գենետիկ սահմանումների դեպքում խոսքը վերաբերում է առարկայի առաջացման եղանակին և ուղիներին։ Այդ սահմանումների տարբերությունն այն է, որ, նախ՝ օպերացիոնալ սահմանման դեպքում նշվում է փորձարկման ընթացքում երևույթի առաջացման եղանակը, նկարագրվում են այն գործողությունները, որոնք պետք է կատարվեն այս կամ այն երևույթի դրսևորման համար։ Մինչդեռ գենետիկ սահմանման ժամանակ նշվում են այն գործողությունները ու եղանակները, որոնք բացահայտում են էականն ու բնորոշը առարկայի մեջ։ Այնուհետև, եթե գենետիկ սահմանումը նշում է առարկան գոյացնող օբյեկտիվ պրոցեսները, օպերացիոնալ սահմանումը նշում է առարկան ստեղծող մեր գործողությունները։

Օպերացիոնալ սահմանումը գիտության մեջ կիրառվում է մեծ մասամբ որպես էքսպերիմենտներից հանգեցված եզրակացություններ, որպես էքսպերիմենտալ օրենքների ձևակերպումներ, իսկ երբեմն էլ՝ գիտական որոշ երևույթների նկարագրումներ։ Այդ սահմանումը մասնավորապես իր տեղն ունի էլեկտրոնային հաշվիչ մեքենաներով աշխատելիս— մեքենայական թարգմանու-



թյան գործում և այլն։ Օպերացիոնալ սահմանումը իդեալիզմի համար արգավանդ հող կարող է դառնալ այն դեպքում, երբ «օպերացիան» («գործողությունը») դիտվում է սուբյեկտիվորեն, երբ օպերացիոնալ սահմանումը բացարձականացվում է, դարձվում միակ հնարավոր սահմանումը, համարվում մեր գիտելիքների արտահայտման միակ ձևը։

Առաջադրելով օպերացիոնալ սահմանումը որպես միակ հնարավոր սահմանում, ընդհանուր սեմանտիկները ջատագովում են նկարագրական-էմպիրիկ գիտելիքները, հանդես գալիս տեսական ընդհանրացումների դեմ։ Վերջիններս, նրանց կարծիքով, առարկաների հետ նույնացվելու սպառնալիք են պարունակում։ Ահա թե ինչու օպերացիոնալ սահմանման իդեալիստական մեկնաբանությունից բխում է ոչ-նույնության սկզբունքը։

Ընդհանուր սեմանտիկների մտահղացման համաձայն, ոչ-նույնության սկզբունքը նախ և առաջ ուղղված է ընդդեմ ա) իրերի նույնացման, բ) բառի և առարկայի նույնացման, գ) միևնույն բառի տարբեր օգտագործումների նույնացման, դ) աբստրահման տարբեր աստիճանների նույնացման։

Այն բանում, որ բնությունը տարբեր երևույթների բազմազանություն է, հավանաբար ոչ ոք չի կասկածում։ Սակայն այդ բազմազանությունը, երևույթների տարբերությունը բնավ էլ չի ժխտում շատ առարկաների ընդհանուր գծերը։ Ամենևին էլ գիտական չէ առարկաների միջև տարբերությունների բացարձականացումը նրանց համանման հատկանիշների անտեսման գնով։ Մինչդեռ այդպիսի մոտեցում են ցուցաբերում ընդհանուր սեմանտիկայի փիլիսոփայության հետևորդները։ Ըստ էության այս տեսակետը միջնադարյան նոմինալիզմի վերակենդանացումն է սուբյեկտիվ իդեալիզմի հիմնաշենի վրա։ Այդ մասին է վկայում ընդհանուր սեմանտիկայի հատուկ սկզբունքներից մեկը՝ թվային ցուցանիշների սկզբունքը, որի համաձայն յուրաքանչյուր առարկա, լինելով խիստ անհատական և անկրկնելի, նման, համասեռ առարկաներից անպայման պետք է տարբերվի հատուկ թվային ցուցիչով, այլապես կընկնենք կեղծ նույնացման մեջ։

Ոչ-նույնության սկզբունքի գլխավոր իմաստը, սակայն, Կոժիբսկին և նրա համախոհները համարում են բառերի օբյեկտիվացումից մարդկանց հեռու պահելը։ «Քարտեզը տերիտորիա չէ»— այս մետաֆորը Կոժիբսկու կարծիքով լավ է արտահայտում ոչ-նույնության սկզբունքի բուն բովանդակությունը։

Ղեկավարվելով այս սկզբունքով, Կոժիբսկին և նրա հետևորդները սկզբունքային տարբերություն են տեսնում «բառերի աշխարհի» և «ռեալ իրերի աշխարհի» միջև։ Նկատի ունենալով այն կարևոր հանգամանքը, որ բառեր ասելով ընդհանուր սեմանտիկները հասկանում են նաև նրանց առարկայական բովանդակությունը, ոչ միշտ են տարբերում հասկացությունը և նրա բառային արտահայտությունը, ակնհայտ է դառնում, որ քննարկվող սկզբունքը քարոզում է շրջապատող աշխարհի անճանաչելիություն։ Իրականում բառերի, բառախմբերի միջոցով արտահայտված հասկացությունների աշխարհը ռեալ իրերի աշխարհի արտացոլումն է, պատկերը, որը և հնարավորություն է տալիս մարդուն՝ ճանաչելու իրեն շրջապատող իրականությունը, այն ծառայեցնելու իր նպատակին։

Ինչ վերաբերում է բառերի տարբեր օգտագործումների, ինչպես նաև աբստրահման տարբեր աստիճանների նույնացմանը, ապա, անկասկած, այդպիսի երևույթ ոչ ոք չի արդարացնում։ Այն մերժվում է բոլորին հայտնի տրա-

մաբանության օրենքներով և ամենևին էլ կարիք չկա մի նոր սկզբունք առաջադրել, մանավանդ որ վերջինս հավակնություն ունի իր վրա շատ ավելի մեծ պարտավորություններ վերցնելու, քան կարող է կատարել։

Ընդհանուր սեմանտիկայի երրորդ հիմնական սկզբունքն **ինքնաարտացոլման սկզբունքն է**։ Նկատի ունենալով այն իմացաբանական փաստը, որ լեզվի միջոցով արտահայտում ենք ո՛չ միայն շրջապատող աշխարհի մասին մեր գիտելիքները, այլև գիտելիքներն իր իսկ՝ լեզվի մասին (լեզուն ինքը լեզվի ուսումնասիրության առարկա է), Կոժիբսկին և նրա հետևորդները մի ամբողջ ուսմունք են մշակել ինքնաարտացոլման մասին։ Ընդհանուր սեմանտիկայի հետևորդները փորձում են վերջինս հիմնավորել Ռասելի կողմից մշակված տիպերի տեսությամբ, սակայն այն դիտելով ո՛չ միայն մաթեմատիկական պարադոքսների լուծման եղանակ, այլև որպես սոցիալական շատ հարցերի բանալի, հասարակական տիպի բարդություններից դուրս գալու միջոց։

Մինչդեռ, ըստ էության, ընդհանուր սեմանտիկների ինքնաարտացոլման սկզբունքը, ոչ մի ընդհանուր բան չունենալով սոցիալական պրոբլեմների ճիշտ ըմբռնման հետ, քարոզում է սուբյեկտիվիզմ և ագնոստիցիզմ իմացության հարցերում։ Այդ սկզբունքը շրջապատող իրականության վրա մարդու ազդեցությունը հակադրում է այդ ազդեցության նկատմամբ ունեցած ազդեցությանը, զգայարանների միջոցով ձեռք բերած գիտելիքները՝ տրամաբանական իմացությանը։ Ի դեպ, այդ սկզբունքի օգնությամբ է, որ ընդհանուր սեմանտիկները տրամաբանական իմացության դերը փաստորեն հանգեցնում են զգայական տվյալների նկարագրությանն ու սիստեմավորմանը։

Փիլիսոփայության մեջ չեզոք երևալու ցանկությունն ընդհանուր սեմանտիկներն իրենց համար այնպիսի կարևորագույն խնդիր են համարում, որ հանուն դրա պատրաստ են իրենց ուսմունքը փիլիսոփայություն չանվանել։ Կոժիբսկին հայտարարում է, որ ընդհանուր սեմանտիկան չի զբաղվում նրանով, թե ինչն է առաջնայինը, ինչը՝ երկրորդայինը, գո՞յը թե գիտակցությունը։ Այս հարցադրումն անգամ ընդհանուր սեմանտիկները «մետաֆիզիկական կեղծ պրոբլեմ» են անվանում։ Փոխանակ զբաղվելու գոյի և գիտակցության փիլիսոփայության հարցով, նրանց կարծիքով, անհրաժեշտ է քննարկել այն, թե միասնական գիտության համար ո՞ր լեզուն է ավելի նպատակահարմար— ֆենոմենա՞լ թե ֆիզիկական։

Սակայն հայտարարությունը մնում է սոսկ հայտարարություն, իսկ իրականում փիլիսոփայության կոնկրետ հարցերը քննարկելիս, ընդհանուր սեմանտիկները յուրաքանչյուր քայլափոխին ապացուցում են, որ իրենց դավանած ուսմունքը Բերկլիի, Հյումի, Մախի սուբյեկտիվ իդեալիզմի շարունակությունն է պատմական նոր պայմաններում։

Ինչպես ընդհանրապես սուբյեկտիվ իդեալիզմը, այնպես էլ ընդհանուր սեմանտիկան նույնացնում է մարդուն շրջապատող իրականությունը զգայական տվյալների հետ։ Ընդհանուր սեմանտիկայի առանձնահատկությունը տվյալ հարցում «իրականության ստեղծման» դերում լեզվին հատուկ նշանակություն տալն է։ Հայակավան ուղղակի պնդում է, թե լեզուն հեռու է միայն մտքերի արտահայտման միջոց լինելուց, ըստ էության այն որոշում է իրականության բնույթը։ Ընդհանուր սեմանտիկայի մի այլ նշանավոր ներկայացուցիչ՝ Ուենդել Ջոնսոնը ակնհայտ սոլիպսիզմ է քարոզում, պնդելով, թե էլեկտրոնը գի-



տական երևակայության արդյունք է լոկ, իսկ տիեզերքը՝ դիտողի և դիտվողի միակցում։

Իդեալիզմի պաշտպանության համար ընդհանուր սեմանտիկներն առաջադրում են բազմաթիվ սկզբունքներ, մասնավորապես «ոչ-էլեմենտալիզմի», «գծիկի», «չակերտների», «թվային ցուցիչների» սկզբունքները։

Սեմանտիկյան փիլիսոփայության հետևորդները գտնում են, թե այն կենդանի, խոսակցական լեզուները, որոնցով մենք օգտվում ենք, այսպես ասած, արիստոտելյան կառուցվածք ունեն, անբաժանելին նրանք դիսկրետ մասնիկների են բաժանում։ Այս էլ ընդհանուր սեմանտիկներն անվանում են էլեմենտալիզմ և սրան հակադրում ոչ էլեմենտալիստական մոտեցում և «գծիկի» օգտագործում։ Նման խորհրդով ղեկավարվելու դեպքում մենք պետք է օգտագործենք ոչ թե, ասենք, «մատերիա» և «գիտակցություն», «մարմին» և «հոգի», «տարածություն» և ժամանակ», այլ՝ «մատերիա-գիտակցություն», «մարմին-հոգի», «տարածություն-ժամանակ» և այլն։ Այստեղից ընդհանուր սեմանտիկները բխեցնում են այն սկզբունքային, իրենց համար կարևոր նշանակություն ունեցող փիլիսոփայական դրույթը, թե՝ ինչպես գոյություն չունի տարածություն առանց ժամանակի, այնպես էլ չկա մատերիա առանց գիտակցության կամ էլ մարմին առանց հոգու։ Դժվար չէ նկատել, որ նման մեկնաբանության մեջ ընդհանուր սեմանտիկներն ամենևին էլ ինքնատիպ չեն։ Նոր տերմիններով նրանք լոկ կրկնում են Ավենարիուսի ուսմունքը «Ես»-ի և «ոչ-ես»-ի միջև սկզբունքային կոորդինացիայի մասին։

Ընդհանուր սեմանտիկներն առաջադրել են «չակերտների սկզբունքը» իդեալիստական էմպիրիզմը հիմնավորելու համար։ Ըստ այդ սկզբունքի, ընդհանուր հասկացությունները պետք է օգտագործել միայն չակերտների մեջ, քանի որ սեմանտիկյան փիլիսոփայության համաձայն, յուրաքանչյուր հասկացություն անմիջականորեն կապված է սուբյեկտի անցյալ փորձի հետ և կրում է լոկ անհատական բնույթ։

Իսկ մի այլ սկզբունքի օգնությամբ՝ «թվային ցուցիչների» միջոցով քննարկվող փիլիսոփայության հետևորդները փորձում են վերակենդանացնել միջնադարյան ծայրահեղ նոմինալիզմը, սակայն սուբյեկտիվ իդեալիզմի հիման վրա։ «Թվային ցուցիչների սկզբունքի» համաձայն մեզ շրջապատող աշխարհի յուրաքանչյուր երևույթ խիստ անհատական է, անկրկնելի, արմատապես տարբերվում է տվյալ դասի մյուս բոլոր անդամներից և այդ ընդգծելու համար պետք է կրի թվային ցուցիչ (սեղան$_1$-ը սեղան$_2$ չէ)։ Նման փիլիսոփայությունը չի նկատում ընդհանուրը համասեռ առարկաների մեջ, իրականությունը հանգեցնում է եզակի առարկաների միակցության, առանձին երևույթների զգայական հոսքին։

Բնականաբար հարց է առաջանում. ի՞նչ հարաբերության մեջ են գտնվում նոմինալիզմը և սեմանտիկան եզակիի և ընդհանուրի բնույթի քննարկման, նրանց փոխհարաբերության մեկնաբանման մեջ։

Եթե այս հարցը քննարկենք տրամաբանության տեսանկյունից, այսինքն ընդհանուրի և եզակիի փոխհարաբերության իմաստով, ապա կնկատենք, որ ծայրահեղ նոմինալիզմի և ընդհանուր սեմանտիկայի միջև տարբերություն չկա։ Ընդհանուր սեմանտիկան, այս առումով, ըստ էության կրկնում է միջնադարյան նոմինալիզմի դրույթները։ Այս իմաստով ընդհանուր սեմանտիկան կարելի է անվանել նեոնոմինալիզմ, բայց միայն այս իմաստով։

Իսկ եթե տվյալ հարցը քննության առնենք գոյաբանության տեսանկյունից, այն առումով, թե ինչպես է ներկայացնում ընդհանուր սեմանտիկան առանձին առարկաների էությունը, եզակիի բնույթը, ապա դժվար չէ նկատել արմատական տարբերությունը միջնադարյան նոմինալիզմի և ընդհանուր սեմանտիկայի միջև։ Ի տարբերություն միջնադարյան նոմինալիզմի, որը եզակին, առանձինը զգայական ընկալվող նյութական առարկա էր համարում, որի համար էլ Կ. Մարքսը նոմինալիզմը համարել է մատերիալիզմի առաջին արտահայտությունը միջնադարյան փիլիսոփայության մեջ, ընդհանուր սեմանտիկան եզակին, առանձինը համարում է զգայությունների միակցություն, սուբյեկտի վերապրում, մարդու ներվային համակարգության և «էլեկտրոնների դինամիկական քաոսի» փոխհարաբերություն։

Այլ կերպ ասած, եզակիի և ընդհանուրի փոխհարաբերության պրոբլեմը գոյաբանական տեսակետից ընդհանուր սեմանտիկան լուծում է սուբյեկտիվ իդեալիզմի դիրքերից և, իհարկե, այս առումով ընդհանուր սեմանտիկան ոչ մի կերպ չի կարելի անվանել միջնադարյան նոմինալիզմի ժառանգորդը։

Աշխարհի անճանաչելիությունը ընդհանուր սեմանտիկայի փիլիսոփայության հատկանշական գծերից մեկն է։ Կոժիբսկին և նրա հետևորդները իմացությունը հանգեցնում են լեզվի այն կառուցվածքի մատնանշմանը, որը համապատասխանում է իրականության տվյալ հատվածին։ Այնտեղ, ուր չի կարելի ցույց տալ նման համապատասխանություն, խոսք չի կարող լինել ճանաչելիության մասին։ Բայց, քանի որ մենք չենք կարող խոսել լեզվի և իրականության կառուցվածքային համապատասխանության մասին (բացառությամբ արհեստական լեզուների կառուցվածքի և իրականության կառուցվածքի հնարավոր համապատասխանության), ուստի Կոժիբսկու և նրա հետևորդների փիլիսոփայությունը չի կարելի այլ կերպ որակավորել, քան բացարձակ ագնոստիկական։

Ընդհանուր սեմանտիկայի որոշ հետևորդներ պնդում են, թե իրերի էության ըմբռնմանն իբր խանգարում է լեզվի կառուցվածքի ոչ-ճկուն բնույթը։ Նման հարցադրումն արդեն սխալ է այն պատճառով, որ համեմատում է անհամեմատելի երևույթներ։ Լեզվի կառուցվածքը և իրականության կառուցվածքը տարասեռ են, չի կարելի քննարկել նրանց ուղղակի նման կամ հակադիր լինելու հարցը։ Խոսքն, իհարկե, վերաբերում է կենդանի, խոսակցական լեզուներին և ոչ թե օժանդակ, արհեստական լեզուներին։ Վերջին դեպքում հարցն այլ բնույթ ունի։

Ընդհանուր սեմանտիկների ագնոստիցիզմը մեծ մասամբ բխում է նրանց ռելյատիվիստական աշխարհըմբռնումից։ Բացարձականացնելով փոփոխումը, շարժումը, ընդհանուր սեմանտիկները հանգում են այն եզրակացության, թե մեր ուսումնասիրության առարկան այն աստիճանի արագ է փոխվում, որ հնարավոր չէ ճանաչել նրան։ Իսկ ռելյատիվիզմը ընդհանուր սեմանտիկների փիլիսոփայության համար պատահական չէ։ Ռելյատիվիզմի, ռելյատիվիստական իդեալիզմի հիմնավորման համար ընդհանուր սեմանտիկներն առաջադրել են մի շարք «աշխատանքային սկզբունքներ», մասնավորապես հավանականության սկզբունքը և «և այլնի» սկզբունքը։

Ընդհանուր սեմանտիկայի հավանականության սկզբունքի համաձայն, տրվյալ հատկանիշը մենք կարող ենք վերագրել այս կամ այն առարկային որպես հավանական, բայց ոչ որպես անհրաժեշտ հատկություն։ Հիմնվելով տվյալ



սկզբունքի վրա, ընդհանուր սեմանտիկան ժխտում է բացարձակ ճշմարտությունը, այն հանգեցնում լոկ հարաբերականի և, վերջին հաշվով, հանգում օբյեկտիվ ճշմարտության մերժմանը։ Այս նպատակին է ծառայում նաև «և այլնի» սկզբունքը, ըստ որի մենք ոչ մի առարկայի, ոչ մի փաստի մասին չենք կարող արտահայտել ստույգ և վերջնական կարծիք, մեր յուրաքանչյուր արտահայտություն, գնահատական պետք է վերջանա «և այլն» բառերով։ Ընդհանուր սեմանտիկների միջազգային ընկերության ամսագիրը կրում է «Եվ այլն» (ETC) խորագիրը։ Այս փաստը հենց ցույց է տալիս, թե որքան մեծ նշանակություն են տալիս ընդհանուր սեմանտիկներն այդ սկզբունքին։

Ճշմարտության ընդհանուր սեմանտիկյան ըմբռնման համար հատկանշական է կոնվենցիոնալիզմը։ Ընդհանուր սեմանտիկները գտնում են, որ մեր գիտելիքները մարդկանց միջև համաձայնության արդյունք են։ Այդ համաձայնության շնորհիվ է, որ մենք կարողանում ենք կողմնորոշվել իրականության մեջ և բացատրել մեզ հետաքրքրող փաստերը։ Կոնվենցիոնալիզմի տեսական սնանկությունն ապացուցված է արտացոլման թեորիայի միջոցով։ Ճշմարտությունը, մեր գիտելիքները բնավ էլ չեն կարող լինել կոնվենցիայի արդյունք, այլապես միևնույն հարցի վերաբերյալ կլինեին մի շարք ճշմարտություններ, որը հանգեցնում է ճշմարտության օբյեկտիվ բնույթի ժխտմանը։ Ճշմարտությունը մեզ շրջապատող իրականության արտացոլումն է։ Լինելով իր եղանակով սուբյեկտիվ, ճշմարտությունը օբյեկտիվ բնույթ ունի իր արտացոլման հիմքով, իր առաջացմամբ, այն բանով, որ այն օբյեկտիվ իրականությունն է արտացոլում։

Մի շարք հարցերում և, մասնավորապես, ճշմարտության մեկնաբանությունում, մենք նկատում ենք ընդհանուր սեմանտիկայի փիլիսոփայական ազգակցությունը պրագմատիզմի հետ։ Այդ երկու իդեալիստական աշխարհըմբռնումների ընդհանրության հիման վրա է առաջացել օպերացիոնալ փիլիսոփայությունը, որը ներկայացնում է ընդհանուր սեմանտիկայի հայտնի ջատագով Ա. Ռապոպորտը։

Ճշմարտության ուսմունքը Ռապոպորտի օպերացիոնալ տեսության մեջ խարսխվում է վերիֆիկացիայի սկզբունքի վրա։ Վերջինս Ռապոպորտը ամբողջապես առնչում է գործողությունների (օպերացիաների) հետ և փորձում հաղթահարել այդ սկզբունքի տրամաբանական պոզիտիվիզմի հիմնադիրների մեկնաբանության մեջ տեղ գտած մի շարք աչքի ընկնող դժվարություններն ու թերությունները։ Այդ նպատակով Ռապոպորտի կողմից առանձնացված ճշմարտության երկու ձևը՝ ճշմարտությունը ընդհանուր սեմանտիկյան ըմբռնմամբ և մտքերի կանոնավորությունը որպես ճշմարտության տարատեսակ, չեն կարող գիտականորեն արդարացնել վերիֆիկացիայի սկզբունքը, քանի որ բոլոր դեպքերում ճշմարտության որոշման հարցում այն հիմնվում է պրակտիկայի դերի ժխտման վրա։

Ընդհանուր սեմանտիկների մեկնաբանմամբ օպերացիոնալիզմը ճշմարտությունն առնչում է լեզվի հետ, նրա կառուցվածքի և կանոնների հետ, մի բան, որին օպերացիոնալիզմի փիլիսոփայության կողմնակիցները հասնում են ճշմարտության հասկացությունը վերջին հաշվով կանոնավորությանը հանգեցնելուն։ Նման մեկնաբանումը ճշմարտության պրագմատիստական պլյուրալիզմի արտահայտությունն է՝ հարմարեցված լեզվի մասին ընդհանուր սեմանտիկայի ելակետային դրույթներին։

Ճշմարտության ընդհանուր-սեմանտիկյան տեսությունը, անկախ նրա արտահայտման ձևերից, ուղղված է ճշմարտության օբյեկտիվ բնույթի դեմ։ Այն արտացոլման տեսության հակապատկերն է։

Ընդհանուր սեմանտիկների իմացաբանության մեջ հատուկ տեղ է գրավում ուսմունքը վերացարկման (աբստրակցիայի) մասին։ Այդ հարցին են նվիրված մասնավորապես Կոժիբսկու «ստրուկտուրային դիֆերենցիալը» և Հայակավայի «վերացարկման աստիճանները», որոնք վերացարկման ընդհանուր-սեմանտիկյան տեսություններ են իրենց գրաֆիկական նկարագրությամբ։

Վերացարկման պրոցեսի ելակետը, ընդհանուր սեմանտիկների կարծիքով «երևույթն» է, որը նրանց կողմից դիտվում է որպես էլեկտրոնների և պրոտոնների քաոս։ Վերացարկման «օբյեկտը» զգայություններից, ընկալումներից կազմված կոնստրուկցիա է և ինքը նույնպես վերացարկում է։ Ընդհանուր սեմանտիկներն այդ անվանում են աբստրահման ոչ-բառային մակարդակ։ Վերջինս, իր հերթին, բաղկացած է աբստրահման սուբմիկրոսկոպիկական և միկրոսկոպիկական աստիճաններից։ Վերացարկման հետագա ընթացքը հանգեցնում է առարկայի մասին հասկացության առաջացման։ Վերացարկման այդ մակարդակն ընդհանուր սեմանտիկներն անվանում են աբստրահման բառային մակարդակ, որը կարող է բաղկացած լինել անսահման քանակով աստիճաններից՝ առանձին առարկայի անվանում, բառ բառի մասին և այլն։

Վերացարկման ընդհանուր-սեմանտիկյան տեսությունը նախ և առաջ մեխանիկական-մետաֆիզիկական բնույթ ունի։ Ոչ բառային մակարդակի վերացարկումը ընդհանուր սեմանտիկները ներկայացնում են որպես մի ֆիզիոլոգիական գործողություն, որի ընթացքում առանձնացվում են համասեռ զգայական առարկաների ընդհանուր հատկանիշները։ Այդ նույն գործողությունը շարունակվում է նաև վերացարկման բառային մակարդակում։ Ընդհանուր սեմանտիկները և, մասնավորապես, Կոժիբսկին, ըստ էության տարբերություն չեն տեսնում զգայական իմացության և տրամաբանական արտացոլման միջև, թե մեկը և թե մյուսը դիտում են որպես վերացարկման միևնույն պրոցես, ի վերջո հանգում են վերացարկման բիոլոգիզացմանը, աբստրահումը բացատրում Ջոն Դյուիի «նատուրալիստական» մտահղացման ոգով։

Ընդհանուր սեմանտիկների վերացարկման տեսությունն իր վրա կրում է տափակ էմպիրիզմի կնիքը։ Այդ ակնհայտ երևում է վերացարկումը «զգայելի», «շոշափելի» ձևով ներկայացնելու նրանց ձգտումից։ Դրան է ծառայում ընդհանուր սեմանտիկայի հատուկ սկզբունքներից մեկը՝ վիզուալիզացիայի սկզբունքը։

Վերացարկման պրոցեսի ընդհանուր-սեմանտիկյան մեկնաբանությունը սուբյեկտիվիստական է։ Աբստրահման պրոցեսի բնորոշ հատկանիշներից մեկը ընդհանուր սեմանտիկներն անվանում են նրա անհատական բնույթը։ Իհարկե, յուրաքանչյուր վերացարկում իր վրա, որոշակի իմաստով, սուբյեկտիվության դրոշմ ունի, պայմանավորված է ինչպես իմացության պրոցեսի, այնպես էլ ճանաչող սուբյեկտի առանձնահատկություններով։ Սակայն, վերացարկման այդ սուբյեկտիվ կողմը ամենևին էլ չի կարող մթագնել նրա սուբյեկտից անկախ օբյեկտիվ բովանդակությունը, որը և կարևորն ու որոշիչն է վերացարկման համար։ Օբյեկտիվ բովանդակության առանձնացման հնարավորությունը միշտ ընձեռում է արտադրական-հասարակական պրակտիկան, մինչդեռ վերջինիս դերը չըմբռնելը վերացարկման պրոցեսի ընդհանուր-սեմանտիկյան



մեկնաբանման բնորոշ գիծն է և նրա տեսական սնանկության գլխավոր պատճառներից մեկը։

Իրենց ուսմունքը ընդհանուր սեմանտիկներն անվանում են ոչ-արիստոտելյան տրամաբանություն, հակադրելով այն Արիստոտելի տրամաբանությանը։ Ընդհանուր սեմանտիկայի պայքարը արիստոտելյան տրամաբանության դեմ իրականում ուղղված է մտածողության ձևերի և օրենքների մատերիալիստական մեկնաբանման դեմ։

Ընդհանուր սեմանտիկայի կողմնակիցները արիստոտելյան տրամաբանությունը համարում են երկարժեք տրամաբանություն և հակադրում դրան ընդհանուր սեմանտիկայի բազմարժեք տրամաբանությանը, ընդ որում անօրինականորեն խիստ լայն մեկնաբանելով Լուկասևիչի, Տարսկու տրամաբանական ուսմունքից փոխ առած «երկարժեք տրամաբանություն» և «բազմարժեք տրամաբանություն» հասկացությունները։

Չտարբերակելով արիստոտելյան տրամաբանության և, մասնավորապես, երրորդի բացառման օրենքի գոյաբանական և իմացաբանական ըմբռնումները, ընդհանուր սեմանտիկները արիստոտելյան տրամաբանությունը համարում են երկարժեք կողմնորոշման դրսևորում, այն նույնացնում մետաֆիզիկական մտածելակերպի հետ և պայքարում նրա դեմ ռելյատիվիզմի դիրքերից։

Ընդհանուր սեմանտիկների առաջադրած բազմարժեք կողմնորոշումը ըստ էության սուբյեկտիվիստական-ռելյատիվիստական մեթոդ է, որն անվերապահորեն ժխտում է «կամ-կամ» բանաձևի իմացական նշանակությունը։ Մինչդեռ ժամանակակից գիտությունը ցույց է տալիս, որ բոլոր հանգամանքների բազմակողմանի քննարկումը կարող է օգտագործել և «ինչպես այս, այնպես էլ այն» բանաձևը և «կամ-կամ» բանաձևը։ Այդ բանաձևերից յուրաքանչյուրի կիրառումը կախված է կոնկրետ պայմաններից։

Կողմնորոշումների մասին ընդհանուր սեմանտիկյան տեսության բնորոշ կողմերից մեկն էլ այն է, որ կողմնորոշման բնույթը բացատրվում է լեզվի կառուցվածքով, մի մեկնաբանություն, որն իրեն չի արդարացնում ոչ գործնականորեն և ոչ էլ տեսականորեն։

Մտածողության և իրականության նկատմամբ լեզվի դերի մեկնաբանման հարցում հանդես է գալիս ընդհանուր սեմանտիկների և լեզվաբանական հարաբերականության տեսության կողմնակիցների հայացքների ընդհանրությունը։ Ինչպես Կոժիբսկին և նրա համախոհները, այնպես էլ լեզվաբանական հարաբերականության տեսության նշանավոր ներկայացուցիչ Ուորֆը և նրա հետևորդները քարոզում են այն գաղափարը, թե իբր լեզուն, լեզվի կառուցվածքը, որոշակիորեն պայմանավորում են մարդու մտածողությունը, աշխարհայացքը, նրա վարվելաձևը։

Այս տեսակետի կողմնակիցներն իրենց թեզն ապացուցելու համար վկայակոչում են տարբեր ժողովուրդների մոտ տարբեր «լեզվական պատկերների» առկայությունը, այն հանգամանքը, որ այս կամ այն ժողովրդի լեզվում հանդիպում ենք բառերի, որոնց բովանդակությունը առանձնահատուկ է տվյալ ժողովրդի համար։ Միջինեվրոպական ստանդարտի լեզուների համեմատությունը հոպի, նուտկա և այլ լեզուների հետ կարող է բազմաթիվ վկայություններ տալ այս առթիվ։

Սակայն այդ պատմական փաստը բոլորովին այլ բան է նշանակում։ Ժողովրդի գոյության սոցիալ-պատմական պայմանները, նրա կենցաղը և վարվե-

լակերպը, անշուշտ, իրենց հետքն են թողնում նրա բառապաշարի, լեզվի իմաստային կողմի, լեքսիկական բովանդակության վրա։ Դրանով էլ բացատրվում է տարբեր ժողովուրդների «աշխարհի լեզվական պատկերների» տարբերությունը։ Սակայն այդ տարբերությունը ամենևին էլ չի բնորոշում մտածողության կառուցվածքը, մտածողության տրամաբանական ապարատը, որն ընդհանուր է բոլոր ժողովուրդների համար։

Անշուշտ տարբեր են մարդկանց աշխարհայացքը, նրանց փիլիսոփայությունը։ Սակայն այդ որևէ ձևով չի առնչվում նրանց լեզվի կառուցվածքի հետ։ Այդ մասին են վկայում այն բազմաթիվ փաստերը, որ միևնույն ազգի փիլիսոփաները հաճախ պատկանում են փիլիսոփայական հակադիր լագերների, իսկ տարբեր ազգի փիլիսոփաներ՝ միևնույն լագերին։ Նույն այդ նկատառումով անհիմն պետք է համարել և այն պնդումը, թե մարդկանց վարքագիծը, վարվելակերպը պատճառաբանվում են լեզվի կառուցվածքով։

Մարդկանց մտածողության և վարքագծի վրա լեզվի ունեցած դերի մասին լեզվաբանական հարաբերականության տեսության արմատական եզրակացությունների ժխտումը բնավ էլ չի նշանակում լեզվի դերի անտեսում իմացության պրոցեսում, մտածողության և մարդկային վարվելակերպի բնագավառում։ Լեզվի իմացական կարևորագույն նշանակությունն այն է, որ լեզուն մեր մտքերի առաջացման ու գոյության, մեր մտքերի հաղորդման միջոց է։ Լեզուն, անշուշտ, իր ազդեցությունն ունի ինչպես մարդու մտածողության, այնպես էլ վարքի վրա։ Սակայն սկզբունքորեն կարևոր է այն, որ այդ ազդեցությունը միայն էմոցիոնալ է, այն իրենով չի պայմանավորում ո՛չ մտածողության բնույթը և ոչ էլ մարդկանց գործողությունները որպես սիստեմ։

Մարդու հասարակական կյանքում լեզվի դերի բացարձակացումը ընդհանուր սեմանտիկներին հանգեցնում է արմատական սխալ սոցիոլոգիական ընդհանրացումների, որոնք ներկա պատմական պայմաններում օբյեկտիվորեն ծառայում են իմպերիալիստական բուրժուազիայի շահերին։

Սակայն ընդհանուր սեմանտիկայի փիլիսոփայության քննադատությունն ամենևին էլ չի նշանակում ոչ այն պրոբլեմատիկայի քննադատություն, որով զբաղվում են ընդհանուր սեմանտիկները և ոչ էլ լեզվաբանական ու տրամաբանական սեմանտիկայի մերժում, որը տեղի էր ունենում վերջիններս սեմանտիկյան իդեալիզմի հետ անօրինականորեն նույնացնելու հետևանքով։ Պետք է հուսալ, որ նման սխալ մոտեցումն արդեն անցյալին է վերաբերում։ Եվ, հակառակը, սեմանտիկյան իդեալիզմի քննադատությունը, տրամաբանական սեմանտիկայից և լեզվաբանական սեմանտիկայից այն խստորեն տարբերելը ավելի լայն հնարավորություններ է ընձեռում՝ ընդգծելու վերջիններիս կարևորագույն գիտական արժեքը։



Կ. ՄԱՄԻԿՈՆՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

# ՀԱՅ ՍՈՑԻԱԼ-ԴԵՄՈԿՐԱՏՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ*

Լենինյան «Իսկրա»-ի երևան գալը և ռևոլյուցիոն շարժումների ծավալումը Անդրկովկասում նախադրյալներ հանդիսացան ՌՍԴԲՊ Բաքվի, Թիֆլիսի, Բաթումի կոմիտեների և Հայ սոցիալ-դեմոկրատների միության ստեղծման համար։

1901 թվականի սկզբին հայ իսկրայականները ձեռնամուխ եղան իրենց ուժերը միավորելու գործին։ Նրանց ականավոր ներկայացուցիչն ու ղեկավարը Ստ. Շահումյանն էր։ Նա 1901 թ. հունվարին Նոր-Նախիջևանում Ռ. Խանազադի մոտ կոնկրետ պլան էր մշակում Հայ սոցիալ-դեմոկրատների միության և նրա տպագիր օրգանը ստեղծելու մասին։ Այս առթիվ նա նամակներ է գրում Արշակ Զուրաբյանին և Բոգդան Կնունյանցին, նրանց քննարկմանը դնելով իր պլանը՝ Միության և նրա օրգանի ստեղծման հրատապ խնդիրները։ Ցավոք, Հայ սոցիալ-դեմոկրատների միության նախաձեռնողի և կազմակերպչի այս նամակները մինչև օրս հայտնաբերված չեն։ Ա. Խումարյանի ոչ հարուստ հուշերից միայն կարելի է կռահել նրանց հիմնական բովանդակությունը՝ Միություն ստեղծելու աշխատանքներին լծվելու կոնկրետ առաջարկությունները։ Այս աշխատանքներում Ստ. Շահումյանին անգնահատելի օգնություն է ցույց տալիս Աշոտ Խումարյանը։ Նրանք, միմյանցից անկախ, դեռ վաղուց կանգնել էին ռևոլյուցիոն ուղու վրա և ճաշակել այդ ուղու հմայքն ու դժվարությունները։ Այժմ սկսվում էր նրանց մտերմության և համատեղ գործունեության շրջանը։ 1901 թ. հունվարին վերադառնալով իր առաջին աքսորից, Ա. Խումարյանը Նոր-Նախիջևանում պատահում է Ստ. Շահումյանին, խորամուխ լինում նրա ապագա անելիքներում, ապա իր ամբողջ ուժերը նվիրաբերում Հայ սոցիալ-դեմոկրատների միությանը, դառնում լենինյան պարտիայի աներեր զինվորներից մեկը։ Նա իր «Անցած օրերից» հուշերում [1] ընդգծում է Ստ. Շահումյանի կազմակերպական հմտությունն ու կարողությունը հայ ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատներին միավորելու և լենինյան-իսկրայական ուղղության միություն ստեղծելու պատմական գործում։

---

* Տպագրվում է քննարկման կարգով։

1 Ա. Խումարյան, «Անցած օրերից»։ Տե՛ս «Մարտակոչ» թերթը, № 3 (259), 1924, 4 հունվարի։

Նոր-Նախիջևանում Շահումյանը նամակներ է տալիս Ա. Խումարյանին՝ Ա. Զուրաբյանի և Բ. Կնունյանցի համար, առաջարկում կապվել նրանց հետ, միասին քննարկել և տպագիր օրգանը հիմնելու հնարավորություններ ստեղծել: Ստ. Շահումյանի խորհուրդները, առաջարկությունները լիակատար հավանության են արժանանում և դառնում նրանց պրակտիկ գործունեության ծրագիրը: Ա. Զուրաբյանը, առաջ լսած լինելով նամակաբերի մասին, այժմ մոտիկից ծանոթանում է նրա հետ, իմանում նրա ձգտումների մասին, որոնք լիցքավորվել էին Շահումյանի հետ հանդիպելուց հետո, մտերմանում և նրա հետ մեկտեղ նոր եռանդով շարունակում ռևոլյուցիոն գործունեությունը: 1901 թ. ապրիլին Ա. Խումարյանը մեկնում է Բաքու՝ Բ. Կնունյանցին հանձնում նրան հասցեագրված նամակը: Ստ. Շահումյանի նամակը ջերմ պաշտպանության և մեծ հավանության է արժանանում ականավոր իսկրայականի կողմից: Նա անմիջապես օգնում է Ա. Խումարյանին՝ ձեռք բերելու տպագրական անհրաժեշտ պարագաներ, պայմանավորվում իր շուտով Թիֆլիս գալու մասին՝ կազմակերպություն ստեղծելու գործն արագացնելու համար:

Այն մասին, որ Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը պետք է ձևավորվեր 1901 թվականին, վկայում են նաև Սերգո Խանոյանի հուշերը: Նա այդ ժամանակ Ղրիմում ուսուցչություն էր անում: Եվ ահա ստանում է մի փոքր տետր Գումպլովիչի «Հասարակական թեորիաներ» անունով, որի շապիկի վերին երեսին տպված էր մի ծանոթություն, թե շուտով լույս են տեսնելու այս ու այն գրվածքները, ուր հիշատակված էին Ստ. Շահումյանի, Արշակ Զուրաբյանի, Աշոտ Խումարյանի և իր՝ Սերգո Խանոյանի անունները[1]: Այս յուրատեսակ կոնսպիրատիվ նամակից Ս. Խանոյանը ճիշտ եզրակացություն է անում այն մասին, որ Թիֆլիսում կազմակերպվում է մարքսիստական խումբ, որին պետք է մասնակցի և ինքը: «Այնուհետև,— ասում է նա,— երկու տարի ես Թիֆլիս չեկա: Այդ այն ժամանակ էր, որ Վրաստանում արդեն կազմակերպվել էր ու ձևավորվել Ռուսաստանի սոց. դեմ. կուսակցությունը և իր գործունեությունը հրապարակորեն արտահայտել էր պատմական մայիսի ցույցերով՝ Երևանյան հրապարակում»: Ուրեմն, խոսքը 1901 թ. մասին է: Հուշերում նշած «Երկու տարին» 1901 և 1902 թվականներն են: Կասկածից վեր է, որ «տետր-նամակը» ուղարկել է Ա. Խումարյանը Ա. Զուրաբյանի հավանությամբ: Խումարյանը գրաշար էր, գիտեր շրիֆտ ձուլել և հմուտ կոնսպիրատոր էր, նա տպել էր նշածս ծանոթությունը: Նրանք երկուսով վաղօրոք ճանաչում էին Ս. Խանոյանին և որոշել էին ներգրավել նրան ստեղծվող Միության մեջ:

Ա. Զուրաբյանը և Ա. Խումարյանը Թիֆլիսում, Բ. Կնունյանցը և Մ. Մելիքյանը Բաքվում ուժեր են համախմբում, նյութական միջոցներ որոնում, հոգում են տեխնիկա ձեռք բերելու մասին՝ տեղյակ պահելով Ստ. Շահումյանին: Այսպիսով, 1901 թվականի հունվար–ապրիլ ամիսներին բավականին միջոցներ էին ձեռնարկվել, որոնք հնարավորություն էին տալիս հիմնելու Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը (հետագայում՝ ՀՍԴՄ): Սակայն հնարավորությունը իրականություն չդարձավ՝ Միության հիմնումը խանգարվեց՝ 1901 թ. գարնանը տեղի ունեցան մի շարք ձերբակալություններ, ռևոլյուցիոն աշխատանքներ ծավալելու հնարավորությունները շատ դեպքերում բացառվեցին: Մետեխի

[1] Ս. Խանոյան. Արշակ Զուրաբյան (մահվան քառամյակի առթիվ): Տե՛ս «Մարտակոչ» № 3 (259), 1924, 4 հունվարի:



բանտը նետվեցին Վ. Կուռնատովսկին, Գ. Ղարաջյանը (Տ. Ս. Արկոմեդ), Ա. Օկուաշվիլին, Զ. Ջոդրիշվիլին, Ա. Կախոյանը, Ի. Լուզինը, Ս. Ալլիլուևը, Մ. Միրաքյանը, Պ. Մոնտինը, Հ. Փիլոսյանը, Գ. Թելիան և ուրիշներ: Կալանքից խուսափածները ընդհատակ էին անցել: Ապրիլ-մայիս ամիսներից սկսած կապերը բանվորական մասսաների հետ թուլացել էին: Ա. Զուրաբյանն ապրում էր քաղաքից դուրս՝ զինվոր էր և այլևս չէր կարող կապ ունենալ կազմակերպությունների հետ: Այս դեպքերին գումարվեց ՀՍԴՄ տպագիր օրգանը հիմնելու համար նյութական միջոցների բացակայությունը: Ա. Խումարյանը և նրան աջակցող ընկերները, ելնելով այն բանից, որ հնչակյաններն իրենց մարքսիստներ էին հռչակում, դիմեցին նրանց՝ նյութական միջոցներ ստանալու համար, սակայն մերժում ստացան[1]:

Մինչդեռ այս ժամանակաշրջանում հայերեն մարքսիստական գրականության պահանջն ավելի ու ավելի էր մեծանում: Հայ ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատները քաջ գիտակցում էին, որ մարքսիստական գրականության առավել կամ նվազ տարածումը հնարավոր է միայն անլեգալ հրատարակության միջոցով: 1901 թվականի փորձերը՝ օգտագործել Տ. Նազարյանի լեգալ «Տարազ» թերթը և այլն, ավելորդ անգամ համոզեցին նրանց այն բանում, որ միակ ելքը անլեգալ մամուլ հիմնելն է:

Մի տարի անց՝ 1902 թվականի գարնանը, Ստ. Շահումյանը Ռիգայից գալիս է Թիֆլիս, վերականգնում խանգարված կապերը, համախմբում ընկերներին և նրանց հետ միասին ձեռնամուխ լինում այս խնդրի պրակտիկ լուծմանը: Նույն թվականի մայիսին Թիֆլիսում տոնվում է հայ ականավոր գրող Ղազարոս Աղայանի գրական և մանկավարժական գործունեության 40-ամյակը: Ներկա լինելով այս հոբելյանին, Ստ. Շահումյանը ռևոլյուցիոն ուսանողության անունից ողջույնի ճառ է արտասանում, ուր և հայ իրականության մեջ առաջին անգամ համարձակ կերպով մերկացնում է բուրժուական նացիոնալիստներին և առաջ քաշում ռևոլյուցիոն պայքարի խնդիրներ:

Վերլուծելով հասարակական-քաղաքական պայմանները, որոնցում զարգանում էր հայ ժողովրդի գաղափարական կյանքը, Ստ. Շահումյանը հանգում է երկու հիմնական հետևության՝ ա) մեզ հարկավոր է ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատական գրականություն, սակայն նրա լեգալ հրատարակությունն անհնարին է: «Ներկա պայմաններում,— ասում է նա,— անհնարին է որևէ առաջադիմական հասարակական գործ կատարել խաղաղ, օրինական ճանապարհով, լեգալ գրականության միջոցով»: բ) Դեմոկրատ գրողների ստեղծագործություններն իրենց արժանիքներով հանդերձ ցույց չեն տալիս սոցիալական հակասությունների աղբյուրները, առավել ևս այդ ներհակությունների ճիշտ լուծման ուղիները: Մարքս-լենինյան գաղափարներն են, որ կարողանում են հաղթահարել դեմոկրատական գրականության սահմանափակությունը և զինում են մեզ նոր՝ գիտական, ռևոլյուցիոն ուսմունքով, «Ազգային-կուլտուրական գործունեության փոխարեն, որին Դուք նվիրել եք առավելապես Ձեր ուժերը, մենք քաղաքական ռևոլյուցիոն կռիվ ենք քարոզում. բուրժուական «ազատության» ու «ազատամտության» փլատակների վրա մենք կարմիր, պրոլետարական դրոշակ ենք պարզում, որի վրա գրում ենք առայժմ.

[1] Ա. Խումարյան, «Անցած օրերից»: Տե՛ս «Մարտակոչ» թերթը, № 3 (259), 1924, 4 հունվարի:

Նոր-Նախիջևանում Շահումյանը նամակներ է տալիս Ա. Խումարյանին՝ Ա. Զուրաբյանի և Բ. Կնունյանցի համար, առաջարկում կապվել նրանց հետ, միասին քննարկել և տպագիր օրգանը հիմնելու հնարավորություններ ստեղծել։ Ստ. Շահումյանի խորհուրդները, առաջարկությունները լիակատար հավանության են արժանանում և դառնում նրանց պրակտիկ գործունեության ծրագիրը։ Ա. Զուրաբյանը, առաջ լսած լինելով նամակաբերի մասին, այժմ մոտիկից ծանոթանում է նրա հետ, իմանում նրա ձգտումների մասին, որոնք լիցքավորվել էին Շահումյանի հետ հանդիպելուց հետո, մտերմանում և նրա հետ մեկտեղ նոր եռանդով շարունակում ռևոլյուցիոն գործունեությունը։ 1901 թ. ապրիլին Ա. Խումարյանը մեկնում է Բաքու՝ Բ. Կնունյանցին հանձնում նրան հասցեագրված նամակը։ Ստ. Շահումյանի նամակը ջերմ պաշտպանության և մեծ հավանության է արժանանում ականավոր իսկրայականի կողմից։ Նա անմիջապես օգնում է Ա. Խումարյանին՝ ձեռք բերելու տպագրական անհրաժեշտ պարագաներ, պայմանավորվում իր շուտով Թիֆլիս գալու մասին՝ կազմակերպություն ստեղծելու գործն արագացնելու համար։

Այն մասին, որ Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը պետք է ձևավորվեր 1901 թվականին, վկայում են նաև Սերգո Խանոյանի հուշերը։ Նա այդ ժամանակ Ղրիմում ուսուցչություն էր անում։ Եվ ահա ստանում է մի փոքր տետր Գումպլովիչի «Հասարակական թեորիաներ» անունով, որի շապիկի վերին երեսին տպված էր մի ծանոթություն, թե շուտով լույս են տեսնելու այս ու այն գրվածքները, ուր հիշատակված էին Ստ. Շահումյանի, Արշակ Զուրաբյանի, Աշոտ Խումարյանի և իր՝ Սերգո Խանոյանի անունները[1]։ Այս յուրատեսակ կոնսպիրատիվ նամակից Ս. Խանոյանը ճիշտ եզրակացություն է անում այն մասին, որ Թիֆլիսում կազմակերպվում է մարքսիստական խումբ, որին պետք է մասնակցի և ինքը։ «Այնուհետև,— ասում է նա,— երկու տարի ես Թիֆլիս չեկա։ Այդ այն ժամանակ էր, որ Վրաստանում արդեն կազմակերպվել էր ու ձևավորվել Ռուսաստանի սոց. դեմ. կուսակցությունը և իր գործունեությունը հրապարակորեն արտահայտել էր պատմական մայիսի ցույցերով՝ Երևանյան հրապարակում»։ Ուրեմն, խոսքը 1901 թ. մասին է։ Հուշերում նշած «Երկու տարին» 1901 և 1902 թվականներն են։ Կասկածից վեր է, որ «տետր-նամակը» ուղարկել է Ա. Խումարյանը Ա. Զուրաբյանի հավանությամբ։ Խումարյանը գրաշար էր, գիտեր շրիֆտ ձուլել և հմուտ կոնսպիրատոր էր, նա տպել էր նշածս ծանոթությունը։ Նրանք երկուսով վաղօրոք ճանաչում էին Ս. Խանոյանին և որոշել էին ներգրավել նրան ստեղծվող Միության մեջ։

Ա. Զուրաբյանը և Ա. Խումարյանը Թիֆլիսում, Բ. Կնունյանցը և Մ. Մելիքյանը Բաքվում ուժեր են համախմբում, նյութական միջոցներ որոնում, հոգում են տեխնիկա ձեռք բերելու մասին՝ տեղյակ պահելով Ստ. Շահումյանին։ Այսպիսով, 1901 թվականի հունվար–ապրիլ ամիսներին բավականին միջոցներ էին ձեռնարկվել, որոնք հնարավորություն էին տալիս հիմնելու Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը (հետագայում՝ ՀՍԴՄ)։ Սակայն հնարավորությունը իրականություն չդարձավ՝ Միության հիմնումը խանգարվեց՝ 1901 թ. գարնանը տեղի ունեցան մի շարք ձերբակալություններ, ռևոլյուցիոն աշխատանքներ ծավալելու հնարավորությունները շատ դեպքերում բացառվեցին։ Մետեխի

1 Ս. Խանոյան. Արշակ Զուրաբյան (մահվան քառամյակի առթիվ)։ Տե՛ս «Մարտակոչ» № 3 (259), 1924, 4 հունվարի։



բանտը նետվեցին Վ. Կուռնատովսկին, Գ. Ղարաջյանը (Տ. Ս. Արկոմեդ), Ա. Օկուաշվիլին, Զ. Ջոդրիշվիլին, Ա. Կախոյանը, Ի. Լուզինը, Ս. Ալիլուևը, Մ. Միրաքյանը, Պ. Մոնտինը, Հ. Փիլոսյանը, Գ. Թելիան և ուրիշներ։ Կալանքից խուսափածները ընդհատակ էին անցել։ Ապրիլ-մայիս ամիսներից սկսած կապերը բանվորական մասսաների հետ թուլացել էին։ Ա. Զուրաբյանն ապրում էր քաղաքից դուրս՝ զինվոր էր և այլևս չէր կարող կապ ունենալ կազմակերպությունների հետ։ Այս դեպքերին գումարվեց ՀՍԴՄ տպագիր օրգանը հիմնելու համար նյութական միջոցների բացակայությունը։ Ա. Խումարյանը և նրան աջակցող ընկերները, ելնելով այն բանից, որ հնչակյաններն իրենց մարքսիստներ էին հռչակում, դիմեցին նրանց՝ նյութական միջոցներ ստանալու համար, սակայն մերժում ստացան[1]։

Մինչդեռ այս ժամանակաշրջանում հայերեն մարքսիստական գրականության պահանջն ավելի ու ավելի էր մեծանում։ Հայ ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատները քաջ գիտակցում էին, որ մարքսիստական գրականության առավել կամ նվազ տարածումը հնարավոր է միայն անլեգալ հրատարակության միջոցով։ 1901 թվականի փորձերը՝ օգտագործել Տ. Նազարյանի լեգալ «Տարազ» թերթը և այլն, ավելորդ անգամ համոզեցին նրանց այն բանում, որ միակ ելքը անլեգալ մամուլ հիմնելն է։

Մի տարի անց՝ 1902 թվականի գարնանը, Ստ. Շահումյանը Ռիգայից գալիս է Թիֆլիս, վերականգնում խանգարված կապերը, համախմբում ընկերներին և նրանց հետ միասին ձեռնամուխ լինում այս խնդրի պրակտիկ լուծմանը։ Նույն թվականի մայիսին Թիֆլիսում տոնվում է հայ ականավոր գրող Ղազարոս Աղայանի գրական և մանկավարժական գործունեության 40-ամյակը։ Ներկա լինելով այս հոբելյանին, Ստ. Շահումյանը ռևոլյուցիոն ուսանողության անունից ողջույնի ճառ է արտասանում, ուր և հայ իրականության մեջ առաջին անգամ համարձակ կերպով մերկացնում է բուրժուական նացիոնալիստներին և առաջ քաշում ռևոլյուցիոն պայքարի խնդիրներ։

Վերլուծելով հասարակական-քաղաքական պայմանները, որոնցում զարգանում էր հայ ժողովրդի գաղափարական կյանքը, Ստ. Շահումյանը հանգում է երկու հիմնական հետևության՝ ա) մեզ հարկավոր է ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատական գրականություն, սակայն նրա լեգալ հրատարակությունն անհնարին է։ «Ներկա պայմաններում,— ասում է նա,— անհնարին է որևէ առաջադիմական հասարակական գործ կատարել խաղաղ, օրինական ճանապարհով, լեգալ գրականության միջոցով». բ) Դեմոկրատ գրողների ստեղծագործություններն իրենց արժանիքներով հանդերձ ցույց չեն տալիս սոցիալական հակասությունների աղբյուրները, առավել ևս այդ ներհակությունների ճիշտ լուծման ուղիները։ Մարքս-լենինյան գաղափարներն են, որ կարողանում են հաղթահարել դեմոկրատական գրականության սահմանափակությունը և զինում են մեզ նոր՝ գիտական, ռևոլյուցիոն ուսմունքով, «Ազգային-կուլտուրական գործունեության փոխարեն, որին Դուք նվիրել եք առավելապես Ձեր ուժերը, մենք քաղաքական ռևոլյուցիոն կռիվ ենք քարոզում. բուրժուական «ազատության» ու «ազատամտության» փլատակների վրա մենք կարմիր, պրոլետարական դրոշակ ենք պարզում, որի վրա գրում ենք առայժմ.

1 Ա. Խումարյան, «Անցած օրերից»։ Տե՛ս «Մարտակոչ» թերթը, № 3 (259), 1924, 4 հունվարի։

«Կռիվ բռնակալության դեմ,
Կեցցե քաղաքական ազատությունը» [1]։

Հոբելյանական ճառում Ստ. Շահումյանը նոր, բարձրացող սերնդի անունից կոչ էր անում. «...նա, ով ուզում է, որ հայ ժողովուրդը գրականություն ունենա՝ նա պիտի ամենից առաջ կռիվ հայտարարի այն պայմանների, քաղաքական այն կարգերի դեմ, որոնք արգելում են ժողովրդի, այդ հասարակական օրգանիզմի, ազատ, բնական զարգացումը» [2]։

Ստ. Շահումյանի այս սքանչելի ճառը տպագրվեց և բազմացվեց Ջալալօղլիում՝ մարքսիստական խմբակի հեկտոգրաֆով։ Այն երևի նախօրոք պլանավորված էր։ Սակայն և այնպես այս նախաձեռնությունը չէր կարող հագեցնել այն ծարավը, որ կար դեպի իսկրայական գրականությունը, չէր կարող բավարարել մարքսիստական մասսայական գրականության նկատմամբ անընդհատ աճող պահանջները։ Այն միայն խոշոր երևույթ էր հայերեն լեզվով մարքսիստական գրականություն ստեղծելու դժվարին ճանապարհին։ Ստ. Շահումյանը որոշակի պլան ուներ՝ համարձակորեն դիմել անլեգալ մամուլին, որպես տվյալ պայմաններում միակ միջոցի, որը պետք է հետևեր լենինյան «Իսկրա»-ին, նրա ոգով պայքարեր, պրոպագանդեր ու կազմակերպեր։

Երկրամասի արդյունաբերական շրջաններում ծնունդ առած հայ սոցիալ-դեմոկրատական խմբակները «հայ բանվորներին մի ընդհանուր բանակի մեջ կապեցին վրացի, ռուս և այլ բանվորների հետ և նրանց առաջ դրեցին լայն ռևոլյուցիոն խնդիրներ»,— գրել է Շահումյանը [3]։ Այդ խմբակները գործում էին տեղական սոցիալ-դեմոկրատական կոմիտեների (խմբակների) հետ միասին, որպես նրանց անբաժանելի ինտերնացիոնալ մասնիկներ։ ՀՍԴՄ հիմնելը առավել ևս պետք է ակտիվացներ, լայնորեն ծավալեր և խորացներ ռևոլյուցիոն աշխատանքները հայ բանվորության և բոլոր աշխատավորների շրջանում։ Ստեփան Շահումյանը և նրա համախոհները ՀՍԴՄ ստեղծելու պատմական գործում ցուցաբերեցին անձնվիրություն, գաղափարական և կազմակերպչական լայն գործունեություն ծավալեցին և կարողացան 1902 թ. կեսում հիմնել Հայ սոցիալ-դեմոկրատների միություն՝ կենտրոնական, ղեկավար կազմակերպություն իր անլեգալ տպագիր օրգանով։

Մեկ և կես տարի տևեց անդուլ աշխատանքը մինչև հիմնվեց ՀՍԴՄ։ Սա շրջադարձային կետ էր նաև Միության անդամներից յուրաքանչյուրի անձնական կյանքում՝ ստեղծելով կազմակերպություն, նրանք ամեն ինչ ի սպաս դրին հանուն նրա ծրագրի կենսագործման։

Որոշ հեղինակներ ասում են, թե Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը Լենինի գիտությամբ է հիմնվել։ Սա չի համապատասխանում պատմական իրողությանը։ Լենինը ողջունել է ՀՍԴՄ ստեղծումը, ոչ թե նրա գիտությամբ է այն ստեղծվել։

ՀՍԴՄ ստեղծվել է 1902 թվականի հունիսին։ Ելնելով նրանից, որ 1903 թ. փետրվարին Լենինն ասում էր, թե հայ սոցիալ-դեմոկրատների միությունը կես տարուց ավելի առաջ է կազմակերպվել, կարծում ենք, որ հունիսը ամենահավանականն է։

1 Ստ. Շահումյան, Երկեր, հ. 1, էջ 39։
2 Նույն տեղը, էջ 35։
3 Նույն տեղը, էջ 284։



Սա է հիմնական ելակետը՝ որոշելու այն հարցը, թե ե՞րբ է ստեղծվել Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը։

Այս առթիվ տարակարծություն կա մեր պարտիական-պատմական գրականության մեջ։ Ամենից շատ նշվում է, որ ՀՍԴՄ ստեղծվել է 1902 թ. գարնանը, ըստ որում հիմք են ընդունվում Ա. Խումարյանի խոսքերն այն մասին, որ 1902 թ. զատկի օրը Ա. Զուրաբյանն իր տանը հավաքեց Խումարյանին, Շահվերդյանին, Երզնկյանին և Դաշտոյանին, խոսեց բանվորական շարժման և հայերեն մարքսիստական անլեգալ թերթ ստեղծելու մասին, որի համար դրամի խիստ կարիք էր զգացվում [1]։ Նույն բանն է ասում նաև Ռ. Դաշտոյանը, միայն ավելացնելով, որ այս խորհրդակցությանը ներկա էր եղել նաև Ն. Ալաջալյանը։ «Արշակը մեզ բացատրեց հայերեն Ս.-դեմոկրատական թերթ ունենալու անհրաժեշտությունը։ Մենք բոլորս ուրախությամբ համաձայնվեցինք աջակցել, բայց ամենագլխավորը նյութականն էր...» [2]։ Սա հիմք չի տալիս հանգելու այն եզրակացության թե ՀՍԴՄ ստեղծվել է 1902 թ. գարնանը։ Հիմք չի տալիս, որովհետև այստեղ չի ասվում սոցիալ-դեմոկրատական կազմակերպության մասին, այլ միայն թերթ ստեղծելու մասին։ Պետք է նկատի ունենալ նաև հետևյալ հանգամանքը։ Ս. Խանոյանը իր հուշերում ՀՍԴՄ անվանում է մարքսիստական առաջին խումբ [3]. Ա. Երզնկյանը՝ «խումբ», «կոմիտե» [4], նկատի ունենալով 1902 թ. գարնան ժամանակաշրջանը. նշանակում է այդ ժամանակ կազմակերպություն չկար, անուն չուներ, ուրեմն՝ ձևավորված չէր։ Բացի դրանից, միությունը՝ միասնական կազմակերպությունը, չի ստեղծվել Ստ. Շահումյանի բացակայության ժամանակ, մինչդեռ «զատկի օրվա» խորհրդակցությանը նա չի մասնակցել։

Ընդունելի չէ և այն, որ ՀՍԴՄ նախաձեռնող է համարվում Թիֆլիսի կոմիտեն [5]։ Նույն միտքը տարբեր երանգներով կրկնվում է մի շարք, մեծ մասամբ Ստ. Շահումյանին նվիրված աշխատություններում։ Իհարկե, ՌՍԴԲՊ Թիֆլիսի կոմիտեն ողջունել և ամեն կերպ օժանդակել է Ստ. Շահումյանին և Ա. Զուրաբյանին՝ ստեղծելու Միություն, նա օգնության է եկել հայերեն իսկրայական թերթ հրատարակելու դժվարին գործում, մի բան, որ այլ կերպ էլ լինել չէր կարող, սակայն համարել Թիֆլիսի կոմիտեն ՀՍԴՄ ստեղծման նախաձեռնող կամ թե հանձնարարողի դերում ներկայացնել նրան՝ համոզեցուցիչ չէ։ Զգալի օգնություն է ցույց տվել նաև Բաքվի կոմիտեն։ Նրա անդամներից երկուսը՝ Բ.Կնունյանցը և Մ. Մելիքյանը որոշակի դեր են խաղացել պոլիգրաֆ նյութեր և սարքավորումներ ձեռք բերելու և «Պրոլետարիատ»-ի տպարան ստեղծելու գործում, ողջունել են ՀՍԴՄ ստեղծելու նախաձեռնությունը, սակայն թե ինչու, Բաքվի կոմիտեն չի հիշատակվում։ Դեռ ավելին։ Ս. Կասյանը պնդում է, որ «Պրոլետարիատ» թերթի խմբակը մտնում էր Թիֆլիսի ընդհանուր սոցիալ-դեմոկրատական կազմակերպության մեջ [6]։ Ս. Տ. Արկոմեդը ասում է, որ «Պրոլետարիատ» թերթը հրատարակում էր Թիֆլիսի կո-

1 Տե՛ս «Մարտակոչ» № 3 (259), 1924, 4 հունվարի։
2 Տե՛ս «Խորհրդային Հայաստան» № 105, 1927, 10 մայիսի։
3 Ա. Երզնկյան, Հուշեր, գ. 1, Ե. 1927, էջ 29։
4 Հայաստանի կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր, Ե. 1963, էջ 37—38։
5 Очерки истории КП Грузии, ч. I, 1957, стр. 77.
6 Ս. Կասյան, Սպեցիֆիկները և սպեցիֆիզմը, Թ. 1929, էջ 8։

միտեն[1]: Այս հիման վրա որոշ հեղինակներ պնդում են, որ ՀՍԴՄ գոյություն է ունեցել ՌՍԴԲՊ Թիֆլիսի կոմիտեին կից:

Նման «ապացույցները» նսեմացնում են Հայ սոցիալ-դեմոկրատների միության նշանակությունը, չեզոքացնում են նրա տեղը երկրամասի լենինյան-իսկրայական կազմակերպությունների շարքերում: 1901—1902 թվականներին կազմակերպվում և ամրապնդվում են Թիֆլիսի, Բաքվի և Բաթումի լենինյան-իսկրայական ուղղության սոցիալ-դեմոկրատական կոմիտեները: 1902 թ. ամռանը (հունիսին) Թիֆլիսի կոմիտեի գիտությամբ և աջակցությամբ, ինչպես նաև Բաքվի կոմիտեի օգնությամբ և Ստ. Շահումյանի ղեկավարությամբ հայ իսկրայականներին հաջողվում է հիմնել Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը, որպես ՌՍԴԲՊ տեղական կազմակերպություններից մեկը: Միությունը կազմակերպորեն ամրապնդվում և ռևոլյուցիոն գործունեություն է ծավալում կովկասահայ իրականության մեջ: Նույն թվականի հոկտեմբեր ամսում նա հրատարակում է իր տպագիր անլեգալ օրգան «Պրոլետարիատ» թերթը: Թիֆլիսի կոմիտեին կից լինելու դեպքում ՀՍԴՄ իրեն չէր հայտարարի ՌՍԴԲՊ անբաժանելի մասերից մեկը, չէր ունենա հատուկ մանիֆեստ՝ ծրագիր իր քաղաքական դիրքի և պատմական միսիայի մասին: Նրա միասնական կազմակերպություն լինելը ակնրախ կերպով նշել է «Բրձոլան». «Ողջունում ենք մեր նոր եղբայրներին: Ողջունում ենք նրանց ասպարեզ մտնելը մեզ հետ միասին... ահա ձեզ, եղբայրներ, մեր ձեռքը և մեր սիրտը»[2]: ՀՍԴՄ ստեղծվել և գոյություն ուներ որպես ՌՍԴԲՊ տեղական կազմակերպություն, գործում էր հիշյալ կոմիտեների հետ ձեռք-ձեռքի տված, սերտորեն համագործակցած նրանց հետ միասին կազմակերպում և գլխավորում էր ռևոլյուցիոն պայքարը: Սա է պատմական ճշմարտությունը:

Նրա նախաձեռնողը, կազմակերպիչը և անմիջական ղեկավարը եղել է Ստ. Շահումյանը: Նա է հղացել ՀՍԴՄ ստեղծելու միտքը, նախատեսել և գործողության ծրագիր դարձրել նրա ձևավորման ուղիներն ու միջոցները, ընթացք տվել նախապատրաստական աշխատանքներին և, վերջապես, հիմնել կազմակերպությունը: ՀՍԴՄ հետագա գործունեությունը նույնպես ընթացել է նրա ղեկավարության ներքո: Նրա այդ եռանդուն և տիտանական աշխատանքում ակտիվ մասնակցություն են ունեցել Բ. Կնունյանցը, Ա. Զուրաբյանը, Ա. Խումարյանը: Պատահական չէ, որ Խումարյանը, Ա. Երզնկյանը և ուրիշներ իրենց հուշերում պարտքի և շնորհապարտության զգացումով են խոսում Ստ. Շահումյանի մասին, որպես հայ մարքսիստների անզուգական ղեկավարի: Նրանց հուշերն ամբողջությամբ վերցրած վկայում են, որ հանձին Ստ. Շահումյանի նրանք ունեին տաղանդավոր կազմակերպիչ, հմայիչ մի անձնավորություն, որի հեղինակությունն ընդունում էին բոլորը: Ահա թե ինչու մենք չենք կիսում որոշ հեղինակների այն տեսակետը, թե Հայ սոցիալ-դեմոկրատների միության ստեղծման պատմական գործում Ստ. Շահումյանը ընդամենը «անմիջական մասնակցություն է ունեցել» կամ թե ՀՍԴՄ գործունեությունն ընթացել է «Զուրաբյանի, Կնունյանցի և Շահումյանի անմիջական ղեկավարությամբ» և այլն:

...1902 թվականի ամառ: Միությունը գործում էր: Այդ առթիվ կուրսի մեջ

[1] *С. Т. Аркомед*. Рабочее движение и социал-демократия на Кавказе, 1910, стр. 89.
[2] *Г. Жвония*. Большевистская печать Закавказья, Т. 1958, стр. 71.



էին երկրամասի պարտիական կոմիտեները: Նրա գոյության մասին գիտեին ռուս, հայ, վրացի և ուրիշ առաջավոր բանվորներ, գիտեին Միության անդամներին և գործակալներին: Սակայն զգացվում էր մի խոշոր պակաս՝ չկար կոլեկտիվ պրոպագանդիստն ու ագիտատորը, կոլեկտիվ կազմակերպիչը մայրենի լեզվով՝ թերթը, «Իսկրա»-ի հետևորդը, այն հենքը, որի վրա պիտի ամրանար Միությունը:

Վերադառնալով Թիֆլիս, Շահումյանն իր հոբելյանական ճառում տվեց ռևոլյուցիոն ընդհատակյա թերթ ունենալու անհրաժեշտության գաղափարը, որպես հրատապ խնդիր, որպես օրակարգի հարց, ապա ստեղծեց խմբագրական կոլեգիա և կատարեց աշխատանքի բաժանում: ՀՍԴՄ ստեղծմանը նախորդել է խմբագրական կոլեգիայի հիմնադրումը: 1901 թվականի սկզբին Շահումյանը տվել է իսկրայական տիպի հայկական թերթ հիմնադրելու ծրագիրը, 1902 թվականի գարնանը համախմբել է կարող ուժեր և կոնկրետ պարտականությունների բաշխում կատարել: Խմբագրական աշխատանքը պետք է վարեին Շահումյանը և Զուրաբյանը, ֆինանսական մասի պատասխանատուն Երզնկյանն էր, հրատարակության տեխնիկական գործը դրված էր Խումարյանի և Դաշտոյանի վրա:

Թերթի կազմակերպչական աշխատանքները տևեցին մի քանի ամիս: Տպագրական գործի ամբողջ հոգսն ընկած էր հնարագետ, կեցխովելյան տիպի գործիչ Աշոտ Խումարյանի վրա: Նա սովորել էր գրաշարություն, ձեռք բերել անհրաժեշտ քանակությամբ տպագրական տառեր և պարագաներ, գործին մասնակից արել Ս. Խանոյանին, Ռ. Դաշտոյանին, Դ. Շահվերդյանին, ընտրել գաղտնի տպարանի տեղը, սարքավորել այն, գտել էր հուսալի գրաշար Արտաշես Օհանջանյանին և նրան աշխատանքի ներգրավել:

Սեպտեմբեր-հոկտեմբերին թերթը շարված էր, որի անդրանիկ և միակ համարում հոդվածներ ունեին Ստ. Շահումյանը, Կնունյանցը, Զուրաբյանը, Խումարյանը, Մելիքյանը: Այն բազմանշանակ «Պրոլետարիատ» անունն էր կրում: Ճակատին շարված էր պարտիայի մարտական կոչը և անունը, տակին՝ «Օրգան Հայ սոցիալ-դեմոկրատների միության»: «Պրոլետարիատը» լույս տեսավ հոկտեմբերին, այն բաղկացած էր 24 էջից՝ մեծադիր գրքի ծավալով, երկու սյունակ: Տպագրվել էր 240 օրինակ:

Կատարվեց նվիրական իղձը, ծնվեց, աշխարհ եկավ մի նոր օրգան, վառվեց «Իսկրա»-ի մի ջահ ևս, որը պիտի լուսավորեր շրջապատը ամենուրեք՝ որտեղ բացվեր, պիտի ռումբի պես պայթեր թշնամու գլխին: Նրա Երևան գալուն սպասում էին պարտիական շրջաններում, գործարաններում, երկաթուղու վրա, արհեստանոցներում, նավերի վրա, բանտերում: Նրա լեզվով իր ամբողջ ձայնով պիտի խոսեր և սկսեց խոսել հայ պրոլետարիատը, որ կար Բաքվում, Թիֆլիսում, Ալավերդում, Ղափանում, Բաթումում, Երևանում, երկաթգծերում... «Պրոլետարիատը» «Իսկրա»-ի նման, նրա ոգով ու թափով հավատ պիտի արթնացներ հարյուրավոր ընթերցողների մեջ՝ բանվոր դասակարգի գործի հաղթանակի նկատմամբ:

Սակայն «Պրոլետարիատը» չէր կարող անհրաժեշտ չափերով տարածվել: Անլեգալ էր նրա ճանապարհը, կապված հազար ու մի անակնկալների հետ: Դժվարությունները տվյալ դեպքում անհամեմատ ավելի շատ էին և ավելի վտանգավոր, քանի որ 1901 թվականին սկսված ձերբակալությունները շարունակվում էին: Բաիլովի և Մետեխի բանտերում տեղ չկար: Դժոխային է բան-

տային ռեժիմը, զարմանալի են բանտարկյալների հնարքները, լեգենդային է նրանց կամքը։ Ահա մի օրինակ լենինյան իսկրայականների բանտային կյանքից, կապված «Պրոլետարիատ» թերթի ծննդի հետ։ 1902 թ. գարնանը Մարտիրոս Միրաքյանը (Շանթ) տեղեկանում է, որ պիտի ստեղծվի հայ իսկրայականների միության իր տպագիր օրգանով։ Ձերբակալությունը զրկում է նրան ՀՍԴՄ աշխատանքներին մասնակցելու հնարավորությունից։ Սակայն բանտում նա կարողանում է Ա. Կախոյանին, Հ. Փիլոսյանին և ուրիշներին նամակի միջոցով տեղեկացնել ձեռնարկվող միջոցառումների մասին։ «Թանկագին ընկերներ, դրսի ընկերներից ձեզ ողջույն եմ բերել, բացի այդ, ուրախությամբ պիտի հայտնեմ, որ այժմ ձեր ձեռագիր «Բանվոր»-ի փոխարեն շարունակաբար լույս են տեսնելու տպագիր թռուցիկներ և շուտով լույս կտեսնի մեր թերթը։ Սրանով ուզում եմ ասել, թե հայ բանվորական մասսայի ղեկավարող մարմին է ստեղծվել, որը քաղաքականապես պիտի դաստիարակի նրան ու դնե դասակարգային շարժման ուղիղ ճանապարհի վրա։ Կեցցե պրոլետարիատի կռիվը։

Ընկերական համբույրներով՝ Շանթ» [1]։

Ա. Կախոյանը պատմում է, որ երիտասարդ բանվոր ռևոլյուցիոների այս նամակը չափազանց ուրախացրեց բոլորին [2]։

Հայ իսկրայական բանտարկյալները Կուրնատովսկու և ուրիշների հետ միասին մի ընդհանուր բանտախցիկում էին գտնվում։ Այս խցիկը վեր էր ածվել մի յուրատեսակ պարտիական դպրոցի, որտեղ Կուրնատովսկին դասավանդում էր մարքսիզմի հիմունքները և պարտիա ստեղծելու լենինյան պլանի մասին։ Բանտի պատերից ներս է թափանցում «Պրոլետարիատ» թերթը։ Մեծ էր հետաքրքրասիրությունը, ուրախությունը՝ ընդհանուր։ Լրացավ Մետեխի «քաղդպրոցի» թեմատիկան՝ Հայ սոցիալ-դեմոկրատների միության մանիֆեստը թարգմանվում է ռուսերեն և ուսումնասիրվում, իսկ մյուս հոդվածների բովանդակությանը ծանոթանում էին բանավոր թարգմանության միջոցով։ Մետեխյան բանտարկյալները բուռն հավանություն են տալիս թերթի ուղղությանը, ողջունում նրա երևան գալը, իրավացիորեն այն համարելով խոշոր իրադարձություն կովկասահայ բարդ պայմաններում։

---

1 Ա. Կախոյան, Հոդվածներ և հուշեր, Ե 1963, էջ 176։

2 Նույն տեղում։



# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԻՆՉՊԻՍԻՆ ՊԵՏՔ Է ԼԻՆԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԺՈՂՈՎԸ

### (ՔՆՆԱՐԿՄԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ)

Пролетарии всех стран, соединяйтесь!

**ПАРТИЙНАЯ ЖИЗНЬ**

ЖУРНАЛ ЦЕНТРАЛЬНОГО КОМИТЕТА КОММУНИСТИЧЕСКОЙ ПАРТИИ СОВЕТСКОГО СОЮЗА

Մեր ժուռնալի ընթացիկ տարվա առաջին վեց համարներում մի շարք նյութեր ենք հրապարակել՝ «Ինչպիսին պետք է լինի պարտիական ժողովը» խորագրով։ Այդ նյութերը լայն արձագանք են առաջացրել ընթերցողների շրջանում։

Շոշափվող թեմայի նկատմամբ հետաքրքրասիրությունը օրինաչափ է։ Պարտիայի շատ կոնֆերանսների ու համագումարների որոշումներում ընդգծվում էր պարտիական ժողովների՝ որպես կոմունիստների ակտիվությունը զարգացնելու, պարտիական ամբողջ աշխատանքի մակարդակը բարձրացնելու միջոցի, մեծ նշանակությունը։ Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ «պարտիայի անդամների ավելի հաճախակի և ավելի լայն ժողովներն անվերապահորեն պարտադիր են պարտիայի անդամների ինքնագործունեությունը զարգացնելու մյուս միջոցառումների հետ մեկտեղ» (Ленинский сборник, XXXIV, էջ 362)։ Ներկայումս, կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, է՛լ ավելի է աճում պարտիական ժողովների՝ որպես սկզբնական պարտիական կազմակերպությունների բարձրագույն մարմինների և կոմունիստական դաստիարակության դպրոցի, դերը։ Եվ դա հասկանալի է։ Կոմունիստական շինարարության մասշտաբների մեծացումն ու խնդիրների բարդությունը քաղաքական և կազմակերպական ղեկավարության ավելի բարձր մակարդակ են պահանջում։ Մասսաների ստեղծագործական ակտիվության վերելքը, նորանոր միլիոններով սովետական մարդկանց ներգրավումը պետական գործերի ու արտադրության կառավարման մեջ, պահանջում են բարձրացնել սկզբնական պարտկազմակերպությունների դերը, պարտիայի յուրաքանչյուր անդամի պատասխանատվությունը աշխատանքի հաջողության համար։ Այստեղից էլ բխում է այն, որ ներկայումս այդպիսի նշանակություն է տրվում ժողովներին։ Ազատորեն քննարկելով պարտիական քաղաքականությունը և պարտիական պրակտիկ գործունեությունը, կոմունիստները սովորում են իրենց ամենօրյա աշխատանքը կապել համապարտիական, համապետական խնդիրների հետ և օգնում են դրանց լուծմանը։ Պարտիական ժողովներում կոմունիստները տիրապետում են գործին պարտիականորեն մոտենալուն, աշխատանքի լենինյան ոճին, գաղափարապես կոփվում են, աճում որպես պարտիական քաղաքականությունը կիրառողներ, մասսաների կազմակերպիչներ։

## ԿԱՆՈՆԱԴՐԱԿԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՆՈՐՄԱ

Բարձր գնահատելով ժողովի տեղը պարտիական կյանքում, քննարկման մասնակիցները արդարացիորեն նշում են, որ ժողովների պատշաճ մակարդակը, դրանց արդյունավետությունը ինքնաբերաբար չեն ստեղծվում: Դա գործի նկատմամբ ամբողջ պարտիական կոլեկտիվի ջանքերի, պարտիական աշխատողների ստեղծագործական վերաբերմունքի արդյունքն է, ներպարտիական կյանքի գրված և չգրված կանոնների ու նորմերի պահպանման հանրագումարը: Կոմունիստներն սպասում են վերադաս պարտիական մարմինների օգնությանը: Բայց, միաժամանակ, չպետք է պասսիվորեն սպասեն, թե ինչ-որ մեկը մի տեղից կգա և իրենց ժողովները կդարձնի բովանդակալից, հետաքրքրական, մարտական քննադատությամբ հագեցած, այնպես, որ այդ ժողովները մեծ ազդեցություն թողնեն կոլեկտիվի կյանքի վրա:

Ինչպես հայտնի է, կանոնադրության համաձայն, ժողովները պետք է հրավիրվեն ոչ պակաս ամիսը մեկ անգամ: Միայն խոշոր պարտիական կազմակերպություններում, որոնք 300-ից ավելի կոմունիստ ունեն, ընդհանուր ժողով կարող է հրավիրվել ըստ անհրաժեշտության և այն ժամկետներում, որ կսահմանի պարտկոմը կամ կպահանջեն մի քանի ցեխային կազմակերպություններ: Ժողովների կանոնավոր հրավիրումը սկզբնական պարտիական կազմակերպությունների նորմալ գործունեության անհրաժեշտ պայմանն է: Հենց այդպիսի պայմաններում են կոմունիստներն իրենց զգում որպես միասնական համախմբված կոլեկտիվի մասնիկներ, փոխադարձաբար հարստանում փորձով: Բայց սիստեմատիկաբար ժողովներ հրավիրելը դեռ ամեն ինչ չէ: Հարկավոր է, որպեսզի ժողովները դիտվեն որպես կյանքի պահանջմունք, որպես առաջնակարգ անհրաժեշտություն, վանեն ձևական մոտեցումը ժողովների նկատմամբ: Ձևական մոտեցումը բացասաբար է անդրադառնում ամեն ինչի վրա, սկսած օրակարգի ընտրությունից և վերջացրած որոշման մշակմամբ:

Արդյոք դրանով չի բացատրվում, որ որոշ տեղեր թերագնահատում են ժողովները, առաջարկում են դրանք ավելի սակավ հրավիրել: Մի շարք նամակներում առաջ են քաշվում հետևյալ փաստարկները՝ պարտիական խմբերի և ցեխային պարտկազմակերպությունների առկայության պայմաններում ժամանակն անտեղի ծախսվում է, որովհետև օրակարգն ամեն տեղ կրկնվում է. տերիտորիալ տեսակետից ցրված կոլտնտեսային ու սովխոզային կազմակերպություններում, խոշոր ձեռնարկություններում ընդհանուր ժողովների հրավիրումը քիչ դժվարությունների հետ չի կապված, ուստի բավական են ակտիվի լավ նախապատրաստված ժողովները, պարտկոմների ու բյուրոների ընդլայնած նիստերը. արտադրությունում լինում են «եռուն» ժամանակաշրջաններ, երբ ուղղակի անհնարին է զբաղվել ընդհանուր ժողովներով:

Բայց չէ որ ամենևին էլ պարտադիր չէ միևնույն հարցերի կրկնությունը սկզբնական կազմակերպության բոլոր օղակներում: Արդարացի է նաև Մորդովական ԱՍՍՌ Կովիլկինի շրջանի «Ռոսսիա» կոլտնտեսության պարտկազմակերպության քարտուղար ընկ. Կուլագինի դիտողությունը, որ երբեմն հարցի նախնական քննարկումը բրիգադային կազմակերպություններում և պարտխմբերում ո՛չ միայն խոչընդոտ չի հանդիսանում, այլ, ընդհակառակը, հանդիսանում է ընդհանուր ժողովը նախապատրաստելու, այդ ժողովում հանգամանորեն, խորապես զրուցելու տարրերից մեկը: Սխալ է կարծել, թե պարտկոմ-



ների ստեղծմամբ դադարել է գործարանային կամ կոլտնտեսային պարտիական ընդհանուր ժողովների անհրաժեշտությունը: Իհարկե, այդպիսի ժողովների հրավիրումը պարտկոմի անդամներից, ակտիվիստներից լրացուցիչ ջանքեր է պահանջում: Բայց այդ ջանքերն արդարացվում են: Այլապես միասնական, համախմբված կոլեկտիվի փոխարեն սկզբնական կազմակերպությունը դառնում է միմյանց հետ թույլ կապված օղակների մի գումար: Պարտկոմների և բյուրոների «ընդլայնված» նիստերի, ակտիվի խորհրդակցությունների և այլնի հրավիրումը չի կարող փոխարինել ժողովին: Այդպիսի դեպքերում ընտրովի մարմինների գործունեության նկատմամբ պարտիական մասսաների վերահսկողությունը թուլանում է, սեղմվում է քննադատության և ինքնաքննադատության ասպարեզը: Սկզբնական պարտիական կազմակերպության բարձրագույն մարմնի դերը կամա թե ակամա անցնում է պարտիական կոմիտեին:

Քննադատության չի դիմանում նաև այն փաստարկը, թե ժողովների անցկացումն անհնարին է գյուղատնտեսական և այլ կամպանիաների լարված ժամանակաշրջաններում: Հենց այդպիսի պահերին է յուրաքանչյուր կոմունիստի համար առանձնապես կարևոր զգալ հարևանի առկայությունը, համատեղ մշակել գործողությունների ծրագիր, հաշվի առնել լավագույն փորձը: Միայն պետք է, որ անտեղի ժամանակ չկորչի, որ որոշումներն իրական լինեն:

## ԿՅԱՆՔԸ ԼԱՎԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԱՏՈՒՆ Է

Հասկանալի է, այդպիսի յուրաքանչյուր ժողով, ինչպիսի պարագաներում էլ այն անցկացվի, պահանջում է լուրջ, խնամքով նախապատրաստում:

Ժողովի նախապատրաստումն սկսվում է օրակարգն ընտրելուց: Թույլ ակտիվությունը ժողովներում, խիստ ընդհանուր որոշումները ամենից հաճախ արդյունք են այն բանի, որ քննարկվող հարցերն ընտրվում են ոչ բանիմաց, չմտածված կերպով: Եթե օրակարգը հեռու է կոլեկտիվի կյանքից, չի արտացոլում նրա շահերը, ապա, բնական է, այն չի կարող շոշափել, հուզել մարդկանց: Հիմնավորված քննադատության ենթարկվեց դեռևս որոշ տեղեր գոյություն ունեցող այն շաբլոնն ու ֆորմալիզմը, երբ օրակարգն ընտրելիս վատ են հաշվի առնում այս կամ այն հարցի քննարկման նպատակահարմարությունը, երբ բացակայում է սեփական նախաձեռնությունը և հույսը դրվում այն բանի վրա, թե ինչ կհուշեն «վերևից»:

Քննարկման մասնակիցների մեծամասնությունը արդարացիորեն մատնանշում էր, թե հնարավոր չէ ճշգրիտ որոշել այն հարցերի շրջանակը, որոնք պետք է դրվեն ժողովներում: Այստեղ դեղատոմս լինել չի կարող: Խոսքը վերաբերում էր գլխավորապես օրակարգն ընտրելուն: Փորձը համոզում է, որ հաջողություն ձեռք են բերում այնտեղ, որտեղ օրակարգը որոշելիս ելնում են կյանքից, ղեկավարվում են իրոք կարևոր, հիմնական այն խնդիրներով, որոնք որոշում է պարտիան՝ ամբողջությամբ վերցրած, տվյալ ձեռնարկության, կոլտնտեսության, հիմնարկի, ուսումնական հաստատության կոլեկտիվը: Արտադրական պլանների ու պարտավորությունների կատարումը, պայքարը արտադրանքի բարձր որակի, խնայողության և տնտեսման համար, նոր մարդու դաստիարակությունը կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի ոգով, քաղաքի և գյուղի աշխատավորների կուլտուրայի և կենցաղի հարցերը կարող են և պետք է դառնան ժողովների բովանդակությունը: Որքան ավելի բազմազան է

ժողովների ընդգրկած տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի հարցերի շրջանակը, այնքան ավելի կհարստանա պարտիական կազմակերպության կյանքը, կընդլայնվի նրա ազդեցությունը արտադրական և հասարակական գործերի վրա։ «Բջիջների ժողովների օրակարգը,— մատնանշվում էր պարտիայի Կենտկոմի փաստաթղթերից մեկում,— պետք է կազմվի այնպես, որ նրանից չվրիպի համապարտիական և տեղական աշխատանքի կարևորագույն կողմերից և ոչ մեկը»։

Ժողովներում քննարկելու համար հարցեր ընտրելիս կարևոր տեղ կարող են և պետք է գրավեն կոմունիստների առաջարկություններն ու քննադատական դիտողությունները պարտիական հաշվետու-վերընտրական ժողովներում։ Այդ առաջարկությունները, որպես կանոն, շոշափում են կոմունիստների տեսադաշտում գտնվող շատ հրատապ հարցեր։ Տեղական նյութերի հիման վրա կազմված այդպիսի օրակարգերը սովորաբար առաջացնում են հետաքրքրասիրություն, իսկ ժողովները դաստիարակչական մեծ ազդեցություն են թողնում, նպաստում են ներպարտիական դեմոկրատիայի զարգացմանը։ Նման ժողովներում կոմունիստներն իրենց զգում են որպես իրենց կազմակերպության իսկական տերեր։

Նամակներում որպես լուրջ թերություն մատնանշվում է այն հանգամանքը, որ պարտիական ժողովներում հազվադեպ են դրվում այնպիսի հարցեր, որոնք կապված են կոմունիստների կողմից կանոնադրական պարտականությունների կատարման, պարտիայի անդամների իրավունքների ապահովման, տվյալ կոլեկտիվում ներպարտիական կյանքի լենինյան նորմերի պահպանման հետ։ Ժողովների օրակարգերի վերլուծությունը ցույց է տալիս, որ դրանցում հիմնական տեղը գրավում են արտադրական հարցերը։ Եվ դրա դեմ չի կարելի առարկել, որովհետև տնտեսության նկատմամբ պարտիական ղեկավարությունը եղել է և մնում է պարտիական աշխատանքի առանցքը։ Նամակների ու թղթակցությունների հեղինակներին այլ բան է անհանգստացնում. տնտեսական շինարարության հարցերի նկատմամբ պարտիական և այլ կազմակերպությունների մոտեցման միջև սահմանները հաճախ ջնջվում են, քիչ է խոսվում կոմունիստների պարտականությունների, մարդկանց հետ տարվող աշխատանքի, մարդուն մոտենալու հմտության մասին։

Գրում են նաև այն մասին, որ ծրագրերը խիստ ծանրաբեռնված են վերադասից հանձնարարված հարցերով։ Եվ այստեղ շատ բան է կախված ղեկավար պարտիական մարմիններից։ Վերջիններս պետք է խոհուն մոտեցում ունենան հանձնարարականների նկատմամբ, բոլոր կազմակերպությունները մի արշինով չչափեն և, նախքան այս կամ այն ժողովը պարտադրելը, խորհեն, թե չի կարելի արդյոք կոմունիստներին ինֆորմացիա տալու այլ ուղի գտնել, ուրիշ մեթոդներ գործադրեն այս կամ այն առաջադրանքի կատարման նպատակով նրանց մոբիլիզացնելու համար։ Սկզբնական կազմակերպությունների ղեկավարները, իրենց հերթին, պետք է վերևից հանձնարարված հարցերին մոտենան ոչ թե մեխանիկորեն, այլ ստեղծագործաբար։ Ճիշտ է ընկ. Կուզնեցովը (ք. Օդեսա), մատնանշելով, որ պարտաշխատողը պետք է կարողանա բոլոր կազմակերպությունների համար ընդհանուր հարցին մոտենալ այդ կազմակերպությունների պայմաններին համապատասխան, այնպես բարձրացնել հարցը, որ այն կապվի տվյալ կոլեկտիվի կյանքի հետ։

Շատ նամակներում այն մտահոգությունն է արտահայտվում, թե մի շարք



կազմակերպություններում մոռացության են մատնել համապարտիական, համապետական, միջազգային կոմունիստական շարժման հարցերի քննարկումը։ Մինչդեռ այդ հարցերի քննարկումը առաջ է մղում կոմունիստներին, ամրապնդում և զարգացնում է նրանց պատասխանատվությունը պարտիայի գործի նկատմամբ։

Մի շարք պարտիական կազմակերպությունների պրակտիկայում լուրջ թերություն են, այսպես կոչված, հերթապահ, մի ժողովից մյուսը չվող հարցերը։ Սովորաբար դրանք եռամսյակների աշխատանքի ամփոփումն են, առաջիկա տնտեսական կամպանիաների խնդիրները և այլն։ Այդպիսի «յուրային» հարցերը, ինչպես գրում է ընկ. Վլադիմիրովը (ք. Մոգիլով), հոգի են հանում, եթե դրանց մոտենում են սովորական, մեկընդմիշտ ընդունված սխեմայով։ Քանի որ «հանրագումարները» և «խնդիրները» նույնպես մարդկանց կյանքի, աշխատանքի, կենցաղի հարցեր են, ապա այստեղ ևս հարկավոր է ստեղծագործություն, հարկավոր է կոլեկտիվի գործունեության մեջ նոր կողմեր բացահայտելու, գլխավորն առանձնացնելու, առաջնայինը որոշելու հմտություն։

Հմտորեն ձևակերպված օրակարգը ճիշտ ուղի է տալիս զրույցին, կոմունիստներին տրամադրում է դեպի որոշակի նպատակ։ Իսկ դա ապահովում է ընդունված որոշման կոնկրետությունը, գործիմացությունը հաջորդ էտապում։

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԲԱՐ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԵԼ

Թեև ժողովի նախապատրաստման հիմնական տարրերը, կամ, ինչպես ասվում է թղթակցություններից մեկում, ժողովների «բաղկացուցիչ մասերը» միևնույնն են՝ օրակարգի ընտրությունը, ժողովի անցկացման ժամանակը և տեղը, զեկուցողի ու զեկուցումը պատրաստող հանձնաժողովի նշանակումը և որոշումների նախագծերը, այդ ամենը կոմունիստներին ծանուցելը, այնուամենայնիվ մեկ ժողովը նման չէ մյուսին։ Այստեղ ամեն ինչ նշանակություն ունի, ամեն մի մանրուք իր կնիքն է դնում ժողովի ընթացքի վրա։ Բազմամյա պրակտիկայով հաստատված է, որ ժողովի լավ նախապատրաստման համար միայն բյուրոյի անդամների, առավել ևս՝ միայն քարտուղարի ջանքերը բավական չեն։ Որքան ավելի լայն է այն կոմունիստների, իսկ երբեմն նաև անպարտիականների շրջանակը, որոնք այս կամ այն ձևով ներգրավվում են հարցի ուսումնասիրության, զեկուցման նախապատրաստման և այլ նախնական աշխատանքում, այնքան ավելի ակտիվ է անցնում ժողովը։

Բոլոր կոմունիստներին ոտքի հանելը հասարակ բան չէ։ Ուստի ճիշտ են վարվում այնտեղ, ուր բյուրոն կամ պարտկոմը դեռ օրակարգը մշակելիս խորհրդակցում են պարտիական ակտիվի հետ, ստուգում են իրենց։ Բյուրոն միաժամանակ նախատեսում է գործողությունների պլան, որտեղ մատնանշում է, թե ում վրա պետք է հենվել, ում ինչ պետք է հանձնարարել։ Պլանայնությունը հնարավորություն է տալիս օգտագործելու կոլեկտիվի վրա ներգործելու բազմազան ձևերը։

Որպես կանոն, ցեխային պարտկազմակերպությունների քարտուղարների և պարտկազմակերպիչների պարտականությունն է ժողովից առաջ կոմունիստներին պարզաբանել ժողովի նպատակը, նրանց մղել մտածելու առաջարկությունների մասին։ Իսկ եթե այդպիսիք արվում են մինչև ժողովը, ապա այդ մասին հաղորդել պարտկոմին կամ ժողովը նախապատրաստող հանձ-

նաժողովին։ Այդ հանձնաժողովն ամենից հաճախ գլխավորում է պարբյուրոյի, պարտկոմի անդամը կամ զեկուցողը։ Հանձնաժողովի նպատակն է՝ լավ ուսումնասիրել հարցը, նշել դրականը, բացահայտել թերությունները, մշակել հնարավոր միջոցները (որոշման նախագիծը), որպեսզի դրանք ներկայացվեն կոմունիստների դատին։ Հանձնաժողովն իր պարտականությունները կատարել կարող է միայն այն դեպքում, եթե նրա մեջ ընդգրկվեն այն կոմունիստները, որոնք լավ են հասկանում քննարկման համար նախապատրաստվող հարցը։

Երբ ինչպես հարկն է նախապատրաստվում է ժողովը, բոլորի համար էլ գործ ճարվում է։ Վերահսկողության հանձնաժողովը և աջակցող խմբերը կազմակերպում են ստուգումներ։ Ագիտատորներին հանձնարարվում է անցկացնել թեմատիկ զրույցներ, բազմատիրաժ և պատի թերթերի խմբագրական կոլեգիաներին՝ հրապարակել հարցի քննարկման հետ կապված նյութեր։ Գիտա-տեխնիկական ընկերությունները, տնտեսական վերլուծության հասարակական բյուրոները, նորարարության և գյուտարարության բյուրոները կազմակերպում են թեմատիկ ցուցահանդեսներ, լավ արտադրանքի և խոտանված արտադրանքների ցուցադրումներ։ Իրենց համեստ ավանդն են մուծում նաև գրադարանները՝ խորհուրդ տալով թե ինչ պետք է կարդալ առաջիկա ժողովի կապակցությամբ։ Աչքի զարնող պլակատը, տրանսպորանտը, հմտորեն ձևավորված ստենդը կարող են իրենց դերը խաղալ։

Մի շարք նամակներից երևում է, որ մի քանի պարտկազմակերպություններ ժողովներից առաջ կոմունիստներին ուղարկում են նույնանման կամ համանման ձեռնարկությունները, զրուցում մասնագետների, վերադաս մարմինների աշխատողների հետ, օգտվում են նրանց փորձից և խորհուրդներից։

Մի խոսքով, չի կարելի քամահրել ամենափոքր հնարավորությունն իսկ հետաքրքրասիրություն առաջացնելու դեպի ժողովը, բարձրացնելու կոմունիստների ակտիվությունը։ Միայն այդ պայմանով կապահովվի ժողովների գործարարությունն ու կազմակերպվածությունը։ Սակայն ընթերցողների նամակները վկայում են, որ որոշ ղեկավարներ սխալ պատկերացում ունեն նախապատրաստման էության մասին։ Նրանք ձգտում են ամեն ինչ առաջուց նախատեսել, ամեն ինչ նորից ու նորից կրկնել, բացառելու համար ինչ-որ «ավելորդ», «չպլանավորված» դեպքերը ժողովում։ Այդ նպատակով մի որոշ խումբ կոմունիստների հանձնարարվում է ելույթ ունենալ։ Լինում է և այնպես, որ նախօրոք մատնանշվում են ոչ միայն ելույթի թեմաները, այլև կազմվում են դրանց տեքստերը։ Նախապես որոշվում են, թե ով և ինչպիսի առաջարկությամբ պետք է հանդես գա, թե ում որտեղ պետք է ընտրել։ Այդպիսի դեպքերում կոմունիստների նախաձեռնության, ինքնագործունեության համար այլևս տեղ չի մնում։ Նման մոտեցումը վկայում է ոչ այնքան հարցը խոր կերպով քննելու ցանկության, որքան ձևը, գործի արտաքին կողմը, «պրոցեդուրան» պահպանելու մասին։

Ժողովների չափից դուրս «կազմակերպվածությունը» ակնբախ է. իսկական կոլեգիալությունը փոխարինվում է մտացածինով։ Չէ որ կոմունիստներից թաքցնել չես կարող պատրաստված «սցենարները», կորչում է նրանց՝ իրենց միտքն արտահայտելու, խորհրդակցելու ցանկությունը։ Այդպիսի դեպքերում առաջանում են անտարբերություն և պասսիվություն։ Իսկ



այդպիսի մեթոդների դիմող ղեկավարները կողոպտում են հենց իրենց, աղքատացնում են պարտիական կազմակերպության կյանքը։

Ընկ. Կուզնեցովը (ք. Մոսկվա) խմբագրությունում կայացած խորհրդակցությունում շատ ճիշտ նկատեց, որ ժողովի նախապատրաստման գործում վնասակարը միայն ֆորմալիզմը չէ։ Ոչ պակաս վնասակար է նաև մյուս ծայրահեղությունը՝ ինքնահոսը։ Թե՛ մեկը, թե՛ մյուսը պարտկազմակերպությանը խանգարում են առաջադրանքները կատարելու համար մարդկանց մոբիլիզացմանը։ Դատապարտելի ոչինչ չկա այն բանում, գրում է ընկ. Տիտարենկոն (Կիրգիզական ՍՍՌ), որ պարտիական բյուրոյի քարտուղարը կամ անդամը կոմունիստին խորհուրդ են տալիս ելույթ ունենալ, նրան կողմնորոշում են օրակարգի կապակցությամբ ծագող պրոբլեմների մեջ։ Բոլորովին էլ վատ չէ քաջալերել, ոգևորել այն ընկերոջը, որը սովոր չէ հանդես գալու լայն աուդիտորիայի առաջ։ Բայց ինքնին հասկանալի է, որ չի կարելի նրան պարտադրել ուրիշի մտքերը, փաստերի ու երևույթների ուրիշի գնահատականը։ Ժողովի ամեն մի իսկական նախապատրաստման նպատակն է ապահովել հարցերի ոչ թե ցուցադրական, այլ գործարար քննարկումը, դրանում ներգրավել առավելագույն թվով մարդկանց, պարտկազմակերպության անդամներին տոգորել մարտական ոգով։

## ԶԵԿՈՒՑՈՂԻՑ ՇԱՏ ԲԱՆ Է ԿԱԽՎԱԾ

Դիսկուսիայի մասնակիցների նամակներում ամենից ավելի մեծ ուշադրություն է նվիրված զեկուցումներին և զեկուցողներին։ Հիրավի, զեկուցումը ուղղություն է տալիս վիճաբանություններին, նպաստում կոլեկտիվի կարծիքի ձևավորմանը, զեկուցման հիման վրա է մշակվում ժողովի որոշումը։ Սակայն զեկուցումը կարող է այդպիսի նշանակություն ունենալ միայն այն դեպքում, երբ խթանում է կենդանի միտքը, մարդկանց ոգևորում իրենց ավանդը մուծելու ընդհանուր գործում։ Մինչդեռ, դատելով ըստ նամակների և թղթակցությունների, ամենևին էլ ոչ բոլոր զեկուցումներն են համապատասխանում այդ պահանջներին։ Որոշ զեկուցումների համար բնորոշ է փաստերի վրայով մակերեսորեն սահելը, ընդհանուր խոսակցությունը։ Ո՞րն է նման երևույթների պատճառը։ Քննարկման նյութերում կարելի է գտնել այդ հարցի պատասխանը։ Մատնանշում են, օրինակ, որ զեկուցողների շրջանակը շատ սահմանափակ է։ Որպես զեկուցողներ ամենից հաճախ հանդես են գալիս պարտիական և տնտեսական ղեկավարները, հազվադեպ՝ մասնագետները և բոլորովին քիչ՝ շարքային կոմունիստները։ Ճիշտ չէր լինի ժխտել ղեկավարների՝ զեկուցումներով հանդես գալու նպատակահարմարությունը։ Երբեմն դա պարզապես անհրաժեշտ է։ Բայց անվիճելի է նաև այն, որ զեկուցողների շրջանակի ընդարձակումը թարմություն է մտցնում ժողովներում։ Նոր մարդը ազատ է զեկուցման սովորական ձևերից, նա իր մոտեցումը, իր հայացքն ունի իրադարձությունների ու երևույթների նկատմամբ։ Իսկ դա պակաս կարևոր չէ։ Պարտիայում գոյություն ունի «միջակ-պարտիականներից զեկուցողներ առաջ քաշելու» վաղուցվա տրադիցիան, որի մասին բազմիցս հիշեցրել է պարտիայի կենտրոնական կոմիտեն։ Եվ արդարացիորեն ափսոսանք է հայտնվում, որ այդ ցուցումը հաճախ մոռացության է տրվել։ Ներկայումս պրակտիկայում հաճախ չեն կիրառվում հարակից զեկուցումները, հարցի

տարբեր կողմերի վերաբերյալ ոչ թե մեկ, այլ մի քանի զեկուցողներ առաջ քաշելը։ Եվ միանգամայն իզուր։ Պարտկազմակերպություններում աճած ակտիվիստներ շատ կան, և ոչ մի հիմք չկա երկյուղ կրելու, թե նրանք հանձնարարությունը չեն կարող կատարել, զեկուցումը չեն պատրաստի։

Մյուս դժբախտությունը տեղ-տեղ արմատավորված շաբլոնն է։ Քանի որ կան կրկնվող հարցեր, զեկուցողը, առանց խելքին զոռ տալու, վերցնում է հին սխեման և այն «լցնում» սոսկ նոր օրինակներով։ Ձևական, ոչ ստեղծագործական մոտեցումը, բնականաբար, թույլ չի տալիս խորանալու փաստերի մեջ, որսալու նորը, նշելու հեռանկարը։ Վատ է, որ վերլուծությունը, ամփոփումը նենգափոխվում են ընդհանուր դատողություններով։ Գլխավորն այն է, որ ցույց տրվի, թե այս կամ այն կոլեկտիվում գործնականորեն ինչպես են իրականացվում պարտիայի դիրեկտիվներն ու որոշումները, ինչպիսին պետք է լինի տվյալ պարտկազմակերպության ավանդը ընդհանուր դիրքորոշումները կենսագործելու ուղղությամբ։

Զեկուցում կազմելը մեծ, քրտնաջան աշխատանք է։ Որպես կանոն, դա ժամանակ և շատ մարդկանց ջանքեր է պահանջում։ Երբ զեկուցման ամբողջ նախապատրաստությունը դրվում է մեկ մարդու ուսերին, և դեռ պահանջում են, որ նա այդ կատարի շտապ, դժվար է լավ արդյունք սպասել։ Միայնակ զեկուցում կազմելու աշխատանքը իր մեջ մի վտանգ էլ է թաքցնում՝ զեկուցողը, իր համար էլ աննկատելի, կարող է հարցը լուսաբանել միակողմանի, շեղվել, կամ ամեն ինչ վարդագույն ներկայացնել, կամ, ընդհակառակը, չափից ավելի խտացնել գույները։ Նման թերություններից հեշտ է խուսափել, եթե զեկուցողին օգնության հասնեն ակտիվը, պարտկոմը, պարտբյուրոն։ Օգնությունն ամենից առաջ արտահայտվում է նրանով, որ մարդիկ են առանձնացվում հարցը նախապես ուսումնասիրելու, զեկուցման համար նյութեր նախապատրաստելու նպատակով։ Շատ օգտակար է, երբ զեկուցողը խորհրդակցում է ընկերների, հանձնաժողովի անդամների հետ, հաշվի առնում ընկերական դիտողությունները, քննադատությունը։ Կարծիքների փոխանակությունն օգնում է փաստերի վերլուծությանն ու գնահատությանը, զեկուցման համար իսկապես էականը, անհրաժեշտը ջոկելուն, երկրորդականը՝ հարցի էությունը մթագնող մանրամասնությունները, վերացնելուն։

Մի շարք նամակներում տարակուսանք է արտահայտվում զեկուցման թեզերը կամ տեքստը նախապես պարտիական բյուրոյում նայելու նպատակահարմարության մասին։ Իսկապես, ամենևին էլ պարտադիր չէ ամեն մի զեկուցում պաշտոնապես քննարկել, պարտիական մարմնի որոշմամբ այն հաստատել (հասկանալի է, որ խոսքը հաշվետու զեկուցումների մասին չէ)։ Եվ, այնուամենայնիվ, օգտակար է ժամանակին հետաքրքրվել զեկուցման բովանդակությամբ։ Պարտիական բյուրոյի, կոմիտեի անդամներն ունեն իրենց դիտողությունները, իրենց կարծիքը. նրանք փորձված ընկերներ են՝ ընդունակ զեկուցողին նոր մտքեր հուշելու, կարևոր եզրակացություն, արժեքավոր առաջարկություն հղացնելու, զեկուցողին զերծ պահելու այն սնանկ պրիմից, որը Վ. Ի. Լենինը անվանում էր առանձին փաստերից կառչել, խաղ օրինակների հետ։ Լավ նախապատրաստված զեկուցումը, իր հերթին, օգնում է պարտկոմին, պարտբյուրոյին՝ մշակելու գործնական առաջարկություններ ու միջոցառումներ։



## ՊԱՀՊԱՆԵԼ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ, ՀԱՐԳԵԼ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԸ

Քննարկման ընթացքում շատ ընթերցողներ ընդգծում էին, որ ժողովը միայն այն ժամանակ կարող է հանգամանորեն քննել հարցերը, երբ պայմաններ կստեղծվեն կարծիքների ազատ և գործարար փոխանակության համար։

Ժողովում խիստ կարևոր է նախագահության դերը։ Թե ում պետք է ընտրել նրա կազմում, որոշում են իրենք՝ կոմունիստները։ Սակայն որոշ պարտկազմակերպություններում, չգիտես ինչու, կանոն է դարձել նախագահությունում միևնույն մարդկանց առաջադրելը։ Ղեկավար աշխատողներից ոմանք այդ բանին այնքան են ընտելացել, որ նախագահությունում ընտրվելը գրեթե համարում են իրենց պաշտոնի պատկանելիքը։ Երբեմն էլ ժողովը մշտապես այդ բանը հանձնարարում է բյուրոյի կամ պարտկոմի անդամներին։ Պարզ է, որ այդպիսի պրակտիկան չի կարելի խրախուսել։ Մեր պարտիան, ինչպես ասված է ՍՄԿՊ ծրագրում, պետք է իր ներպարտիական կյանքի զարգացման գործում ընթանա մյուս կազմակերպությունների առջևում, ցույց տա կոմունիստական հասարակական ինքնակառավարման առավել կատարելագործված ձևերի մշակման օրինակ։ Պարտիական ժողովն էլ հենց կոմունիստներին սովորեցնում է հասարակական գործերի ղեկավարությունը։ Որքան հնարավոր է շատ կոմունիստներ պետք է անցնեն այդ դպրոցով։

Մի շարք նամակներում շոշափվում է նախագահության կազմը ցուցակով առաջադրելու հարցը։ Իհարկե, կարիք չկա այդպիսի պրակտիկան կիրառել յուրաքանչյուր ժողովում, հատկապես փոքրաթիվ կազմակերպություններում։ Հաճախ բողոք է առաջացնում ոչ թե ցուցակը, այլ հարցը շուտափույթ «անցկացնելու», առաջարկված նախագահության կազմում ուղղումներից, լրացումներից խուսափելու փորձերը։ Պարտադիր չէ նաև ամեն անգամ մեծաթիվ նախագահություն ընտրելը։

Նախագահությունը պետք է ապահովի ժողովի գործարար անցկացումը։ Որոշ կազմակերպություններում նախապես որոշվում է ո՛չ միայն զեկուցման, ելույթների, այլև հենց ժողովի տևողությունը։ Այդպիսի պրակտիկայի հետ բոլորը չէ, որ համաձայն են։ «Եթե հարցը լուրջ և մանրամասն քննարկում է պահանջում,— գրում է ընկ. Ջոնսը (ք. Ռուբցովսկ, Ալթայի երկրամաս),— ապա ոչ մի վատ բան չի լինի, եթե ժողովը շարունակվի մյուս օրը»։ Դժվար է մի ընդհանուր դեղատոմս տալ ժողովի տևողության մասին։ Ամեն ինչ կախված է քննարկվող հարցի բնույթից, այն բանից, թե ինչ է արված պրոբլեմները նախապես պարզելու համար, ելույթների բովանդակությունից, դրանց գործարարությունից։ Բայց չպետք է անտեղի ժամանակ վատնել նիստերում և ժողովներում։ Պետք է ձգտել հակիրճության և հստակության։

Դիսկուսիայի մասնակիցները վճռականապես արտահայտվում են ինքնահաշվետվությունների, դատարկապորտ ճառերի, «հաստիքային» հռետորների դեմ։ Այդպիսի ելույթները առաջացնում են տաղտկություն, միօրինակություն, թմրեցնում են միտքը։ Նման դեպքերում նախագահությունն իրավասու է հռետորներին հիշեցնել, որ նրանք շեղվում են քննարկվող հարցի էությունից։ Նախագահությունը պետք է ակտիվ ազդի ժողովի ընթացքի վրա, հետևի ռեգլամենտի պահպանմանը։ Ռեգլամենտն արտահայտում է կոմունիստների կամ-

քը, և այն պետք է հարգել։ Եթե հարկավոր է լրացուցիչ ժամանակ, դիմիր ժողովին։ Կամ, ասենք, ավարտվեց զեկուցումը։ Նախագահության խնդիրն է մասնակիցներին հնարավորություն տալ ճշգրտելու ոչ պարզ դրույթները՝ սեփական տեսակետն ու սեփական կարծիքը որոշելու։ Իսկ դրա համար ամենևին էլ պարտադիր չէ հարցերն անպայման գրավոր տալը, ինչպես դա որոշ տեղեր անխախտ կերպով պահպանվում է։ Իհարկե, զեկուցողը երբեմն չի կարող միանգամից բոլոր հարցերին պատասխանել։ Նրան մի որոշ ժամանակ է հարկավոր լրացուցիչ նյութեր հավաքելու, տվյալները ճշտելու և եզրափակիչ խոսքում կամ հերթական ժողովում պատասխանելու համար։ Բոլոր դեպքերում հարցերի պատասխանները պետք է օգնեն պրոբլեմների պարզաբանմանը։

Նույնը պետք է ասել ռեպլիկաների մասին։ Երբեմն դրանք գոտեպնդում են ելույթ ունեցողին, նրան օգնում ավելի լավ լուսաբանելու քննվող պրոբլեմը, բացահայտելու գործի մանրամասնությունները։ Այդպիսի ռեպլիկաները, որ տրվում են նախագահության անդամների կամ ժողովի մասնակիցների կողմից, գոտեպնդում են հռետորին, աշխուժություն առաջացնում ժողովում։ Այլ է բանը, երբ ռեպլիկները տրվում են քննադատությունը ճնշելու նպատակով։ Նախագահությունը պետք է վճռականապես հանդես գա նման ռեպլիկաների դեմ։ Նախագահության առաջնահերթ խնդիրն է ժողովում ընկերական մթնոլորտ ստեղծել, պաշտպանել բոլոր կոմունիստների իրավունքներն ու շահերը։

Ընթերցողների նամակներում բողոք է արտահայտվում ելույթները «կարգավորելու» դեմ։ Խոսքը այնպիսի «կարգավորման» մասին է, երբ վերադասավորում են ելույթ ունեցողների գրանցման հերթականությունը, աշխատում «խայթող» հռետորներին գցել ցուցակի վերջը, հույս ունենալով, որ մինչև ելույթների դադարեցումը նրանք ձայն չեն ստանա, առաջին հերթին՝ պարտադիր կերպով ամբիոն են տալիս «առաջատար» արտադրամասերի ու բաժինների ներկայացուցիչներին, ղեկավար աշխատողներին և այլն։ Այդ ամենը հասցնում է այն բանին, որ ելույթ ունեցողների շրջանակը սեղմվում է, հայտնվում են ամբիոնի մշտական այցելուներ, կորչում է քննարկման սրությունը։ Նամակներում միջոցառումներ են նշվում նաև նման աղավաղումների դեմ։ Մի շարք կազմակերպություններում վիճաբանություններին մասնակցել ցանկացող անձանց ցուցակը ընթերցվում է ժողովում։ Եթե հերթից դուրս ձայն տալու անհրաժեշտություն է ծագում, թույլտվության համար դիմում են ժողովին։ Երբ առաջարկում են դադարեցնել ելույթները, ապա պետք է հայտնել, թե ով դեռևս ձայն չի ստացել։ Ժողովը կարող է որոշել, թե դրանցից ում լսելու հարկ կա, որից հետո միայն ելույթները դադարեցնում են։

Դռնբաց պարտիական ժողովներ անցկացնելիս անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել սահմանված կարգը պահպանելուն։ Այդպիսի ժողովներում անպարտիականների ներկայությունը «կարգավորելու», հարցի քննարկմանն ու առաջարկություններ անելուն նրանց մասնակցությունը սահմանափակելու ամեն մի փորձ խիստ անթույլատրելի է. նման փորձերն արատավորում են դռնբաց ժողովների գաղափարը։

Եթե ժողովներում տիրում է ստեղծագործական մթնոլորտ, ապա այդ ժողովներն իսկապես հանդիսանում են սկզբնական կազմակերպությունների բարձրագույն մարմինների, կոմունիստների դաստիարակության իսկական դպրոց։



Շատ կարևոր է, որպեսզի նախագահությունն ապահովի ժողովի ընթացքի ստույգ արձանագրումը։ Նրանք; ում վստահված է արձանագրություն կազմելը, հակիրճության համար երբեմն ընդհանուր գծերով են տալիս զեկուցման և ելույթների բովանդակությունը։ Այդպիսի գրանցումներից դժվար է պարզել, թե կոնկրետ ինչ են ասել հռետորները։ Երբեմն էլ պատահում են փաստերի աղավաղումներ արձանագրություններում, քննադատության սքողում։ Արձանագրությունը կարևոր պարտիական փաստաթուղթ է և այն կազմելիս պահանջվում է մեծ պատասխանատվություն։ Արձանագրությունը պետք է կազմել այնպես, որ պարզ լինի, թե ինչպես է անցել ժողովը, ինչպիսի առաջարկություններ, քննադատական դիտողություններ են արվել, ինչպես է մշակվել կոլեկտիվ տեսակետը։

## ՈՐՈՇՈՒՄԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՈՒՂԵՑՈՒՅՑ Է

Վերևում արդեն ասվեց, որ որոշման նախագիծը, նայած քննարկվող հարցին, կարող է պատրաստվել նախապես։ Ո՞վ պետք է դրանով զբաղվի։ Լավ չէ այն քարտուղարը, ով ամեն ինչ իր վրա է վերցնում։ Նրա համար դժվար է միայնակ հաշվի առնել բոլոր փաստարկները, կարծիքները, հանձնարարականները։ Մի կազմակերպությունում զեկուցմամբ հանդես է եկել ձեռնարկության դիրեկտորը։ Հարցի քննությունն ավարտվելուց հետո պարզվել է, որ որոշման նախագիծը պատրաստ չէ։ Սկսվել է վեճը։ Պարտկազմակերպության քարտուղարը տեղն ու տեղը հայտարարել է, թե դա զեկուցողի պարտականությունն է, որովհետև նա բոլոր նյութերն ունեցել է, վերլուծել է դրությունը և, ելնելով դրանից, խնդիրներ է առաջադրել, իսկ զեկուցողը որոշման նախագծի պատրաստման ամբողջ պատասխանատվությունը բարդել է պարտկազմակերպության քարտուղարի վրա։ Եվ ահա ժողովում բորբոքվել է մի վեճ, որը կոմունիստներին շեղել է գործի էությունից, տարակուսանք է սերմանել ժողովի նպատակահարմարության մասին։

Իսկ ով պետք է պատրաստի որոշման նախագիծը։ Շատ պարտկազմակերպություններ այդ աշխատանքը հանձնարարում են մի խումբ կոմունիստների, որոնք խնամքով ուսումնասիրում են ժողովի քննարկմանը դրված պրոբլեմը, զեկուցողի հետ միասին միջոցառումներ են մշակում այդ պրոբլեմը գործնականորեն լուծելու համար։ Ժողովի ընթացքում նախագիծը ճշտվում է, լրացվում՝ արված առաջարկություններին և դիտողություններին համապատասխան։ Այսպիսով, որոշումը կոլեկտիվ փորձի, կոլեկտիվ մտքի արդյունք է։

Հասկանալի է, միշտ չէ, որ անհրաժեշտ է լինում նախապես կազմել որոշման նախագիծը։ Երբեմն կարծիքներ փոխանակելը, կոմունիստների կոնկրետ առաջարկությունները բավական են, որպեսզի դրանց հիման վրա ժողովի ընթացքում մշակվի համառոտ որոշում։ Որոշ դեպքերում ընդունվում է ծավալուն բանաձև՝ բաղկացած երկու մասից։ Առաջին մասը բովանդակում է դրության վերլուծությունը, գնահատությունը (արձանագրական մաս), երկրորդ մասում որոշվում են խնդիրները։ Իսկ երբեմն էլ բավական է սոսկ միջոցառումների թվարկումը։ Կարևոր է, որ որոշումը լինի կոնկրետ, գործարար, այս կամ այն կետի կատարումը դրվի որոշակի անձանց վրա, սահմանվեն կատարման ժամկետները։ Վատ է, երբ որոշումը բովանդակում է միայն ընդհանուր խոսքեր, ինչպես՝ «ուժեղացնել», «վեր հանել», «խորացնել», «բարձրացնել» և

այլն։ Դժվար է այդպիսի որոշումը ստուգել, անհատական պատասխանատվություն սահմանել դրա կատարման համար, իսկ դա կոմունիստների մոտ սխալ վերաբերմունք է դաստիարակում որոշման նկատմամբ։ Սկսում են դրանք դիտել որպես մի հասարակ ձևականություն։ Մինչդեռ ամեն ոք պետք է տեսնի որոշման անհրաժեշտությունը, կարևորությունը և գործնական օգուտը։

Պարտբյուրոն, պարտկոմը, պարտկազմակերպության քարտուղարը վերահսկողություն են կազմակերպում որոշման կատարման նկատմամբ։ Նրանք պարտավոր են սիստեմատիկաբար ինֆորմացիա տալ կոմունիստներին, թե ինչպես են կենսագործվում նախկինում ընդունված որոշումները։ Այդպիսի ինֆորմացիա է անցկացվում շատ պարտկազմակերպություններում։ Դնեպրոպետրովսկի մամլակների գործարանի պողպատաձուլական արտադրամասի պարտկազմակերպության քարտուղարի տեղակալ Օնիշչենկոն պատմում է, թե հաշվետու-վերընտրական ժողովում կոմունիստների առաջարկությունների կատարման վերահսկողությունը ինչպիսի դրական արդյունք է տվել արտադրական և հասարակական կյանքում նրանց ակտիվությունը բարձրացնելու ուղղությամբ։ Այդ մասին է գրում նաև Կիրգիզիայի Ջալալ-Աբադի շինմոնտաժային վարչության պարտբյուրոյի քարտուղար ընկ. Պետրովը։ Այն պահից, երբ պարտբյուրոն սկսել է պարբերաբար ինֆորմացիա տալ կոմունիստներին այն մասին, թե ինչպես են կենսագործվում նախկինում ընդունված որոշումները, ներպարտիական աշխատանքի մակարդակը զգալիորեն բարձրացել է։

Քննարկման մասնակից ընկ. Մալինինը (Կազան) առաջարկում է պարտժողովի որոշումների կատարման հսկողությունը դնել պարտիական-պետական վերահսկողության մարմիններին աջակցող խմբերի վրա։ Ուրիշ ընկերներ արտահայտվում են հանուն այն բանի, որ պարտկոմներին և բյուրոներին առընթեր ստեղծվեն հատուկ հանձնաժողովներ՝ ընդունված որոշումների ստուգման նպատակով։ Այդպիսի նամակների հեղինակների կարծիքով դա կբարձրացնի կատարողների պատասխանատվությունը, որոշումներն ավելի գործուն կդարձնի։ Կարելի՞ է արդյոք համաձայնել այդպիսի առաջարկություններին։ Կարծում ենք՝ չի կարելի։ Կատարման հսկողությունը դնել ինչ-որ ինքնուրույն խմբերի, հանձնաժողովների վրա, նշանակում է կատարողական մարմիններին՝ բյուրոյին, պարտկոմին զրկել նրանց գլխավոր խնդրից։ Մինչդեռ նրանց համար գլխավորը կատարման կազմակերպումն ու ստուգումն է։ Իսկ այդ աշխատանքում ներգրավել կարելի է ամեն մի կոմունիստի։

***

Ժողովների հաջողությունը մեծ չափով կախված է պարտկազմակերպությունների նկատմամբ պարտիայի քաղկոմների և շրջկոմների ղեկավարությունից։ Նրանք պարտավոր են, ինչպես դա ընդգծվում էր Կենտրոնական կոմիտեի 1932 թվականի օգոստոսի 7-ի որոշման մեջ, ապահովել խնամքով կատարված նախապատրաստական աշխատանք ժողովների անցկացման համար (ծանուցումը, հաճախումը, զեկուցումների որակը, օրակարգը և այլն), ապահովել բոլշևիկյան ինքնաքննադատության ծավալումը, ներպարտիական դեմոկրատիան և սիստեմատիկ վերահսկողությունը՝ ընդունված որոշումների կատարման նկատմամբ։

Հայտնի է, որ ընտրովի մարմինների թարմացման կապակցությամբ



սկզբնական պարտկազմակերպությունների ղեկավար են դառնում շատ կոմունիստներ, որոնք պարտիական աշխատանքի փորձ չունեն։ Նրանց անհրաժեշտ գիտելիքներով զինելը պարտիայի շրջկոմների և քաղկոմների ուղղակի պարտքն է։ Այդ նպատակով կազմակերպվում են սեմինարներ, հրահանգչական խորհրդակցություններ և այլն։ Բայց գլխավորը օգնությունն է տեղում։ Կոմիտեները կոչված են սորին պարտիական աշխատողներին սովորեցնելու՝ թե ինչպես պետք է լավ նախապատրաստել ու անցկացնել ժողովները, կազմակերպել որոշումների կատարումը, հասնել դրանց բարձր արդյունավետության։

Վերջին ժամանակներս պարտիայի մի շարք շրջկոմների ու քաղկոմների պլենումներում, մարզկոմների խորհրդակցություններում քննարկվել են պարտիական ժողովների անցկացման պրակտիկայի հետ կապված հարցեր։ Այդ ամենը, անտարակույս, կնպաստի ժողովների դերի բարձրացմանը կոմունիստների կյանքում։

Անդադրում հոգ տանելով ներպարտիական աշխատանքի մակարդակը բարձրացնելու մասին, սկզբնական պարտիական կազմակերպությունները կոչված են, ինչպես դա պահանջում են ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումները, է՛լ ավելի ուժեղացնելու իրենց ներգործությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա։

«Партийная жизнь» № 8, 1965 г.

---

## ԴՐԱԿԱՆ ԳՈՐԾԸ ԱՌԱՋԱՎՈՐԻ ԳՐԱՎԱԿԱՆՆ Է

Ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում զգալի ներդրում են կատարում Աբովյանի շրջանի՝ պարտիայի մոտ երկու հազար անդամներն ու թեկնածուները։ Նրանց ճնշող մեծամասնությունն աշխատում է արտադրության մեջ, մասնակցում նյութական բարիքների ստեղծմանը։ Այսպես, կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական պարտիական կազմակերպություններում հաշվառման մեջ գտնվող 814 մարդուց արտադրության մեջ աշխատում են 523-ը. կոմունիստների մի զգալի մասն էլ մասնագետներ են, պատասխանատու և ղեկավար աշխատողներ։

Կարելի է բազմաթիվ օրինակներով ցույց տալ, թե ինչպես կոմունիստներն արդարացնում են իրենց առաջատար դերը։ Արամուս, Մայակովսկի, Նոր գյուղ, Ելղովան, Ակունք, Գյամրեզ, Հրազդան գյուղերի կոլտնտեսությունների սկզբնական պարտիական կազմակերպությունների անդամների ու թեկնածուների բարեխիղճ աշխատանքի շնորհիվ վերջին տարիներս առաջխաղացում է նկատվում երբեմնի ետ մնացող այդ տնտեսություններում։ Շնորհիվ այդ տնտեսությունների ղեկավարների բանիմաց աշխատանքի, այսօր փոխվել է այդ տնտեսությունների վիճակը, ավելացել են նրանց դրամական միջոցները, աճել կոլտնտեսականների աշխօրերի վճարը։

Արամուսի կոլտնտեսային սկզբնական պարտկազմակերպությունը բաղկացած է 42 անդամ-թեկնածուներից. գրեթե բոլորն էլ աշխատում են նյութական բարիքների արտադրության տեղամասերում։ Վերջին տարիներին կո-

մունիստների և կոլտնտեսականների ջանքերով տնտեսությունը բռնել է վերելքի ուղին. ընդլայնվել է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, բարձրացել կոլտնտեսականների բարեկեցությունը։ Տնտեսությունը միայն ծխախոտագործությունից անցյալ տարի ստացավ 298 հազար ռուբլի դրամական եկամուտ, յուրաքանչյուր հեկտարից ապահովելով 25 ցենտներ բարձրորակ հումք։ Լավն այստեղ այն է, որ կոմունիստները գտնում են նորանոր ռեզերվներ, բացահայտում և վերացնում են թերությունները։

Կոմունիստ, բրիգադավար Հմայակ Վարդանյանի ղեկավարած բրիգադան, 13 հեկտար կազմող ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից ստացավ 27 ցենտներ բարձրորակ հումք. նա խոստացել է 1965 թվականին հեկտարի միջին բերքատվությունը հասցնել 30 ցենտների։ Կոմունիստ բրիգադավարին գյուղում սիրում և հարգում են բոլորը։ Ազնիվ, օրինակելի աշխատանքով այստեղ աչքի են ընկնում նաև պարտիական կազմակերպության անդամներ Սոնյա Լալայանը, Քնարիկ Վարդանյանը, Սերյոժա Հովակիմյանը, Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ Ջասենիկ Մարտիրոսյանը և շատ ուրիշներ։

Չի կարելի գովեստով չխոսել նաև կոմունիստ Աղասի Հայրապետյանի մասին, որը երկար տարիներ ղեկավարում է Գյամրեզ գյուղի կոլտնտեսության ծխախոտագործական օղակը։ Նա տիրապետում է իր գործին, մշտապես գերակատարում առաջադրանքները։ Նրանից շատ բան են սովորում երիտասարդները։ Հայրապետյանի ղեկավարած օղակը 1964 թվականին հեկտարից ստացավ 28 ցենտներ ծխախոտի բարձրորակ հումք և օղակավարը պարգևատրվեց Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի պատվոգրով։

Նման օրինակները եզակի չեն։ Շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատող կոմունիստների ճնշող մեծամասնությունը, բարձր պահելով կոմունիստի կոչումը, արտադրական առաջադրանքները կատարելու հետ միասին, իրենց օրինակով վարակում են անպարտիականներին, նպաստում ընդհանուր վերելքին։

Իրենց կանոնադրական պարտականությունները հաջողությամբ են կատարում նաև արդյունաբերական ձեռնարկություններում աշխատող կոմունիստները։ Պլանների կատարման և թողարկվող արտադրանքի որակի բարելավման ուղղությամբ շոշափելի արդյունքի է հասել Նոր Հաճընի տեխնիկական ճշգրիտ քարերի գործարանը, որի սկզբնական պարտիական կազմակերպության 78 անդամ-թեկնածուներից 60-նն աշխատում են արտադրության մեջ։ Կոմունիստների ակտիվ ու անմիջական մասնակցությամբ 1964 թվականի տարեկան պլանը կոլեկտիվը կատարեց ժամկետից շուտ։ Պետական պլանները գերակատարվել են նաև այս տարվա անցած ամիսներին։ Պարտիայի անդամները, մեխանիկական ցեխի փականագործներ Սուրիկ Էլբակյանի և Սերյոժա Ասատրյանի պատրաստած հաստոցները լայն ճանաչում են գտել Սովետական Միության շատ քաղաքներում։ Գործարանի 10 բրիգադա արժանացել են կոմունիստական աշխատանքի կոչման։ Այդ բարձր կոչմանն արժանանալու համար են պայքարում 15 բրիգադա ևս։ Մտնելով սոցիալիստական մրցության մեջ, գործարանի կոլեկտիվը պարտավորվել է 1965 թվականի պլանային առաջադրանքները գերակատարել և պետությանը տալ 100 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։

Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք են դրսևորում



և լավ օրինակ են տալիս նաև Արզնիի ապակե տարաների գործարանի կոմունիստները։ Ձեռնարկությունը 1964 թ. դեկտեմբերի 20-ին կատարեց տարվա առաջադրանքները, պլանից ավելի արտադրելով մոտ մեկ ու կես միլիոն շիշ։ Պարտիայի անդամ Հայկազ Բաբախանյանը պլանով նախատեսված 11 միլիոն 600 հազարի փոխարեն արտադրեց 12 միլիոն 138 հազար շիշ։ Կոմունիստներ Կ. Մինասյանը, Ի. Վենյամինովը և շատ ուրիշներ օրինակելի վարքագծի ու բարձր ցուցանիշների համար արժանացել են կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման։ Պարտկազմակերպություններում շատ են այն կոմունիստները, որ պայքարելով կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման ու առաջավոր փորձի տարածման լավագույն օրինակ են ծառայում։

Սակայն, դժբախտաբար մեր պարտիայի շարքերում դեռևս կան այնպիսի ընկերներ, որոնք չեն արդարացնում կոմունիստի կոչումը, իրենց գործունեությամբ ու վարքագծով նույնիսկ արատավորում են այն։ Կոլտնտեսություններ, արդյունաբերական, շինարարական օբյեկտներ ղեկավարող որոշ կոմունիստներ անպատասխանատու վերաբերմունք են հանդես բերում հանձնարարված գործի նկատմամբ, հաճախ, նույնիսկ ձախողում են այն։

Գեղարդ գյուղի կոլտնտեսականները երկու տարի առաջ կոլտնտեսության վարչության նախագահ ընտրեցին պարտիայի անդամ Ալբերտ Թառոյանին։ Այստեղ բացակայում էր հանրային ունեցվածքի նկատմամբ հոգատարությունը, տնտեսության ունեցվածքը շռայլում ու յուրացնում էին առանձին մարդիկ։ Թառոյանը ևս ձեռք մեկնեց կոլտնտեսության ունեցվածքին։ Բնական է, որ կոլտնտեսականները նման ղեկավարին երկար հանդուրժել չէին կարող և այս տարվա հաշվետու ընտրական ժողովում, իրավամբ քննադատելով նրա վարքագիծը, ազատեցին կոլտնտեսության վարչության նախագահի պարտականություններից։ Նախագահի նման վարքագիծն ազդել էր նաև որոշ կոմունիստների վրա։ Պարտկազմակերպության մի քանի անդամներ տարբեր զանցանքների ու հանցանքների համար ենթարկվել են պատասխանատվության։ Պարտկազմակերպությունն այստեղ անբավարար էր աշխատում, կոմունիստներից չէր պահանջում խստորեն պահպանել կանոնադրության սկզբունքները, հաշտվում էր թերությունների ու սխալների հետ, չէր պայքարում կարգապահության ամրապնդման համար։ Պարտիայի շրջանային կոմիտեն որոշ միջոցառումներ է կիրառել Գեղարդի կոլտնտեսության պարտկազմակերպությունն այդ վիճակից դուրս բերելու համար։ Սակայն վճռական դերն այստեղ պատկանում է գյուղի կոմունիստներին. նրանք պարտավոր են իրենց անձնվեր աշխատանքով օրինակ դառնալ մյուսներին, արագորեն բարձրացնել տնտեսությունը։

Դրությունը մխիթարական չէ նաև Սևաբերդ գյուղի կոլտնտեսության պարտկազմակերպությունում, որտեղ 26 կոմունիստներից արտադրության մեջ աշխատում են միայն 12-ը։ Կոլտնտեսության նախագահ Հ. Աբրահամյանը և սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղար Գ. Աճեմյանը ի վիճակի չէին առաջ մղելու գյուղի տնտեսությունը։ Պարտիական շրջանային կոմիտեի նախաձեռնությամբ ընտրված նոր ղեկավարությունը ի վիճակի կլինի բարելավելու Սևաբերդի կոլտնտեսության վիճակը։

Վերջերս պարտիայի շրջանային կոմիտեն քննեց նաև այն հարցը, թե Քյուլիջայի սովխոզի սկզբնական պարտկազմակերպությունն ինչպիսի աշխատանք

է կատարում տնտեսության ետ մնալը հաղթահարելու ուղղությամբ։ Նախօրոք կատարված ուսումնասիրությունները և հարցի քննարկումը ցույց տվին, որ պարտիական կազմակերպությունը և նրա բյուրոն (քարտուղար Ն. Հովհաննիսյան) անբավարար են իրականացրել վերահսկողության ֆունկցիան սովխոզի դիրեկցիայի գործունեության նկատմամբ, դրանով իսկ չեն կատարել պարտիայի կանոնադրության կարևոր պահանջներից մեկը։ Պարտկազմակերպության և սովխոզի նախկին ղեկավարության վատ աշխատանքի հետևանքով տնտեսությունը ներկայումս կանգնած է ֆինանսական մեծ դժվարությունների առաջ։ Նման վիճակը բացատրվում է հանձնարարված գործի նկատմամբ ղեկավար կադրերի անտարբեր վերաբերմունքով, թերությունների դեմ պայքար չծավալելու, մարդկանց սխալների կողքով լռությամբ անցնելու, տնտեսությունում պատշաճ կարգ ու կանոն ստեղծելու ուղղությամբ պարտկազմակերպության կատարած վատ աշխատանքով։

ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումը բացահայտեց գյուղատնտեսության ղեկավարման լուրջ թերությունները, նշեց դրանց վերացման ուղիները։ ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումների հաջող կենսագործումը առաջին հերթին կախված է գյուղական պարտիական կազմակերպությունների, կոլտնտեսությունների, սովխոզների ղեկավարների, բոլոր կոմունիստների եռանդուն աշխատանքից, մասսաներին կազմակերպելու նրանց հմտությունից։

ՍՄԿՊ Կանոնադրությունը պարտիայի անդամներին պարտավորեցնում է անշեղորեն կիրառել կադրերին ըստ նրանց քաղաքական ու գործարար հատկանիշների ընտրելու պարտիայի գիծը և անհաշտ լինել կադրերի ընտրության ու տեղաբաշխման լենինյան սկզբունքների խախտումների հանդեպ։ Առաջնորդվելով այդ պահանջով, Աբովյանի պարտշրջկոմը և սկզբնական կազմակերպությունները գործնական քայլերի են դիմում այդ գործում տեղ գտած թերությունները վերացնելու, մարդկանց՝ ըստ նրանց քաղաքական ու գործնական հատկանիշների առաջ քաշելու սկզբունքի կիրառման ուղղությամբ։ Սակայն այս գործում դեռևս կան թերություններ։ Ջառ, Կապուտան, Արամուս գյուղերի կոլտնտեսություններում, Աբովյանշին տրեստում պարտիական ղեկավարները հաճախ թողտվություն են հանդես բերում զանցանք գործող աշխատողների և այն անձանց նկատմամբ, ովքեր կադրերն ընտրելիս ելնում են անձնական հավատարմության ու մոտիկության տեսանկյունից, մի բան, որի հետ երբեք հաշտվել չի կարելի։

Պարտիական կազմակերպությունը պետք է լրջորեն զբաղվի ոչ միայն յուրաքանչյուր կոմունիստի գործունեությամբ, այլև կյանքով, հետևի թե աշխատանքից դուրս ինչո՞վ է զբաղվում նա, ինչպե՞ս է մասնակցում հասարակական աշխատանքներին, ի՞նչ է անում իր երեխաների դաստիարակությունը պատշաճ ձևով կազմակերպելու համար։ Կանոնադրության այս պահանջը, սակայն, լավ չի կիրառվում Գյառնիի սովխոզում, որի ղեկավարությունը դեռ չի կարողացել բոլոր կոմունիստներին ներգրավել արտադրության մեջ, գլխավորել հանրային սեփականության յուրացման դեմ մղվող պայքարը։

Պարտիայի առաջադրած խնդիրների լուծումը առաջին հերթին պայմանավորված է նրանով, թե շրջանի պարտիական կազմակերպությունները և բոլոր կոմունիստները ինչպես կկատարեն ՍՄԿՊ Կանոնադրությամբ սահմանված պարտականությունները։ Շրջկոմի պլենումը վերջերս քննարկեց այդ հարցը։ Նշելով այդ ուղղությամբ դրական օրինակները և բացահայտելով թերությունները, պլենումը բոլոր կոմունիստներին պարտավորեցրեց անշեղորեն կատարել ՍՄԿՊ կանոնադրությունը։



Կոմունիստի առաջավոր լինելու գրավականը՝ նրա ամբողջ դրական գործունեությունն է, տնտեսության մեջ և կյանքի բոլոր ասպարեզներում ցուցաբերած նրա անձնական օրինակը։

Վ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
ՀԿՊ Աբովյանի շրջկոմի քարտուղար

# ՕՐԵՐԻՑ ՄԵԿԸ

Խաչիկ Սուքիասյանը նախաճաշելուց հետո դուրս եկավ տնից և գնաց աշխատանքի. 15—20 րոպեից ֆաբրիկայում էր, որի պարտիական կոմիտեի քարտուղարն է նա։

Եվ այդպես ամեն օր...

Լենինականի գուլպայի ֆաբրիկան ունի մի քանի հազար աշխատող, օրական թողարկում է 125—130 հազար զույգ տարբեր տեսակի գուլպա։ Միայն պարտիական շինարարությանը քաջածանոթ լինելը և գաղափարական բարձր մակարդակը չեն կարող տալ ճշգրիտ լուծումներ, եթե ղեկավարը նաև հոգեբան չէ, լավ չի ճանաչում իր միջավայրի մարդկանց, չգիտե նրանց տրամադրությունները։ Իսկ արտադրական որքա՜ն բարդ ու կնճռոտ խնդիրներ կան... Թվարկելը հեշտ է։ Երբեմն օրը վերջանում է, և զգում ես, որ քսանչորս ժամն էլ քիչ է։

— Ճիշտ է, մարդը տերը պետք է լինի իր կյանքի յուրաքանչյուր րոպեի, բայց դե կյանքը լի է և անակնկալներով,— ժպտում է պարտիական կոմիտեի քարտուղար Խաչիկ Սուքիասյանը, ու ես հիշում եմ մեր համատեղ աշխատանքը պարտիայի քաղաքային կոմիտեում։

Այն ժամանակ էլ նա ապրում էր իր աշխատանքով։ Մի րոպե պարապ չէիր տեսնի։ Փորձառու մարդ է. դեռևս ուսանողական նստարանից եղել է կոմերիտական աշխատող, գործի մեջ է հմտացել ու լավ գիտե Լենինականը։ Ընտրելով նրան քաղաքի խոշոր ձեռնարկություններից մեկի պարտիական կոմիտեի քարտուղար, ամենքն էլ համոզված էին, որ չեն սխալվել։

...Շրջագայելով բոլոր ցեխերը, նա բարձրացավ պարտիական կոմիտե, մի անգամ ևս աչքի անցկացնելու օրվա պլանը։ Դեռ ժամը 9-ը չկար։ «Այսօր հիմնականում պետք է զբաղվել ներկման ցեխի հարցով,—մտածեց Խաչիկը։ Գիշերը այստեղ խախտվել է ներկվածքի ռեժիմը, անորակ արտադրանք է տրվել։ Գիշերային հերթում քիչ են կոմունիստները. պետք է խոսել Հակոբի հետ...»։ Հնչեց հեռախոսի զանգը։

— Բարի լույս... Կոմիտեի նիստը ուղիղ երեքն անց կեսին է...։

Դուռը բացվեց, ու ներս մտավ կոմունիստ Վոլոդյա Դիլանյանը։ Ապա՝ մի քանի ուրիշ ընկերներ։ Սկսվեց աշխատանքային առօրյան։ Եկավ ցրիչը, օրվա փոստի հետ բերելով հաստ մի փաթեթ։

Ղազախստանի Տալդի-Կուրգան քաղաքից էր, գրում էր Վ. Ն. Վիտկովսկին։ Զայրույթից կարմրեց...։ Ի՞նչ անել, ինչի՞ց սկսել։ Պետք է գնալ ցեխ, բայց ներս մտան ագիտատորները։ Զրուցեց նրանց հետ առօրյա խնդիրների մասին և ապա՝

— Ահա մեր այսօրվա փոստը,— և բացեց ու պարզեց կանացի առանձգական գուլպաները։— Ընկերնե՛ր, մեր ագիտացիան պետք է բևեռել որակի վրա, պայքար ծավալել խոտանի դեմ։

Ապա կանչեց կոտոն ցեխի պետ, կոմունիստ Կ. Դավթյանին։

— Ես երեկ ձեր ցեխում էի։ Առավոտյան էլ եղա։ Կարծես պլանի կատարումը լավ է, բայց, ահա՛, կարդա այս նամակը։ Պետք է լավ աշխատեք, թե չէ միայն խոստումներով կերակրել չի կարելի։ Վաղը կհրավիրես ցեխի կոլեկտիվի ընդհանուր ժողով՝ բոլոր հերթերում առանձին-առանձին կքննենք այս նամակը։

— Ախր, ընկեր Սուքիասյան...

— Ոչ մի ախր։ Ժողովուրդը ախր-մախր չի ընդունում։ Մեզնից որակով ու գեղեցիկ գուլպա են ուզում։ Իսկ մենք դեռևս լավ չենք աշխատում։

Դավթյանը զգաց, որ քրտնում է, ճիշտ ու տեղին էր դիտողությունը։

Ապա կոմիտեի քարտուղարը հանդիպեց գլխավոր ինժեներին՝ Ռուֆա Մացակյանին ու խնդրեց միասին գնալ ցեխերը։ Ես, որ մինչ այդ դիտողի դերում էի, հարցրի ընկ. Մացակյանին, թե մատակարարման գործն ինչպե՞ս է։

— Երեկ խաչիկ Գեորգիևիչի հետ միասին մի գրություն ուղարկեցինք ժողտնտխորհի մեր վարչությանը։ Համաչափություն չկա, անկանոն մատակարարումը շատ է խանգարում մեր գործերին...

— Դա էլ կհարթենք։ Մի՛ մտածեք, ընկ. Մացակյան, կպայքարենք ու կհասնենք։ Թելն ի՞նչ է, որ չունենանք։ Քիմիան կօգնի,— պատասխանեց Սուքիասյանը։

Շրջագայությունը ֆաբրիկայում տևեց ավելի քան երկու ժամ։ Ուրախացավ, որ բանվորական ճաշարանում անկարգություն անող գուլպայագործներն արդեն լավ են պահում իրենց. մեղմ վերաբերմունքն ավելի շատ է ազդել նրանց վրա, քան խստությունը։ Միշտ և բոլոր պարագաներում պետք է հավատալ մարդուն։

Ո՞ր մեկն ասես։ Ճիշտ է, ինքն ամուսնացած չէ, բայց վարպետորեն է կողմնորոշվում կենցաղի նուրբ հարցերում։ Եթե այդպես չլիներ, ապա կոմունիստ ամուսիններ Ա.-ն և Ս.ն հիմա բաժանված կլինեին, լքած հինգ երեխաներին։ Նրանց տունը ֆաբկոմի նախագահի հետ այցելելն էլ օգնեց, նպատակային էին նաև նյութական օժանդակությունը, զրույցը սկեսուրի հետ։ Եվ Այսօր զգաց իր աչքերին ուղղված այդ կնոջ երախտապարտ հայացքը։ Ցեխի պետը հուշեց, որ չնայած հաշտվել են, բայց և այնպես Ա.-ն դեռևս խմում է։ Հը՞մ, պիտի խոսել...

Շուտով պետք է սկսվեր պարտիական կոմիտեի նիստը։ Քննելու էին թողարկվող արտադրանքի որակի վերաբերյալ 1964 թվականի օգոստոսի ընդհանուր ժողովի և 1964 թվականի փետրվարին կոմիտեի ընդունած որոշումների կատարման ընթացքը։ Հարկ կլինի ոմանց պատժել անպատասխանատվության համար։ Դեռևս հունվարի 25-ին էլ անդրադարձել են Պատրաստի արտադրանքի իրացման վիճակին, բացահայտել այնպիսի թերություններ, որոնք արտադրանքի ցածր որակի պատճառն են։



Վերջապես նա աշխատասենյակում է, իր մտքերի հետ մենակ, ինքնամփոփ։ Գուլպայի ֆաբրիկայի կոլեկտիվը լարել է իր ուժերը, պայքարի ելել հանուն արտադրանքի բարձր որակի։ Ամեն գնով գերազանցել առաջավոր կապիտալիստական երկրների արտադրանքի որակը, ահա ֆաբրիկայի նշանաբանը։

Տասնհինգ հոգի ելույթ ունեցան պարտիական կոմիտեի նիստում։ Կոմիտեն նշեց, որ ինչպես հարկն է չեն կատարվում ընդունված որոշումները։ Սկզբնական պարտիական կազմակերպությունները, որոնք շատ անելիքներ ունեն, դեռևս չեն վերակառուցվել։ Հիմնական թերություններն են՝ վատ ներկվածքը, անորակ ձևավորումը, ոմանց անտարբերությունը։

— Մենք պարտավոր ենք վերացնել այդ թերությունները,— ասաց Խ. Սուքիասյանն ու նշեց դրանց վերացման համատեղ մշակված ուղիները։ Սահմանվեցին ընդունած որոշման կատարման ստուգման ժամկետներ, որոշ ընկերների տրվեցին կոնկրետ հանձնարարություններ։

Ամենքից շուտ աշխատանքի եկած պարտիական կոմիտեի քարտուղարը ամենքից ուշ տուն գնաց. տանը նրան սպասում էր ժպտադեմ մայրը։

Ձմեռվա երեկո։ Այնպես շուտ է մթնում ձմեռվա օրը, հատկապես Լենինականում։ Ճաշեց, բայց չհասցրեց մի կարգին հանգստանալ։ Երեսուն րոպեից կսկսվի կոլեկտիվիզմին, ընտանիքին, սիրոն նվիրված բանավեճային երեկոն։ Պետք է հասցնել։ Եվ նա նորից իր աշխատանքային ընկերների հետ է, ֆաբրիկայի ակումբում։

Որքա՞ն շատ բան պետք է հասցնի անել միշտ կարճ թվացող օրվա ընթացքում խաչիկ Սուքիասյանը։ Չէ որ այդ ամենի հետ մեկտեղ նա ՀԿՊ քաղաքային կոմիտեի բյուրոյի անդամ է, քաղսովետի դեպուտատ... Այո՛, այսպիսի մարդկանց է վիճակված սանձել ժամանակը։

Մ. ՄԵԼՔՈՆՅԱՆ



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՎԵՐԱՑՆԵԼ ԿԱԴՐԵՐԻ ՀՈՍՈՒՆՈՒԹՅՈՒՆԸ

*Մեր արդյունաբերության առջև դրված խնդիրների հաջող կենսագործումը զգալի չափով կապված է աշխատողների հոսունության հաղթահարման և կադրերի կայուն ջոկատ ստեղծելու հարցի հետ։ Աշխատուժի հոսունությունը բացասաբար է անդրադառնում ձեռնարկության աշխատանքների, նրա տնտեսության վրա, հնարավոր չի լինում արտադրությունն ապահովել որակյալ կադրերով, ավելանում են կադրերի հավաքագրման և նրանց ուսուցման վրա արվող ծախսերը։ Բանվորների զգալի մասը մի ձեռնարկությունից մի այլ ձեռնարկություն փոխադրվելով՝ 2 շաբաթից ավելի չի մասնակցում հասարակական արտադրության, ինչպես աշխատանքից ազատվելու նախօրյակին, այնպես էլ առաջին օրերը նոր աշխատանքի տեղում, զգալի չափով ցածր է լինում նրանց աշխատանքի արտադրողականությունը։ Եվ այդ բնական է. եթե աշխատողը որոշել է տեղափոխվել և դիմել է իրեն ազատելու համար, ապա նա չի կարող նախկին տրամադրությամբ ու ցանկությամբ աշխատել։ Իրավացի է ակադեմիկոս Ս. Գ. Ստրումիլինը, նշելով, որ աշխատանքի արտադրողականությունն զգալի չափով կախված է մարդու տրամադրությունից։ Մյուս կողմից, նոր աշխատողը սկզբնական շրջանում բավականին ժամանակ է կորցնում մինչև կարողանում է ծանոթանալ ու հարմարվել իր աշխատանքային տեղին։ Այդ ժամանակամիջոցում, իհարկե, ոչ միայն իջնում է աշխատանքի արտադրողականությունը, այլև թողարկվող արտադրանքի որակը։ Ահա թե ինչու արդյունաբերության մեջ աշխատողների մշտական ջոկատ ստեղծելու պրոբլեմն ունի հրատապ և առաջնահերթ նշանակություն։*

*Արդյունաբերության մեջ աշխատուժի տեղաշարժը անհրաժեշտ և օրինաչափ պրոցես է, որը պայմանավորված է հասարակական կյանքի օբյեկտիվ զարգացմամբ։ Ամեն տարի տասնյակ-հարյուրավոր բանվոր-ծառայողներ թոշակի անցնելով, թողնում են աշխատանքը, զգալի թվով երիտասարդներ, աշխատանքային ստաժ ձեռք բերելուց հետո, գնում են սովորելու բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում, համապատասխան տարիքի աշխատողները զորակոչվում են Սովետական բանակ, աշխատողների մի մասն էլ, արտադրության արագ զարգացման ու կատարելագործման համապատասխան, կազմակերպված ձևով տեղաբաշխվում է արդյունաբերության տարբեր ճյուղերում։ Եվ, վերջապես, աշխատանքից կարող են ազատվել նաև այլ հարգելի պատճառներով։ Հասկանալի է, որ նման պատճառներով առաջացած կադրերի տեղաշարժը չպետք է դիտել որպես հոսունություն, քանի որ այն պետական օրենքով նախատեսված, հասարակության հա-*



*մար անհրաժեշտ շարժում է։ Կադրերի հոսունություն է համարվում այն, որ աշխատավորները մի ձեռնարկությունից մյուսն են տեղափոխվում իրենց սեփական ցանկությամբ կամ էլ գործից ազատվում են աշխատանքային ու արտադրական կարգապահության խախտման պատճառով։ Եթե հնարավոր չէ կանխել կադրերի բնական շարժումը, ապա կադրերի հոսունության վերացումը կենսական անհրաժեշտություն է, որովհետև այն վերջին տարիներս զգալի չափերի է հասել։ Բավական է ասել, որ 1964 թ. Հայկական ՍՍՌ ԺՏԽ արդյունաբերության ձեռնարկություններն են ընդունվել 45,2 հազար և ազատվել մոտ 40 հազար բանվոր. այստեղ բանվորների հոսունությունը կազմում է 25,1, այդ թվում սննդի արդյունաբերության մեջ՝ 36 տոկոս։ Բանվորների գործալքման պատճառով առաջացած աշխատաժամանակի կորուստը կազմել է 157 հազար մարդ-օր։ Այդ նշանակում է, որ ռեսպուբլիկան զրկվել է մի քանի միլիոն ռուբլու արտադրանքից։*

*Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում վերջին մեկ ու կես տարվա ընթացքում աշխատանքի են ընդունվել 3828 և ազատվել են 2522 մարդ. Ֆրեզերային հաստոցների գործարանի արդյունաբերական-արտադրական ողջ անձնակազմի գրեթե 45 տոկոսն ամեն տարի փոփոխվում է։ Նման վիճակում են նաև շատ այլ ձեռնարկություններ։ Աշխատուժի այսպիսի հոսունության հետևանքով ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ աշխատող բանվոր-ծառայողների գերակշռող մասը անընդհատ աշխատանքի քիչ ստաժ ունի։*

Անա Հայկական ՍՍՌ բանվոր-ծառայողների աշխատանքային անընդհատ ստաժը՝ տոկոսով։

| | Անընդհատ աշխատանքի ստաժ (ընդամենը) | Այդ թվում | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | | մինչև 1 տարի | 1—5 տարի | 5—15 տարի | 15—25 տարի | 28 և ավելի |
| Ժողովրդական տնտեսության մեջ . . | 100 | 13,4 | 40,5 | 33,2 | 9,4 | 3,5 |
| այդ թվում՝ արդյունաբերության . . . . . . . . | 100 | 13,5 | 41,5 | 36,6 | 6,6 | 1,8 |

*Աղյուսակի տվյալներից երևում է, որ արդյունաբերության մեջ բանվոր-ծառայողների 55 տոկոսն ունի մինչև 5, և միայն 1,8 տոկոսը՝ 25 և ավելի տարիների անընդհատ աշխատանքային ստաժ, ընդ որում միևնույն ձեռնարկությունում ունեցած ստաժը աննշան տոկոս է կազմում։ Խիստ բազմազան են աշխատուժի հոսունության պատճառները՝ նյութական և կուլտուր-կենցաղային նորմալ պայմանների բացակայություն, աշխատանքի և արտադրության ոչ ճիշտ կազմակերպում, ոչ ռիթմիկ աշխատանք, հավասար պայմաններում աշխատանքի տարբեր վարձատրություն, սեզոնային աշխատանքներ, տրանսպորտի անբավարար սպասարկում, կադրերի նկատմամբ անուշադիր վերաբերմունք և այլն։ Այդ պատճառներից հիմնականը նյութական շահագրգռվածության սկզբունքի անբավարար կիրառումն է։*

*Ձեռնարկություններում կադրերի կայուն կազմ ստեղծելու նպատակով անհրաժեշտ է նյութապես շահագրգռել աշխատողներին։ Բոլոր այլ հավասար պայմաններում որոշ արտոնություններից օգտվելու դեպքում վճռական դեր պետք է խաղա միևնույն տեղում ունեցած անընդհատ աշխատանքային ստա-*

ժը։ Համամիտ ենք այն հեղինակների հետ (տե՛ս «Экономическая газета», 1963 թ., № 1, էջ 16—18), ովքեր անհրաժեշտ են համարում միևնույն ձեռնարկությունում երկարատև աշխատանքի համար սահմանել աշխատավարձի պրոգրեսիվ հավելում և լրացուցիչ արձակուրդային օրեր։ Այս դեպքում աշխատողը շատ հազվադեպ կցանկանա զրկվել այդ բարիքներից։ Մեր կարծիքով, միևնույն տեղում աշխատելու շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով որոշ փոփոխություններ պետք է մտցնել նաև թոշակավորման կարգում։ Ինչո՞ւ չպետք է միևնույն ձեռնարկությունում 20—25 տարվա բարեխիղճ աշխատողը թոշակի գնա որոշ արտոնյալ պայմաններով։ Այսպես՝ թոշակի անցնելուց հետո, առանց իրավունքների սահմանափակման, շարունակի իր նախկին աշխատանքը, կամ օգտվի տրանսպորտի, բնակարանային, կոմունալ և այլ արտոնություններից, հանգստյան տներից... Հատկապես այսպիսի կարգ պիտի սահմանել ծանր ֆիզիկական, կյանքին վնասող արտադրության պայմաններում աշխատողների համար։

Միևնույն տեղում երկար տարիներ աշխատելու համար, բացի նյութականից մարդուն պետք է շահագրգռել նաև բարոյապես։ Օրինակ, կարելի է սահմանել «Ռեսպուբլիկայի վաստակավոր բանվոր» բարձր կոչումը և այն շնորհել 20—25 տարի միևնույն տեղում անձնվիրաբար աշխատողներին, կամ տարբեր աստիճանի շքանշաններ՝ մի ձեռնարկությունում երկարատև աշխատելու համար, սահմանել «արծաթե», «ոսկե» աշխատանքային ստաժ և հանդիսավոր կերպով մեծարել այդպիսի փառքի արժանացածներին, նրանց անունները գրանցել գործարանի պատվո գրքում և այլն։

Աշխատուժի հոսունության պատճառներից մեկն էլ դեռևս ֆիզիկական ծանր աշխատանքն է։ Այն արտադրամասերում, որտեղ ծանր ֆիզիկական աշխատանքը կապված է տրավմատիզմի (առողջությունը վտանգելու) հետ, աշխատուժի հոսունությունն ավելի մեծ է։ Օրինակ, Երևանի Կիրովի անվան գործարանի վառարանների բաժանմունքում 1964 թ. աշխատանքի են ընդունվել 150 և ազատվել 128 մարդ, որոնց մեծամասնությունը՝ դիմումի համաձայն։

Սակայն ոչ բոլոր ցեխերում է, որ ծանր աշխատանքային պայմաններն են կադրերի հոսունության պատճառը։ Նյութական շահագրգռվածության սկզբունքի ճիշտ կիրառման և բարենպաստ պայմաններ ստեղծելու դեպքում հնարավոր է ծանր աշխատանքային պայմաններում կադրերի հոսունությունը հասցնել նվազագույնի։

Կադրերի հոսունության հիմնական պատճառներից մեկն էլ կուլտուր-կենցաղային նորմալ պայմանների բացակայությունն է։ Զգալի թվով բանվորներ աշխատանքը թողնում են բնակարան չունենալու, կամ բնակարանային վատ պայմանների հետևանքով։ Երիտասարդ աշխատողներից շատ շատերը, ապրելով բանվորական հանրակացարաններում, հնարավորություն չունեն իրենց հանգիստը կազմակերպված անցկացնելու կամ ընտանիք կազմելու։ Վերջերս ՀԱՄԿԽ-ի նախագահությունը և ՀամԼԿԵՄ կենտկոմի բյուրոն, քննարկելով բանվորական հանրակացարանների հարցը, նշեցին, որ ձեռնարկությունների ղեկավարները քիչ են լինում հանրակացարաններում, անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկում բարեկեցիկ պայմաններ ստեղծելու համար։ Մինչդեռ պետք է այնպես անել, որ հանրակացարանները լավ կահավորված լինեն, ունենան կյանքի ու հանգստի համար անհրաժեշտ բոլոր պայմանները։ Անհրաժեշտ է որոշ փոփոխություններ մտցնել նաև բնակարանների բաշխման



կարգում։ Այստեղ որոշիչ դեր պետք է խաղա միևնույն տեղում ունեցած աշխատանքային ստաժը, ընդ որում չպետք է միանման մոտեցում հանդես բերել մեկ շնչին ընկնող նորմայի նկատմամբ։ Խրախուսելի միջոցառում կլինի միևնույն ձեռնարկությունում երկար տարիներ քրտնաջան աշխատած բանվորին բնակարան տալիս կիրառել որոշ արտոնյալ պայմաններ։

Բնակարանների բաշխման հարցը սերտորեն կապված է տրանսպորտի հետ։ Բայց, ցավոք, այս հանգամանքը պատշաճ ուշադրության չի արժանանում։ Բացառված չեն այնպիսի դեպքեր, երբ քաղաքի հարավային ծայրամասում աշխատողները բնակարան են ստանում հյուսիսային մասում կամ հակառակը և այն էլ աշխատանքային ժամերին խիստ անբավարար գործող տրանսպորտի ներկա պայմաններում։ Տրանսպորտի անմխիթար վիճակի հետևանքով, մինչև աշխատանքի վայրը հասնելը, մարդն արդեն հոգնում է։

Մեր կարծիքով նպատակահարմար է, որ կարևոր նշանակություն ունեցող խոշոր հիմնարկ-ձեռնարկություններին տրամադրվի մոտիկ հողամաս՝ իրենց աշխատողների համար բնակելի շենքեր կառուցելու նպատակով։ Նոր բնակարան ազատվելու դեպքում լավ կլինի այն հատկացնել մոտիկ ձեռնարկության աշխատողներին կամ տեղական սովետների միջոցով փոխանակել։

Աշխատուժի հոսունության գերակշռող մասը բաժին է ընկնում կանանց. այստեղ որոշիչ դեր են խաղում հերթափոխային աշխատանքները, երեխաներին մսուր-մանկապարտեզներում տեղավորելու խնդիրը և այլն։ Շատ բանվորուհիներ աշխատանքը թողնում են երեխաներին խնամող չունենալու պատճառով։ Կանանց դերն ու տեսակարար կշիռը գնալով ավելի է մեծանում ինչպես ամբողջ ժողովրդական տնտեսության, այնպես էլ արդյունաբերության մեջ։ Եթե 1950 թվականին արդյունաբերության մեջ կանայք կազմում էին արդյունաբերական-արտադրական անձնակազմի 36 տոկոսը, ապա 1963 թ. կազմեցին 40 տոկոսը), իսկ թեթև ու սննդի արդյունաբերության մեջ այն ավելի բարձր է։

ՍՄԿՊ ծրագրի պահանջներից ելնելով՝ պետք է բոլոր հնարավոր պայմաններն ստեղծել կանանց հանրօգուտ աշխատանքում ներգրավելու համար։ Ռեսպուբլիկայի ԺՏԽ և տեղական սովետները պետք է լուրջ ուշադրություն նվիրեն այս հարցին, ընդլայնեն մսուր-մանկապարտեզների ցանցը և խիստ վերահսկողություն սահմանեն, որպեսզի այդ ցանցում առաջին հերթին տեղավորվեն աշխատող ծնողների երեխաները, հնարավորության սահմաններում վերացվեն կանանց գիշերային հերթափոխությունները։ Ազատ ժամանակի տնտեսման նպատակով լավ կլինի, որ կանանց մեծ տեսակարար կշիռ ունեցող ձեռնարկություններում կազմակերպվի հագուստեղենի մաքրման ու լվացման կետեր, ճաշարաններում վաճառվեն խոհարարական կիսաֆաբրիկատներ և անհրաժեշտ այլ մթերքներ։ Ըստ աշխատանքի քանակի ու որակի վարձատրության սկզբունքի խախտումը ևս աշխատուժի հոսունության պատճառներից է։ Հաճախ կողք-կողքի կարելի է տեսնել հավասար պայմաններում աշխատող միևնույն պրոֆեսիայի տեր մարդկանց, որոնք կատարում են միանման աշխատանք, բայց վարձատրվում տարբեր չափով և հակառակը՝ կատարելով տարբեր աշխատանքներ, վարձատրվում են միևնույն չափով։

Հաշվարկումները ցույց են տվել, որ մեծ հոսունություն կա, հատկապես, երիտասարդության շրջանում, որոնց 90 տոկոսի տարիքը չի անցնում 20—27, իսկ աշխատանքային ստաժը՝ 3—4 տարուց։ Ժողովրդական կրթության

սիստեմների վերակառուցմանը և թոշակավորման սիստեմի բարելավմանը զուգընթաց տարեցտարի ավելանում է երիտասարդ բանվոր-ծառայողների թիվը։ Եթե ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ բանվոր-ծառայողների միջին տարիքը կազմում է 33, ապա նորաստեղծ ձեռնարկություններում այն 25-ից չի անցնում։ Երիտասարդ աշխատողները մեծ մասամբ ունեն կուլտուր-տեխնիկական բարձր մակարդակ, որոնք ցանկանում են աշխատել ու ապրել կոմունիստաբար։ Ուստի բոլոր միջոցառումները պետք է կազմակերպել նրանց պահանջմունքներին համապատասխան։

Արդյունաբերության մեջ կադրերի կայուն ջոկատ ստեղծելու գործում կարևոր նշանակություն ունի նոր կադրերի պատրաստումը և նրանց աշխատանքի տեղավորելու գործը ճիշտ կազմակերպելը։ Ռեսպուբլիկայի պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության ուսումնական հաստատությունները, ձեռնարկությունների պահանջներից ելնելով, պատրաստում են որակյալ բանվորական կադրեր, բայց ավարտելուց հետո նրանց չեն տեղավորում աշխատանքի, կամ տալիս են անհամապատասխան գործ։ Այդ է պատճառը, որ վիճվարչության 1963 թ. դեկտեմբերի 31-ի միանվագ հաշվառման տվյալներով պրոֆտեխնիկական ուսումնարանների շրջանավարտների միայն 50 տոկոսն է եղել աշխատանքի։

Դեռևս ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1962) պլենումը խնդիր դրեց վերացնել կադրերի հոսունությունը, արմատապես բարելավել նրանց աշխատանքային, կուլտուր-կենցաղային պայմանները։ Ձեռնարկության ղեկավարների սրբազան պարտքն է՝ խնամքով աճեցնել կադրերին, հասնել այն բանին, որ ձեռնարկությունը դառնա յուրաքանչյուր աշխատողի հարազատ տունը, երկրորդ ընտանիքը և ո՛չ թե աշխատողի դիմումի վրա մեխանիկորեն մակագրեն՝ «ազատել», առանց դիմելու պատճառն իմանալու։ Չպետք է մոռանալ, որ մշտական, կայուն կադրերը ձեռնարկության ոսկե ֆոնդն են։

Պետք է նշել, որ տեղական կազմակերպությունները գրեթե բոլորովին չեն լսել ու քննարկել կադրերի հոսունության հարցը, այն անուշադրության է մատնվում նույնիսկ սոցիալիստական պարտավորություններ ստանձնելիս։ Կոմունիստական աշխատանքի բարձր կոչման համար պայքարող կոլեկտիվները ևս պատշաճ ուշադրություն չեն հատկացնում կադրերի հոսունության վերացմանը, քանի որ չվողների որոշ մասը հենց այդ կոչմանն արժանացած կոլեկտիվներից է։ Յուրաքանչյուր մարդ կամ կոլեկտիվ, կրելով այդ բարձր կոչումը, պետք է ծառայի նրա կոմունիստական պահանջներին։ Այդ կապակցությամբ Վ. Ի. Լենինը նշել է,— «Պետք է ձգտել և հասնել այն բանին, ...որ ամենքը և յուրաքանչյուր ոք, ով իր ձեռնարկությունը, հիմնարկը, կամ գործը կոչում է կումունա, այդ չապացուցելով ծանր աշխատանքով և երկարատև աշխատանքի գործնական հաջողությամբ, գործի օրինակելի և իրոք կոմունիստական դրվածքով, անխնա ծաղրի ենթարկվի և նախատինքի մատնվի որպես շառլատան կամ դատարկախոս» (Լենին, Երկ, հատ. 29, էջ 530)։

Կադրերի հոսունության նկատմամբ անտարբեր վերաբերմունք են ցուցաբերում վիճակագրական կազմակերպությունները։ Դրա ապացույցն է այն, որ ժողովրդական տնտեսության, այդ թվում՝ ամբողջ արդյունաբերության մասշտաբով հաշվառում չի անցկացվում։ Հաշվառումը կատարվում է միայն ԺՏԽ-ի արդյունաբերության բանվորների վերաբերյալ, այն էլ ընդհանուր ձևով։ Ճիշտ չէ այն պրակտիկան, երբ տարբեր պատճառներով, իրենց դիմումի համաձայն



ազատվողները դասվում են սեփական կամքով ազատվածների թվին, քանի որ նրանց զգալի մասը հարկադրված է թողնում աշխատանքը։ Ձեռնարկությունները և Հայկական ՍՍՌ կենտվիճվարչությունը պետք է հանգամանորեն հաշվի առնեն սեփական ցանկությամբ ազատումների պատճառները, որը հնարավորություն կտա ճիշտ կողմնորոշվելու և միջոցառումներ մշակելու դրանց հաղթահարման համար։

Կադրերի մշտական ջոկատ ստեղծելու և աշխատուժի հոսունությունը հաղթահարելու նպատակով, մեր կարծիքով, անհրաժեշտ է յուրաքանչյուր ձեռնարկությունում կազմակերպել ներկայացուցչական հանձնաժողով՝ ազատվողների հարցը մանրակրկիտ ուսումնասիրելու համար, որը հնարավորություն կտա բացահայտելու պատճառները, չհիմնավորված ազատումները, բացատրական աշխատանքի միջոցով պարզաբանելու ազատվելու հետ կապված բացասական հետևանքները։ Այս ամենից հետո, եթե ազատվելու համար բավարար հիմքեր չկան, բայց այնուամենայնիվ աշխատողը որոշել է գնալ, որովհետև նրա համար սովորություն է դարձել տեղից տեղ չվելը, աշխատանքային գրքույկում պետք է նշել, որ «ազատվել է իր դիմումի համաձայն, կոլեկտիվի կամքին հակառակ», իսկ նոր աշխատանքի վայրում, լավ կլինի այդպիսիներին աշխատանքի ընդունելու հարցը քննարկել կոլեկտիվի ժողովում և նոր միայն աշխատանքի ընդունել։

Նպատակահարմար է նաև որոշ դիֆերենցված կարգ սահմանել աշխատանքից ազատելու ժամկետների վերաբերյալ, ասենք հատուկ կարևորություն ունեցող պրոֆեսիաների նկատմամբ ոչ թե 2 շաբաթ, այլ 1—2 ամիս և այլն։

Նոր արտադրանքի յուրացման նպատակով ձեռնարկությունը կադրեր է ուղարկում Սովետական Միության տարբեր քաղաքները՝ հատուկ վերապատրաստման. եթե վերադառնալուց հետո նրանք չեն ցանկանում շարունակել աշխատանքը, ապա դրանով մեծ վնաս են հասցնում արտադրությանը, իսկ ձեռնարկության համար դժվար է 2 շաբաթվա ընթացքում փոխարինող գտնել։ Մեր կարծիքով որոշ մարդկանց նկատմամբ պետք է օրենսդրական միջոցներ կիրառել։ Չէ որ բոլոր առումներով էլ անհանդուրժելի է, երբ աշխատողը ձեռնարկության հաշվին, արտոնյալ պայմաններով 5 տարի արտադրությունից կտրված սովորում է բուհում, իսկ ավարտելուց հետո անցնում այլ աշխատանքի, մինչև անգամ ոչ իր մասնագիտությամբ։

ՍՄԿԿ Կենտկոմի 1963 թվականի հունիսյան պլենումը հատուկ ուշադրություն հատկացնելով կադրերի հոսունության պատճառով ժողովրդական տնտեսությանը հասցված վնասին, նշեց. հարկավոր է բարձրացնել հասարակական կարծիքի դերը չվողների և շորթողների դեմ մղվող պայքարում, մարդիկ, որոնք մի ձեռնարկությունից մյուսը, մի կառույցից մյուսը չվելով արտադրության մեջ մտցնում են կազմալուծման տարր։

Թ. ՉԱԼՅԱՆ





# ԴԱՇՏԱՅԻՆ ԿԵՐԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՈՒՄԸ

Պարտիայի Կենտրոնական կոմիտեի մարտյան (1965 թ.) պլենումը նշեց, որ երկրում անասնաբուծության մթերատվության բարձրացման և անասունների գլխաքանակի ավելացման խնդրի հաջող լուծման համար անհրաժեշտ է ունենալ կերի կայուն բազա։ Սակայն մեզ մոտ դեռ քիչ է այն տնտեսությունների թիվը, որոնք կերի կայուն բազա ունեն։ Շատ տնտեսություններում կերային կուլտուրաների մշակությանը հատկացվող վարելահողերն օգտագործվում են նվազ արդյունավետությամբ։ Դրա հետևանքով 1964 թ. կոլտնտեսություններում ու սովխոզներում ցանովի բազմամյա խոտերի մեկ հեկտարի միջին բերքատվությունը կազմել է 26,4, միամյա խոտերինը՝ 20,9, սիլոսային կուլտուրաներինը՝ 96,3, կերի արմատապտուղներինը՝ 74,1 ցենտներ։

Կերարտադրության վիճակն առանձնապես ծանր է Արարատյան դաշտի տնտեսություններում, որտեղ 1958—1963 թվականներին կերի սեփական արտադրությունն ավելացել է 9,3, իսկ հանրային անասունների ու թռչունների գլխաքանակը՝ 12,0 տոկոսով։ Կերի ելքը խոշոր անասունների պայմանական մեկ գլխի հաշվով կազմել է 1240 կգ։ Այստեղ զարգացող կաթնային տավարաբուծությունը պահանջում է մեծ չափով ավելացնել հատկապես հյութալի կերի արտադրությունը, որն իր սննդարարությամբ ներկայումս կազմում է սեփական կերի միայն 28 տոկոսը։

Դեռ 1963 թվականին դաշտավայրի տնտեսություններում ամռանը գյուղի տերիտորիայում մնացել են կովերի ամբողջ գլխաքանակի 36,8 տոկոսը (10 հազ. գլ.), որոնց արոտային սեզոնում տրվել է մոտ 33 հազ. տոննա կանաչ կեր, որի համար օգտագործվել է 1400 հեկտար վարելահող։ Ահա թե ինչու այստեղ առավել մեծ չափով պետք է զարգացնել դաշտային կերարտադրությունը, որպեսզի այն ապահովի անասունների կերի պահանջը ոչ միայն ձմեռային-մսուրային, այլև ամառային արոտային շրջանում։

Ռեսպուբլիկայի տնտեսություններում ցանովի բազմամյա խոտերի ցանքատարածությունները, որոնք վճռական դեր են խաղում դաշտային կերարտադրության մեջ, 1964 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, անհիմն կերպով կրճատվեցին մոտ 33 հազար հեկտարով կամ 35 տոկոսով, իսկ միամյա խոտինը՝ 18 տոկոսով։ Ցանքատարածությունների կրճատման և բերքատվությունը նվազելու պատճառով ցանովի խոտի արտադրությունը պակասեց 32 տոկոսով։ Ցանովի խոտի ցանքատարածություններն առանձնապես մեծ չափով կրճատվեցին Անիի, Ախուրյանի, Աշտարակի, Արթիկի, Էջմիածնի և Կամոյի անվան շրջանների տնտեսություններում։

Ռեսպուբլիկայի տնտեսություններում տարեցտարի պակասում է հյութալի



կերի, հատկապես սիլոսի արտադրությունը։ Դրա պատճառն այն է, որ տնտեսություններում ցածր է սիլոսային կուլտուրաների և արմատապտուղների բերքատվությունը, իսկ բնական խոտաբույսերից քիչ սիլոս է կուտակվում։

Ցածրադիր գոտիների տնտեսություններում ջրովի հողերն անբավարար են օգտագործվում, հարկ եղածը չի արվում կերարտադրության ավելացման, եգիպտացորենի և այլ կուլտուրաների խոզանացան կատարելու, տարեկան երկու բերք ստանալու համար։ 1964 թվականին, ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում խոզանացան եգիպտացորենի ցանքատարածությունը կազմել է միայն 3860, իսկ սովխոզներում՝ 337 հեկտար։ Մինչդեռ դրա ընդարձակման հնարավորությունն զգալիորեն մեծ է ինչպես Արարատյան դաշտի ու նրան հարող նախալեռնային գոտու, այնպես էլ Հյուսիս-արևելյան ու Դարալագյազի շրջաններում։

Անբավարար է կերային կուլտուրաների, հատկապես ցանովի խոտերի սերմնաբուծության վիճակը։ Տնտեսությունների թողտվության հետևանքով վերջին տարիներին խոտասերմերի արտադրությունը ռեսպուբլիկայում կրճատվեց 2,7 անգամ, իսկ 1964 թվականին խոտասերմերի մթերման առաջադրանքը կատարվեց միայն 19,2 տոկոսով։

Դաշտային կերարտադրության ռացիոնալ կազմակերպման գործում լայն հնարավորություններ են ընձեռում ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումի մշակած միջոցառումները։ Հիմա ամեն մի կոլտնտեսություն ու սովխոզ հեշտությամբ կարող է սահմանել գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունը, անասունների գլխաքանակը և նրանց ռացիոնալ կառուցվածքը։

Ռեսպուբլիկայի տնտեսություններից պահանջվում է բարելավել խախտված ցանքաշրջանառությունները, որը հնարավորություն կտա առաջիկա հնգամյակում ցանովի բազմամյա խոտերի ցանքատարածությունը հասցնել մինչև 125, սիլոսային կուլտուրաներինը և արմատապտուղներինը՝ 48, միամյա խոտերինը՝ 10 հազար հեկտարի։

Ռեսպուբլիկայում խոտի հիմնական աղբյուր են բնական խոտհարքները, որոնք հնարավոր է հասցնել մինչև 200 հազար հեկտարի, հողային բալանսում եղած այժմյան 128 հազարի դիմաց։ Այդ կարելի է կատարել ի հաշիվ բարձր բերքատու արոտավայրերի և դուրս գրված վարելահողերի։

Կերարտադրությունը ռացիոնալ կազմակերպելու դեպքում կոլտնտեսություններն ու սովխոզները կկարողանան առաջիկայում տարեկան կուտակել 770 հազար տոննայից ոչ պակաս խոտ, որից՝ ցանովի՝ 410 հազար, մոտ մեկ միլիոն տոննա հյութալի կեր, 350 հազար տոննա ծղոտ։ Մեկ հեկտարից միջին հաշվով կարելի է ստանալ ցանովի խոտերից՝ 30, բնական խոտհարքներից՝ 18, սիլոսային կուլտուրաներից և արմատապտուղներից 200 ցենտներ բերք։ Կերի այս քանակությունը 1964 թվականին արտադրված համանման կերի համեմատությամբ, ըստ սննդարարության, կավելանա մոտ 1,7 անգամ։

Հացամթերման պակասեցումը և կայունացումը ևս տնտեսություններին հնարավորություն են տալիս նշանակալից չափով ավելացնելու հատիկային կերի արտադրությունը, հասցնելով այն միջին հաշվով 70—80 հազար տոննայի։

Կոլտնտեսություններում ու սովխոզներում կերարտադրության խնդիրը կարելի է լուծել կոմպլեքսային ձևով, այսինքն բարձր բերքատու կերային կուլ-

*տուրաների ցանքատարածությունների ընդարձակման, ոռոգման, պարարտացման, սերմնաբուծության բարելավման, արտադրական պրոցեսների առավելագույն չափով մեքենայացման, առաջավոր փորձի և գիտության նվաճումների լայն արմատավորման, կերարտադրության աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման միջոցով։*

*Յուրաքանչյուր տնտեսությունում կերարտադրության ինտենսիվացումն ունի իր որոշակի առանձնահատկություններն ու խնդիրները։ Տվյալ տնտեսությունում ու նրա առանձին հողամասերում կարելի է մշակել միայն այնպիսի կուլտուրաներ, որոնք աշխատանքի ու միջոցների նվազագույն ծախսումներով մեկ հեկտարից տալիս են առավելագույն չափով պրոտեինակերամիավոր։ Սակայն, ինչպես ցույց տվեց վերջին տարիների փորձը, ռեսպուբլիկայի շատ տնտեսություններ ցանքաշրջանառությունները փոխեցին, խոտերի ցանքատարածությունները կրճատեցին, սկսեցին ամենուրեք եգիպտացորեն մշակել, հաճախ առանց տնտեսական խոր վերլուծման ու հիմնավորման, առանց կուլտուրաների մշակության տնտեսական արդյունավետությունը բացահայտելու։ Հիշյալ հարցի կարգավորման ու այդ գործում թույլ տված սխալներից խուսափելու համար կարևոր նշանակություն ունեն տնտեսական բարձր արդյունավետ կուլտուրաների ճիշտ ընտրությունն ու մշակումը։ Այդ նպատակով կատարված հաշվարկները ցույց են տալիս, որ 3—4 տարում ռեսպուբլիկայի լեռնային շրջանների տնտեսություններում (Ուզունլար, Կալինինո, Աչաջուր, Նորաշեն, Ցանտան, Մ. Պարնի, Բազմաբերդ, Ջիթհանքով, Քուչակ, Ջառ, Նորադուզ, Վարդենիկ, Նորակերտ, Մալիշկա, Բռնակոթ, Խնձորեսկ, Դավիթ Բեկ) մեկ հեկտարից միջին հաշվով ստացվել է 4617 կգ հատիկացու եգիպտացորեն, 1726 կգ կորնգանի խոտ, 1585 կգ միամյա խոտ, 1554 կգ գարի, 1409 կգ շաքարի ճակնդեղ, 1348 կգ կերի ճակնդեղ, 989 կգ սիլոսացու եգիպտացորեն (արտահայտված պրոտեինակերամիավորներով)։ Հատիկացու եգիպտացորենից (մեկ հեկտարի հաշվով) ստացվել է 132 և կորնգանից՝ 24 ռուբլի զուտ եկամուտ։ Մինչդեռ մնացած կուլտուրաներից ստացվել է 31—189 ռուբլու սահմաններում վնաս։ Հատիկացու և սիլոսացու եգիպտացորենի բերքատվության մեծ տարբերությունը բացատրվում է նրանց մշակության ագրոտեխնիկայի, զբաղեցրած հողերի որակի ու ցանքերի օգտագործման ձևի տարբերությամբ, իսկ բազմամյա խոտերի համեմատությամբ եգիպտացորենի, ճակնդեղի արտադրության ցածր ցուցանիշները՝ վերջիններիս աշխատատարությամբ ու ցածր սննդարարությամբ։ Գործնականում այդ հանգամանքների հետ էլ հարկավոր է հաշվի նստել։*

*Այսպիսով, լեռնային տնտեսություններում, ներկայիս ագրոտեխնիկայի պայմաններում, ամենից արդյունավետ է համարվում բազմամյա թիթեռնածաղկավոր խոտերի լայն մշակությունը, քանի որ նրանք տալիս են սպիտակուցներով հարուստ, համեմատաբար բարձր բերք, բարելավում են հողի ստրուկտուրան և ունեն ցածր ինքնարժեք։ Ընդ որում թիթեռնածաղկավոր խոտերը հաջողությամբ մշակվում են սակավաուժ, անջրդի, թեքություններում ընկած հողերում, որոնք, ի դեպ, ռեսպուբլիկայում գրավում են մեծ տարածություններ և անօգտագործելի են եգիպտացորենի, ճակնդեղի ու մյուս շարահերկ կուլտուրաների մշակության համար։*

*Տարբեր կուլտուրաներ ունեն մշակության տարբեր արդյունավետություն։ Այսպես, էջմիածնի շրջանի Լենինի անվան սովխոզում հատիկացու եգիպտա-*



*ցորենի մեկ հեկտարի չորս տարվա միջին բերքը կազմել է 2954, սիլոսացու եգիպտացորենինը՝ 2412, կերի ճակնդեղինը՝ 2306, գարունը՝ 1315, իսկ առվույտինը՝ 8395 կգ պրոտեինակերամիավոր։ Արտաշատի շրջանի Այգեզարդ գյուղի կոլտնտեսությունում հատիկացու եգիպտացորենից ստացվել է 9779, սիլոսացու եգիպտացորենից՝ 3886, առվույտից՝ 9839 կգ։*

*Էջմիածնի Լենինի անվան սովխոզում հատիկացու և սիլոսացու եգիպտացորենի մեկ հեկտարի հաշվով ստացվել է 14—17, իսկ առվույտից՝ 160 ռուբլի զուտ եկամուտ։ Այգեզարդ գյուղի կոլտնտեսությունում ստացվել է՝ սիլոսացու եգիպտացորենից՝ 115, կերացու շաքարի ճակնդեղից և հատիկացու եգիպտացորենից՝ 195, առվույտից՝ 210 ռուբլի զուտ եկամուտ։ Երկու տնտեսությունում էլ կերի ճակնդեղի մեկ հեկտարի հաշվով վնասը կազմել է 50—69 ռ.։*

*Արարատյան դաշտի պայմաններում կերային կուլտուրաների ցանքատարածությունների մեկ հեկտարից միջին հաշվով ստացվել է 6237, լեռնային շրջանների տնտեսություններում՝ 1624 կգ պրոտեինակերամիավոր, զուտ եկամուտ համապատասխանորեն՝ մոտ 5 և 105 ռուբլի։*

*Այսպիսով, Արարատյան դաշտում կերային կուլտուրաներից տնտեսապես ամենից արդյունավետ է համարվում առվույտի, իսկ լեռնային շրջաններում՝ կորնգանի մշակությունը։ Սակայն այդ չի նշանակում, որ պետք է հրաժարվել մյուս արժեքավոր կուլտուրաներից. անհրաժեշտ է ճիշտ տեղաբաշխել դրանք ցանքաշրջանառության դաշտերում և մշակել բարձր ագրոտեխնիկայով։ Սպիտակի շրջանի Մեծ Պարնի գյուղի կոլտնտեսությունում գործարանային շաքարի ճակնդեղը, բարձր ագրոտեխնիկայով մշակելու շնորհիվ, կերացու շաքարի ճակնդեղի համեմատությամբ, տվել է (մեկ հեկտարի հաշվով) 5,7 անգամ ավելի արտադրանք, 4,8 անգամ ցածր ինքնարժեքով։*

*Միևնույն պայմաններում, երբ կերային կուլտուրաները մշակվում են բարձր ագրոտեխնիկայով, 1,5—2,0 անգամ բարձր բերք են տալիս, համեմատած սովորական մշակության հետ։*

*Արարատյան դաշտի առաջավոր տնտեսությունները մեկ հեկտարից ստանում են 62—75 ցենտներ եգիպտացորենի հատիկ, 520—620 ցենտներ եգիպտացորենի կանաչ մասսա, 150 ցենտներ առվույտի խոտ, 550—750 ցենտներ շաքարի կանաչ մասսա, 26 ցենտներ ոլոռի հատիկ։ Բարձր բերք են ստանում նաև լեռնային տնտեսությունները։*

*Նոյեմբերյանի կաթնանասնապահական սովխոզը վերջին տարիներին մեծ չափով ընդարձակել է եգիպտացորենի, լոբազգիների, կերացու շաքարի ճակնդեղի ցանքատարածությունները, չկրճատելով բազմամյա խոտերինը և բարձրացրել է նրանց բերքատվությունը։ Սովխոզը ամեն տարի կատարում է կերի կուտակման առաջադրանքը, որի շնորհիվ ապահովում կերի փոխանցիկ ֆոնդ։ 1964 թվականին սովխոզը կարողացավ կաթի համախառն արտադրանքը, 1958 թվականի համեմատությամբ, ավելացնել 2,7, մսինը՝ 4,3, ձվինը՝ 7,0 անգամ, ստանալով 70 հազ. ռուբլի զուտ եկամուտ։ Կայուն կերի բազայի ստեղծման նման օրինակներ կարելի է բերել Ստեփանավանի, Կալինինոյի, Մարտունու, Շամշադինի, Արտաշատի և մյուս շրջաններից։*

*Կարևոր նշանակություն ունի նաև այն, թե ինչ ձևով են օգտագործվում կերային կուլտուրաների ցանքերը։ Այսպես, ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում եգիպտացորենի չոր հատիկի և կաթնամոմային հասունության կողրերով կանաչ մասսայի մեկ հեկտարից ստացվող բերքը 2,8—3,7 անգամ բարձր*

է եգիպտացորենի նախակաթնամոմային հասունության բերքի համեմատությամբ։ Մինչդեռ եգիպտացորենի նախակաթնամոմային հասունության փուլում օգտագործվող ցանքերը կազմում են նրա ամբողջ ցանքերի կեսից ավելին, որը վկայում է հողի և միջոցների ոչ ճիշտ օգտագործման մասին։ Եգիպտացորենը հիմնականում պետք է մշակել հատիկի, մոմային ու կաթնամոմային հասունության կողրերով մասսա ստանալու համար։

Կերի արտադրությունը կարելի է ավելացնել կերային կուլտուրաների, հատկապես եգիպտացորենի ու լոբազգիների (ոլոռ, շաբդար, վիկա), եգիպտացորենի ու ճակնդեղի, առվույտի ու շաբդարի, վարսակի կամ գարու և լոբազգիների (վիկա, ոլոռ, շաբդար) խառը ցանքեր կատարելու միջոցով (ելնելով տեղի կոնկրետ պայմաններից)։ Գիտա-արտադրական փորձերը ցույց են տալիս, որ ռեսպուբլիկայում կերային կուլտուրաների նշված խառը ցանքերի դեպքում, մաքուր ցանքերի համեմատությամբ, մեկ հեկտարից ստացվող բերքը միջին հաշվով ավելանում է 1,6—1,8 անգամ և ստացվում է բարձրորակ կեր։

Արարատյան դաշտի և նախալեռնային գոտու ջրովի հողերում հեռանկարային է համարվում ոլոռի ուշ աշնանային ցանք կատարելը, որի դեպքում հաջորդ տարվա գարնան վերջերին բերքը հավաքելուց հետո, տեղը ցանում են եգիպտացորեն կամ այլ կուլտուրա և, ինտենսիվ օգտագործելով հողը, տարեկան երկու անգամ լիարժեք բերք են ստանում։

Էջմիածնի շրջանի Լենինի անվան սովխոզում եգիպտացորենը ցանել են ապրիլի 6—10-ը և, երբ բույսերը հասել են 15—20 սմ-ի, քաղհան, նոսրացում, փխրեցում և սնուցում կատարելուց հետո, ցանել են առվույտ՝ շաբդարի հետ խառը։ Ցանքսի ոռոգումը և կանաչ մասսայի հունձը կատարվել է եգիպտացորենի հետ միաժամանակ։ Տնտեսությունը 1964 թվականին այդպիսի ցանքի մեկ հեկտարի առաջին հարից ստացել է 357, երկրորդից՝ 160, երրորդից՝ 140 կամ ընդամենը 657 ցենտներ կանաչ մասսա, որը մի քանի անգամ ավելի է առվույտի մաքուր ցանքի բերքից։ Կալինինոյի, Ստեփանավանի, Կրասնոսելսկի, Ղուկասյանի և մյուս, համեմատաբար խոնավ շրջանների տնտեսություններում կարելի է լայնորեն մշակել վարսակ կամ գարի՝ լոբազգիների (վիկա, ոլոռ) հետ խառը, օգտագործելով այն խոտ կամ սիլոսային մասսա ստանալու համար։ Ըստ որում, բարձրադիր, խոնավ շրջանների տնտեսություններում նպատակահարմար է ինչպես ցանովի, այնպես էլ բնական կանաչ մասսան հիմնականում օգտագործել ոչ թե չոր խոտ, ինչպես ներկայումս է հաճախ կատարվում, այլ սիլոս պատրաստելու համար։ Խոնավությունը բացասաբար է անդրադառնում խոտի չորացման ու որակի վրա, մինչդեռ մասսայի սիլոսացման վրա այն գրեթե չի ազդում։ Մյուս կողմից սիլոսի մեջ սննդանյութերը պահպանվում են ավելի լավ, քան չոր խոտում։ Կանաչ մասսայի օգտագործման բնույթի փոխելը հնարավորություն կտա տնտեսություններին՝ ավելացնելու հյութալի կերը, որի պահանջը շատ մեծ է։

Թե ի՞նչ չափով կարելի է ինտենսիվացնել դաշտային կերարտադրությունը ռեսպուբլիկայի տարբեր գոտիներում, ցույց են տալիս հետևյալ հաշվարկները։ Այսպես, Արարատյան դաշտի տնտեսություններում նորմալ մշակության դեպքում եգիպտացորենի մեկ հեկտարից կարելի է ստանալ 50 ցենտներ հատիկ, 400 ցենտներ եգիպտացորենի, 250 ցենտներ ոլոռի, 450 ցենտներ շաբդարի, 350 ցենտներ սոյայի կանաչ մասսա, 150 ցենտներ առվույտ։ Եվ, եթե տվյալ տնտեսությունում կերային կուլտուրաների ցանքատարածությունների



մեջ եգիպտացորենը և լոբազգիները կազմեն 30, առվույտը՝ 50, կերի արմատապտուղները՝ 20 տոկոս, ապա ցանքատարածության մեկ հեկտարից միջին հաշվով կարելի է ստանալ 132 ցենտներ պրոտեինակերամիավոր կամ այժմյան ստացվածից մոտ 2 անգամ ավելի։

Այլ կերպ ասած, դաշտավայրի տնտեսություններն առանց ցանքատարածությունների ընդարձակման տարեկան կարող են ստանալ 156 հազար տոննա պրոտեինակերամիավոր, 1963 թվականի 78 հազարի դիմաց, որը կարող է լրիվ ապահովել կերի պահանջը։

Ռեսպուբլիկայի նախալեռնային ու լեռնային գոտիների ջրովի հողերում լայնորեն կարելի է մշակել առվույտ, եգիպտացորեն, միամյա լոբազգիներ, կերացու շաքարի ճակնդեղ, արևածաղիկ, իսկ անջրդի հողերում՝ կորնգան, գարի, միամյա լոբազգիներ։ Հյուսիս-արևելյան շրջանների բնական խոնավ հողերում՝ կորնգան, եգիպտացորեն, գարի, միամյա լոբազգիներ։

Նախալեռնային գոտու ջրովի հողերում, կուլտուրաների ճիշտ ընտրության ու բարձր ագրոտեխնիկայով մշակելու դեպքում, կերային կուլտուրաների մեկ հեկտար ցանքատարածությունից միջին հաշվով կարելի է ստանալ 70, իսկ նույն գոտու անջրդի հողերում՝ 28 ցենտներ, լեռնային գոտու ջրովի հողերում՝ 55, իսկ անջրդի հողերում՝ 22 ցենտներ պրոտեինակերամիավոր։ Մինչդեռ, լեռնային տնտեսություններում կերային կուլտուրաների մեկ հեկտարից ստացվել է միջին հաշվով 1624 կգ։

Տնտեսությունները հնարավորություն ունեն և պետք է կերի արտադրությունը ավելացնեն նաև կերային կուլտուրաների ցանքատարածության ընդարձակման միջոցով։ Արարատյան դաշտում այդ կարելի է կատարել մեծ տարածություններ գրավող աղուտների և ճահիճների իրացման ու բամբակի ցանքատարածությունների կրճատման հաշվին։ Լեռնային շրջաններում կերային կուլտուրաներ, հատկապես բազմամյա խոտեր, կարելի է մշակել խոպանացած ու թփակալած, ինչպես և քարքարոտ հողերի վրա, յուրացնելով դրանք։

Արարատյան դաշտի ու նրան հարող նախալեռնային գոտու, Հյուսիս-արևելյան շրջանների, Դարալագյազի և Զանգեզուրի տնտեսություններում կերային կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակման համար նպաստավոր են ջրովի հողերն ու նրանց տարեցտարի ընդարձակումը։

Կերարտադրությունն անհրաժեշտ է ավելացնել հատկապես Գորիսի, Սիսիանի և Ղափանի շրջանների տնտեսություններում, որոնք վաղ թե ուշ հրաժարվելու են ոչխարները հեռավոր ձմեռային արոտներն ուղարկելուց, նրանց կերակրումը կազմակերպելով տեղում։

Յուրաքանչյուր տնտեսություն պետք է ձգտի այնպես անել, որ կերարտադրության տեմպը գերազանցի անասունների գլխաքանակի ու նրանց մթերատվության աճին։ Անասնաբուծության արտադրության ծավալի ու բնույթի փոփոխման հետ մեկտեղ, պահանջվում է փոխել կերարտադրության ծավալն ու բնույթը։ Անհրաժեշտ է կազմակերպել կանաչ կոնվեյեր, այն հաշվով, որ անասուններն անընդմեջ ապահովված լինեն հյութալի կերով։

Կերարտադրության ինտենսիվացումը հնարավորություն կտա տնտեսություններին՝ չափավորելու պետական թանկարժեք, գնովի կերի օգտագործումը, որը կարող է կազմել կերային բալանսի մոտ 15—20 տոկոսը։

Անասնաբուծության շահերը պահանջում են, որ կերի արտադրությամբ լրջորեն զբաղվեն նաև ռեսպուբլիկայի բուսաբուծական սովխոզները, որոնք

կարող են այգիների միջշարային տարածություններում ու ազատ հողամասերում մշակել առվույտ, շաբդար և այլ կուլտուրաներ, կուտակել մեծ քանակությամբ կեր: Այդպիսի հնարավորություն ունեն, օրինակ, Թալինի, Աբովյանի, Հոկտեմբերյանի, Աշտարակի, Վեդու, Նոյեմբերյանի և մյուս շրջանների շատ սովխոզներ: Սակայն պարտիայի շրջկոմները և արտադրական վարչությունները պատշաճ ուշադրություն չեն նվիրում այս կարևոր գործին:

Առաջադրված խնդիրը հաջող լուծելու, սերմերի մթերումը անթերի կատարելու համար անհրաժեշտ է ստեղծել կերային կուլտուրաների, հատկապես կորնգանի, առվույտի, շաբդարի, ոլոռի մասնագիտացված սերմնաբուծական տնտեսություններ, բարձրացնել այդ բնագավառի աշխատողների նյութական շահագրգռվածությունը:

Ռեսպուբլիկայի պետական փորձադաշտերը պետք է ծավալեն կերային կուլտուրաների սորտափորձարկումները, արտադրությանը՝ բարձրարժեք կուլտուրաներ ու դրանց մշակության արդյունավետ եղանակներ առաջադրելու նպատակով:

Հաճախ տնտեսություններում կերային կուլտուրաների մշակությունը այնպիսի պատասխանատվությամբ չի կատարվում, ինչպես տեխնիկական ու հացահատիկային կուլտուրաներինը: Հենց այդպիսի վ.. երաբերմունքի հետևանքով էլ հնարավոր չի լինում ստեղծել կերի կայուն բազա:

Կերարտադրության ավելացման գործում առաջնակարգ նշանակություն ունի արտադրական պրոցեսների, առանձնապես խոտհնձի, խոտի, ծղոտի հավաքման ու դիզման, շարահերկ կուլտուրաների մշակության առավելագույն չափով մեքենայացումը, որն այժմ հեռու է բավարար լինելուց: Դրա համար յուրաքանչյուր տնտեսություն պետք է ձեռք բերի կերահայթայթման անհրաժեշտ մեքենաներ ու գործիքներ և ապահովի դրանց անխափան ու բարձր արտադրողականությամբ օգտագործումը:

Հարկ է նշել, որ առանձին տնտեսություններ օգտվելով այն բանից, որ միայն իրենք են պլանավորում իրենց արտադրությունը, թույլ են տալիս սխալներ և քմահաճ վերաբերմունք: Նրանք պահանջից բավականին ցածր են պլանավորում կերի արտադրությունը և, բացի դրանից, թերակատարում են կերի կուտակման առաջադրանքը:

Արտադրական վարչությունները, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարները պետք է անեն հարկ եղած ամեն բան, որպեսզի յուրաքանչյուր կոլտնտեսություն ու սովխոզ ամեն տարի կարողանա կուտակել անհրաժեշտ քանակությամբ կեր:

Հ. ՂՈՒՇՉՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու



# ՔԱՋԱՐԱՆԸ ՄԵԾ ՎԵՐԵԼՔԻ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

Քաջարանի պղնձամոլիբդենային հանքավայրը, որն իր տեսակի մեջ հազվագյուտ է, հենց սկզբից իր վրա բևեռեց պարտիական, սովետական, տնտեսական ու պլանավորող օրգանների ուշադրությունը: Հայաստանի կոմպարտիայի ու կառավարության հետևողական աշխատանքի և ձեռնարկած մի շարք կարևոր միջոցների շնորհիվ երեսնական թվականներին ծավալվեցին երկրաբանական-հետախուզական աշխատանքները Զանգեզուրի շրջաններում և հայտնաբերվեցին ու հաստատվեցին Քաջարանի ու Ագարակի հանքավայրերի արդյունաբերական պաշարները:

1941 թվականի սկզբին վերադաս օրգանները որոշում ընդունեցին Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի կառուցման մասին: Մինչև տարվա կեսը կատարվեց ավելի քան 7 միլիոն ռուբլու շինարարություն, բայց պատերազմի հետևանքով ընդհատվեցին աշխատանքները: 1944 թվականին վերսկսվեց կոմբինատի շինարարությունը:

Կոմբինատի շինարարությունը մեծ թափ ստացավ 1949 թվականի առաջին եռամսյակից հետո ընկած ժամանակաշրջանում, երբ համապատասխան միջոցառումներ մշակվեցին Հայկական ՍՍՌ-ում պղնձի արդյունաբերության զարգացման համար: Այդ միջոցառումներում նախատեսվում էր ընդլայնել գունավոր մետալուրգիայի գործող ձեռնարկությունները, կառուցել Քաջարանի և Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատները. զգալի չափով ավելացնել հանքաքարի հանույթը՝ Զանգեզուրի հանքերից. Ողջի գետի վրա կառուցել Ջրախորի 1-ին և 3-րդ էլեկտրակայանները, վերակառուցել 2-րդ Ջրախորգէսը, կառուցել Քաջարան և Ագարակ էլեկտրահաղորդման գիծ:

Քաջարանի կոմբինատի կառուցումը դարձավ Զանգեզուրի պարտիական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, բանվորների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների առաջնահերթ գործը: ՀԿ(բ)Պ Ղափանի շրջկոմը և կոմբինատի պարտկազմակերպությունը քաղաքական-մասսայական լայն աշխատանք էին ծավալում շինարարների մեջ, խրախուսում ու տարածում առաջավորների փորձը, կազմակերպում շինարարական տեխնիկայի ուսումնասիրման խմբակներ, հավաքագրում բանվորական ուժ, պատրաստում ու վերապատրաստում կադրերը, մոբիլիզացնում կոլեկտիվին՝ կոմբինատի առաջին հերթը ժամանակին շահագործման հանձնելու համար:

Իրականացված միջոցառումների շնորհիվ 1952 թվականի առաջին եռամսյակում շահագործման հանձնվեց Միության խոշորագույն ձեռնարկություններից մեկը՝ Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատը: 1953 թվականի հուլիսին գործարկվեց հարստացուցիչ ֆաբրիկայի երկրորդ հերթը, որի շնորհիվ կրկնապատկվեց կոմբինատի հզորությունը:

Հետագա տարիներին մեծ չափով զարգացավ Զանգեզուրի արդյունաբերությունը: Քաջարանի կոմբինատի պարտիական կազմակերպությունն ու դիրեկցիան զգալի աշխատանք կատարեցին արտադրության կազմակերպումը բարելավելու, արտադրական կարողությունները մեծացնելու, աշխատատար պրոցեսները մեքենայացնելու ուղղությամբ և մոբիլիզացրին կոլեկտիվի ուժերը արտադրական պլանները տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշներով կատարելու համար: Լրիվ մեքենայացվեցին հանքաքարի փորման, բարձման, փոխադրման, բեռնաթափման, աղալու և հարստացման պրոցեսները: Լայնորեն տարածվեց մեքենայական հանքափորման բաց եղանակը. հանքերում ներդրվեցին ժամանակակից բարձր արտադրողական մեքենաներ: Միայն 1956—1958 թվականներին արտադրության մեջ ներդրվեց ավելի քան 1,5 միլիոն ռուբլու նոր տեխնիկա, նորոգվեցին ու շահագործման հանձնվեցին մի քանի տասնյակ մեքենաներ: 1958 թվականին շահագործման հանձնվեց կոմբինատի երկրորդ ճոպանուղին, հանքաքար ջարդող բաժինը, հարստացուցիչ ֆաբրիկայի 4-րդ աղացը: Տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման շնորհիվ ֆաբրիկայի կոլեկտիվը 1957 թվականին տվեց հանքաքարից մոլիբդենի կորզման ամենաբարձր տոկոսը՝ Միության մեջ: 1958 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, կոմբինատի համախառն արտադրանքը (հանքաքարի հանույթն ու մոլիբդենի կոնցենտրատի թողարկումը) ավելացավ մի քանի անգամ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 2,5 անգամ: 1958 թվականին կոմբինատը տվեց ամբողջ Զանգեզուրի արդյունաբերության համախառն արտադրանքի նշանակալի մասը:

Կոմբինատը նոր խոշոր վերելք ապրեց յոթնամյակի տարիներին: Արտադրական պլանները սիստեմատիկաբար գերակատարելու, տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշների հասնելու համար կոմունիստական աշխատանքի կոչման արժանացան կոմբինատի ճոպանուղու կոլեկտիվը, հարստացուցիչ ֆաբրիկայի Ս. Կոլոսովի և Գ. Արզումանյանի ղեկավարած հերթափոխները, Ի. Պողոսյանի, Գ. Սողոմոնյանի, Հ. Նարինյանի, Պ. Աբրահամյանի, Մ. Մկրտչյանի և էդ. Համբարձումյանի բրիգադները: Արդեն 1962 թվականին կոմբինատում կային կոմունիստական աշխատանքի կոչման արժանացած 12 բրիգադա, հերթափոխ ու կոլեկտիվ, 500-ից ավելի կոմունիստական աշխատանքի հարվածայիններ:

Համաժողովրդական սոցիալիստական մրցությունը բազմապատկեց ռացիոնալիզատորների և գյուտարարների շարքերը, որոնք մեծ ավանդ են ներդնում տեխնիկայի զարգացման ու կատարելագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում: 1955—1963 թվականներին կոմբինատում ստացվել են 1610 ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնցից արտադրության մեջ ներդրվել են 1190-ը. ներդրված առաջարկություններից ստացված տարեկան պայմանական խնայողությունը կազմել է 2,6 միլիոն ռուբլի:

Նորարարներն ու ռացիոնալիզատորներն զգալի աշխատանք են կատարում հատկապես մետաղների կորզման տեխնոլոգիան կատարելագործելու, կոնցենտրատի բարձումը մեքենայացնելու, ֆլոտացիոն մեքենաների աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու ուղղությամբ: Հարստացուցիչ ֆաբրիկայի՝ է. Սարգսյանի ղեկավարած վերանորոգողների կոմունիստական աշխատանքի բրիգադան վերափոխեց 4-րդ գնդիկավոր խոշոր աղա-



ցը, որի շնորհիվ այն սկսեց ժամում մշակել 15 տոննայով ավելի հանքաքար: Այդ օրինակով վերափոխվեցին առաջին և երրորդ խոշոր աղացները: Ռացիոնալիզատորական լավագույն աշխատանքի համար կոմբինատի կոլեկտիվը բազմիցս արժանացել է մրցանակների: Կոմբինատում գործում են գյուտարարության և ռացիոնալիզացիայի կենտրոնական բյուրո և հաշվետու բյուրոներ՝ արտադրամասերում, որոնք ժամանակին ընդունում են առաջարկությունները և որոշում դրանցից արժեքավորները ներդնել արտադրության մեջ:

Վ. Ի. Լենինն ուսուցանում է, որ պրոլետարիատի կողմից իշխանությունը նվաճելուց հետո առաջին պլանի վրա է դրվում կապիտալիզմից ավելի բարձր հասարակական տնտեսաձև ստեղծելու, աշխատանքի շատ ավելի բարձր արտադրողականություն ապահովելու խնդիրը: «Կոմունիզմը կամավոր, գիտակից, միավորված, առաջավոր տեխնիկա օգտագործող բանվորների աշխատանքի բարձրագույն արտադրողականությունն է, կապիտալիստականի համեմատությամբ» (Լենին, Երկեր, հ. 29, էջ 524):

Կենսագործելով Վ. Ի. Լենինի ցուցումները և պարտիայի XXII համագումարի պատմական որոշումները՝ Քաջարանի լեռնագործները շարունակ բարձրացնում են աշխատանքի արտադրողականությունը, կատարելագործում արտադրության տեխնոլոգիան, մեքենայացնում ու ավտոմատացնում աշխատատար պրոցեսները: Միայն յոթնամյակի առաջին չորս տարում կոմբինատում ներդրվել են 10 հզոր էքսկավատոր, 20 բուլդոզեր, 10 և 25 տոննա բեռնատարողությամբ 90 ավտոմեքենա, խոր փորման 11 հաստոց և այլ մեքենաներ, մեխանիզմներ ու սարքավորումներ:

Կոմբինատում օգտագործում են մոտ 4000 տեսակ սարքավորումներ ու մեխանիզմներ, որոնց շնորհիվ գրեթե լրիվ մեքենայացվել են հանքաքարի հարստացման բոլոր պրոցեսները, հանքային ո՛չ միայն հիմնական, այլև օժանդակ շատ աշխատանքներ, ավտոմատացվել են մի շարք աշխատատար պրոցեսներ: 1959—1963 թվականներին կոմբինատի էքսկավատորային պարկի արտադրողականությունը մեծացել է 1,5, հորատման հաստոցներինը՝ 2, ճոպանուղիններինը՝ 2,2 անգամ, ինքնաթափ ավտոմեքենաներինը՝ 35 տոկոսով:

Անընդհատ մեծանում են կոմբինատի արտադրական կարողությունները: Միայն 1963 և 1964 թվականներին շահագործման հանձնվեցին կոմբինատի լեռնային ցեխի տրանսպորտային երկու հանքուղիները, երրորդ և չորրորդ ճոպանուղիները, ֆաբրիկայի 7-րդ, 8-րդ, 9-րդ և 10-րդ աղացները, հանքի երկու էլեկտրանեթակայանները, մոլիբդենի կոնցենտրատի ավտոմատ բարձման կայանը, ընդլայնվեցին ֆլոտացիայի բաժինները, ջարդող բաժնի սեկցիաները և մի շարք արտադրամասեր: Նոր կարողությունների գործարկմամբ կոմբինատի արտադրական կարողությունը, 1958 թ. համեմատությամբ, մեծացավ 3,6 անգամ՝ յոթնամյա պլանով նախատեսված 2,4 անգամի փոխարեն:

Շարունակ կատարելագործվում են աշխատանքի ձևերն ու մեթոդները: Կոմբինատի լեռնային ցեխը, 1959 թվականին լրիվ անցնելով հանքաքարի մշակման բաց եղանակին, հանքաքարի արդյունահանման ինքնարժեքն իջեցրեց 3,5 անգամ, էլեկտրաէներգիայի տեսակարար ծախսը՝ ավելի քան 2,5, իսկ պայթուցիկ նյութերինը՝ 4,5 անգամ: Հանքի բաց շահագործումը հնարավորություն տվեց բանվորական ուժը կրճատելու 5—6 անգամ: Ներկայումս բաց հանքում մեկ բանվորի արտադրողականությունը կազմում է հերթափոխում 8, իսկ Ղափանի ստորերկրյա հանքերում՝ 1,2 խորանարդ մետր հանքա-

քար, այսինքն՝ բաց հանքում արտադրողականությունը 6,5 անգամ բարձր է։

Հանքաքարի արդյունահանման բաց եղանակին անցնելու, արտադրական
պրոցեսները մեքենայացնելու, տեխնոլոգիական պրոցեսները կատարելագոր-
ծելու շնորհիվ կոմբինատում աշխատանքի արտադրողականությունը յոթնամ-
յակի անցած 5 տարում բարձրացել է 30 տոկոսով. մեծ չափով ավելացել է
թողարկվող արտադրանքը, բարձրացել են տեխնիկա-տնտեսական ցուցանիշ-
ները, կոմբինատը տվել է մի քանի տասնյակ միլիոն ռուբլու օգուտ։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում կարևոր նշա-
նակություն ունեն կադրերի կուլտուր-տեխնիկական մակարդակի աճն ու որա-
կավորման բարձրացումը։ Արդյունաբերության մեջ բուռն տեխնիկական առա-
ջադիմությունը հրամայաբար պահանջում է բարձրացնել ինժեներա-տեխնի-
կական աշխատողների տեսակարար կշիռը, բոլոր բանվորների կուլտուր-տեխ-
նիկական մակարդակը։ Այդ ուղղությամբ որոշակի դեր են խաղում Զանգեզու-
րի արհեստագործական ուսումնարանները, որոնք ամեն տարի տալիս են հար-
յուրավոր նոր որակյալ բանվորներ, շատ ու շատ բանվորներ էլ բարձրացնում
են իրենց որակավորումը։

Քաջարանի կոմբինատը կադրերի պատրաստման իսկական դպրոց է։ Այն-
տեղ հաջողությամբ կիրառվում են բանվորների կուլտուր-տեխնիկական մա-
կարդակի ու որակավորման բարձրացման այնպիսի բազմազան ձևեր, ինչպի-
սիք են՝ առաջավոր փորձի ուսումնասիրման դպրոցը, երկրորդ մասնագիտու-
թյան ուսուցումը, արտադրական-տեխնիկական զանազան կուրսերն ու դաս-
ընթացները, ցածր որակավորում ունեցող բանվորների ամրացումը վարպետ-
ներին ու փորձված բանվորներին, գիտության ու տեխնիկայի նվաճումների
պրոպագանդումը։ Այդ ամենի շնորհիվ միայն 1953—1958 թվականներին որա-
կավորվել ու նոր մասնագիտություն են ձեռք բերել ավելի քան երկու հազար
բանվոր։ Կոմբինատում կան մոտ 300 ինժեներա-տեխնիկական աշխատողներ,
որոնցից ավելի քան 200-ն ունեն բարձրագույն և միջնակարգ մասնագիտա-
կան կրթություն։ Միայն 1963 թվականին հեռակա ուսուցման միջոցով ին-
ժեների դիպլոմ են ստացել 5, տեխնիկի դիպլոմ՝ 30 հոգի, պատրաստվել ու
վերապատրաստվել են 770 բանվոր, 360 հոգի առանց արտադրությունից
կտրվելու սովորում էին տարբեր ինստիտուտներում, տեխնիկումներում ու
դպրոցներում։ Օրեցօր բարելավվում է կադրերի հետ տարվող գաղափարա-
կան ու քաղաքական աշխատանքը։

Արտադրական պրոցեսների մեքենայացման, հանքաքարի արդյունահան-
ման բաց եղանակին անցնելու, աշխատանքի առաջավոր փորձի ու մեթոդների
արմատավորման շնորհիվ Քաջարանի կոմբինատի կոլեկտիվը ժամկետից մեկ
տարի 3 ամիս շուտ՝ 1964 թվականի սեպտեմբերին, կատարեց յոթնամյա
պլանը, հանքաքարի հանույթի, վերամշակման և կոնցենտրատի թողարկման
գծով գերակատարեց 1965 թվականի համար սահմանված պլանը։

Հետպատերազմյան տարիներին Զանգեզուրում զգալիորեն ավելացան
օգտակար հանածոների արդյունահանումն ու վերամշակումը, խոշոր աշխա-
տանք կատարվեց պղնձի ու մոլիբդենի արտադրությունը բազմապատկելու
ուղղությամբ։ Քաջարանի կոմբինատի հետ կառուցվեցին ու շահագործման
հանձնվեցին նաև Դաստակերտի և Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատ-
ները։ Գրեթե ամայի տարածությունների վրա ձևավորվեցին արդյունաբերական
նոր օջախներ՝ բանվորական ավաններով ու կուլտուր-կենցաղային հիմնարկ-



ներով։ Զգալի չափով ընդարձակվեց Ղափանի պղնձահանքային կոմբինատը։
Զանգեզուրը դարձավ ռեսպուբլիկայի լեռնահանքային արդյունաբերության և
ՍՍՌՄ-ում մոլիբդենի հանույթի խոշոր կենտրոն։ Մոլիբդենի արտադրությունն
այժմ մեր ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիայի վճռական ճյուղերից մեկն
է։ Եթե նախապատերազմյան շրջանում գունավոր մետալուրգիա հայթայթող
ճյուղերի համախառն արտադրանքը (արժեքային արտահայտությամբ) գրեթե
ամբողջությամբ գոյանում էր պղնձի հանույթից, ապա 1959 թվականին արդեն
նվազեց պղնձի տեսակարար կշիռը։

Մեծ են հաջողությունները, բայց առավել մեծ են զարգացման հեռանկար-
ները։ Առաջիկա տարիներին պղնձի ու մոլիբդենի արտադրությունը Զանգե-
զուրում կաճի մի քանի անգամ, նրա համախառն արտադրանքը կավելանա
գոյություն ունեցող ձեռնարկությունների ընդլայնման, նոր կարողությունների
գործարկման հաշվին։ Նշանակալից աշխատանք է տարվում Քաջարանի կոմ-
բինատի կարողությունների ընդարձակման ուղղությամբ։ Զգալիորեն կավելա-
նա նաև Դաստակերտի ու Ղափանի կոմբինատների արտադրանքը։ Արդեն ա-
րագ թափով վերակառուցվում է Ղափանի պղնձահանքային կոմբինատը։ Նոր
հարստացուցիչ ֆաբրիկայի գործարկմամբ երեք անգամ կավելանա կոմբինա-
տի այժմյան կարողությունը։ Միջոցառումներ են մշակվում Ղաթարի լեռան,
Կավարտաքարի հանքերը բաց եղանակով օգտագործելու ուղղությամբ։

Զանգեզուրի պայմաններում լեռնահանքային արդյունաբերությունը կա-
րող է զարգանալ շատ ավելի մեծ մասշտաբներով և ավելի բարձր մակարդա-
կով։ Մասնավորապես Ղափան քաղաքը աշխարհագրական հարմար դիրք ունի
գունավոր մետալուրգիայի զարգացման համար։ Այն երկաթուղուն մոտ է, ունի
ճյուղավորված խճուղային ցանց, ապահովված է ջրով, էլեկտրաէներգիայով։
Այնտեղ կան պղնձի և գունավոր այլ մետաղների հարուստ պաշարներ, մոտ է
Քաջարանին, շրջակայքում՝ Ագարակում, Դաստակերտում և այլ տեղերում կան
հումքի այլ աղբյուրներ ևս, ունի լեռնահանքային արդյունաբերության բարձր
տեխնիկա, ինժեներա-տեխնիկական որակյալ կադրեր։ Տաթևի հիդրոէլեկտրա-
կայանը էներգիայով կապահովի արագ զարգացող արդյունաբերությանը։

Լեռնահանքային արդյունաբերության հետագա զարգացումը, օրգանապես
կապված լինելով բնական հարստությունների հարուստ պաշարների հետ, դրա-
կան ազդեցություն կունենա հարակից ճյուղերի՝ քիմիական արդյունաբերու-
թյան, մեքենաշինության, մասամբ թեթև արդյունաբերության առաջադիմու-
թյան վրա։ Այդ կարևոր նշանակություն կունենա նաև Միության և նրա տար-
բեր շրջանների էկոնոմիկայի համար։

Զանգեզուրի արդյունաբերության հետագա զարգացման համար բացառիկ
կարևոր է Որոտան գետի վրա հիդրոէլեկտրակայանների կասկադի կառուցումը,
որն զգալի չափով կամրապնդի ռեսպուբլիկայի էներգետիկ բազան, կբարելա-
վի Զանգեզուրի արագ աճող լեռնահանքային արդյունաբերության էլեկտրա-
մատակարարումը, խոշոր չափով կնպաստի նրա տնտեսության բազմակողմա-
նի զարգացմանը, արդյունաբերական նոր ձեռնարկությունների ստեղծմանը և
լիովին կվերափոխի նրա էկոնոմիկան։

Վ. ԲԱՐՍԱՄՅԱՆ

## ՄԱՐՏՆՉՈՂ ԴՐԱՄԱՏՈՒՐԳԸ

(ԳԱԲՐԻԵԼ ՍՈՒՆԴՈՒԿՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 140-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



Գաբրիել Սունդուկյանը հայ ազգային մեծ դրամատուրգն է: Բնորոշն արդեն այն է, որ Սունդուկյանի ստեղծագործության մեջ արտացոլվում են հայ ժողովրդի հոգևոր աշխարհի լավագույն հատկությունները—սերը մարդու և ժողովրդի նկատմամբ, անհատի ազատության իդեալը, ամենայն կեղեքման ու շահագործման դատապարտումը: Սունդուկյանը հայացքն ուղղեց դեպի հասարակության ներքին կյանքը, ճանաչեց ու արտացոլեց սոցիալական աղաղակող հակադրությունների պատկերը: Նա տեսավ և այն, թե ի՞նչն է բզկտում կյանքի տերերին: Ֆեոդալական հասարակության անկման, բուրժուական հասարակական հարաբերությունների ստեղծման, բոլոր և ամեն տեսակի արժեքների վերագնահատման դարաշրջանում Սունդուկյանը գնաց դեպի ժողովուրդը, կանգնեց «հասարակի» ու տնանկի աշխարհընկալման դիրքերում, այստեղից ներշնչվեց նրա գրիչը: Նրա ստեղծագործության յուրահատկությունն իր սաղմերն ուներ Սայաթ-Նովայի ու Աբովյանի ստեղծագործության մեջ:

Զարմանալի չէ այն միասնությունը, որ կա դրամատուրգի գաղափարախոսության ու ստեղծագործական մեթոդի միջև: Իրականության ճանաչողությունը և նրա ճշմարտացի վերարտադրությունը դեմոկրատիայի բնական պահանջն էր: Հասարակական կյանքի սոցիալական վերափոխման առեղծվածը, վերջինիս գիտակցումն իսկ ծնում էր ռեալիզմ: Սունդուկյանը լավագույն ձևով ընդառաջեց ռեալիզմի հաստատմանը գեղարվեստական գրականության մեջ և թատրոնում, ազդեց նրանց զարգացման վրա, ազդեց և կյանքի վրա: «Պեպոյի» հեղինակի ստեղծագործական մեթոդն իր մեջ առավ և՛ ազգային արվեստի էսթետիկական իդեալը, և՛ ռուս, և՛ անդրկովկասյան, և՛ համաշխարհային դրամատուրգիայի սկզբունքները: Կանգնելով ազգային հողի վրա, Սունդուկյանը ժխտեց ազգային սահմանափակության տենդենցը: Ծնվեց հայ դասական կատակերգությունը, առաջ եկավ սոցիալական տիպերի կերտման դասական արվեստը: Դրամատուրգիան, թատրոնը սերտորեն կապվեցին իրականության հետ, դերասանների, հանդիսականների ու ընթերցողների սերունդներ դաստիարակվում էին ժողովրդական արվեստի ու հումանիզմի ոգով: Եվ Սունդուկյանի արվեստն արտացոլեց շատ ավելին, քան կարող էր երազել ինքը՝ Սունդուկյանը:

### 1

Դրամատուրգի մանկա-պատանեկան տարիներն անցել են հին Թիֆլիսում: Սունդուկյանները էջմիածնի վանքապատկան հարկատու նորտեր էին: Երեխան էլ մեծանում է այս մթնոլորտում, այն էլ առանց հոր: Մայրն է ուղղություն տալիս որդու կրթությանը: Աբովյանը Գաբրիելի ուսուցիչն է: Նա ավարտում է և ռուսական գիմնազիան: Պետերբուրգը որոշում է Սունդուկյանի բախտը:

1846—1850 թվականներին, պետերբուրգյան տարիներին, ապագա դրամատուրգը սովորում է հին ու նոր լեզուներ, ձեռք է բերում հիմնավոր գիտելիքներ ռուսական, արևելյան ու արևմտյան բանասիրությունից, հափրշտակվում է թատրոնով: Համալսարանում նրա հետ ուսանում էր Ն. Գ. Չերնիշևսկին: Արևմուտքից թափանցում էր ընդհատակյա մի ամբողջ գրականություն: Ու, չնայած 1848 թվականի հեղափոխություններին հաջորդած ռեակցիային, Սունդուկյանը կարողացավ ճիշտ դիրքորոշվել գրականության ու արվեստի հարցերում. նրա վրա ներգործեցին առավել առաջավոր դեմքերը՝ Գրիբոեդովը, Պուշկինը, Գոգոլը. ամենից ուժեղ տպավորվել են նրա հոգում Մոչալովը, Շչեպկինը, նա ներշնչվել է Շեքսպիրի, Մոլիերի, Շիլլերի արվեստով: Պետերբուրգյան թատրոնները նա ըմբռնել է որպես բարձր գրականության թատրոններ: Այստեղ նա նկատեց ո՛չ միայն Կարատիգինին, այլև դեմոկրատ դերասան Մարտինովին: Նա շատ շուտ ըմբռնեց թատրոնի հասարակական, էսթետիկական ու լուսավորչական կոչումը: Սունդուկյանը բացասական վերաբերվեց փողի տիրապետությանը ու, ինչպես երիտասարդ Օստրովսկին, նվիրեց իր գրիչը կապիտալի նախակուտակման շրջանի «հերոսների» մերկացմանը: Ձևավորվեցին, կազմավորվեցին Սունդուկյանի գեղարվեստական միտքն ու մեթոդը, քննադատական ռեալիզմի մեթոդը:

«Պետերբուրգյան հովերով» տարված Սունդուկյանը Թիֆլիսում եռանդուն գործունեություն է ծավալում: Պաշտոնով նա ատենանավոր-թարգմանիչ է Կովկասի փոխարքայի գրասենյակում: Իր ֆիզիկական գոյությունը նա պահպանել է երկարամյա պաշտոնավարությամբ: Սակայն հոգեպես, ամբողջ էությամբ նա ոգեշնչվում է մայրենի գրականության ու թատրոնի զարգացման գործին, հրապարակ է գալիս նաև իբրև լուսավորիչ, ավանդում Ներսիսյան դպրոցում, ուր նրա պաշտոնակից-բարեկամն էր Միրզա Ֆաթալի Ախունդովը: Սունդուկյանն ու Ախունդովը էջմիածնի կաթողիկոսի պահանջով վտարվում են Ներսիսյանից: Ավելին: Գաբրիել Սունդուկյանը աքսորվում է Դերբենտ: Այստեղ նա ո՛չ միայն պաշ-

տոնյա է գեներալ-նահանգապետի մոտ, այլև՝ քաղաքի ճարտարապետը: Սունդուկյանը քաջատեղյակ էր լեռնցիների պայքարին, ինքը ևս հրապուրվում է բազմազգ Դաղստանի կենցաղով: Համակովկասյան մթնոլորտով ապրող Սունդուկյանը լավ էր նախապատրաստված՝ նետվելու հայ դրամատուրգիայի ու թատրոնի ասպարեզը, կենդանություն ու շունչ տալու այդ բնագավառին:

Եվ եկավ այդ օրը: Մի ամբողջ սերունդ՝ Չմշկյան-Ամերիկյանի սերունդը, հսկայական ճիգեր է գործադրում Թիֆլիսում հիմնովին նորոգելու հայ թատրոնը: Դա, իսկապես, տիտանական պայքար էր՝ հանուն նոր արվեստի, ռեալիստական արվեստի, հանուն ազգային ինքնագիտակցության արթնացման՝ նաև թատրոնի միջոցով: Սունդուկյանը թևավորեց Չմշկյանին ու Ամերիկյանին, Սունդուկյան-Չմշկյան-Ամերիկյան երրորդությունը բարձրացրեց ազգային թատրոնն ու դրամատուրգիան ռեալիստական ու դեմոկրատական հիմքով վերափոխելու դրոշը:

1860-ական թվականների սկիզբն էր. «Հյուսիսափայլի», Մ. Նալբանդյանի էպոխան, սոցիալ-քաղաքական մաքառումների, գրոհի, հնի փլուզման, նոր լեզվի, գրականության զարգացման դարաշրջանը: Եվ ավելի՛ լայն, ավելի՛ խոր ոչ ոք ի վիճակի չէր իրականացնելու Նալբանդյանի իդեալը թատրոնի ու դրամատուրգիայի վերաբերյալ, քան Սունդուկյան-Չմշկյան սերունդը: Ամերիկյանը ո՛չ միայն թարգմանում է Հայնեի հոդվածը թատրոնի մասին, այլև տալիս է իր սեփական ծանոթագրությունները: Բելինսկու մտքերի կրքոտ պրոպագանդիստն է դառնում նա: Նույնը անում են Մ. Պատկանյանը՝ ընդդեմ պատմական ողբերգության ու նացիոնալիզմի:

Վաշխառուն, կապալառուն, վաճառականը, խանութպանը, չինովնիկը, փողն իր ողջ գերիշխանությամբ, ընտանիքն՝ իր բարքերով, հենց սպասում էին գրողին, դրամատուրգին, դերասանին, որպեսզի երևան գային իրենց ողջ մերկությամբ: Ցարիզմն ու եկեղեցին հենարան ունեցող այդ բոլոր «հերոսները» բեմական հայելու մեջ պետք է տեսնեին իրենց: 1865 թվականի համքարական ապստամբությունն արդեն ուղղված էր հարձակվող կապիտալի դեմ: Համքարը ձեռք բարձրացրեց կենդանի Զամբախովների վրա: Իրական կյանքը ծնեց, մի կողմից, նույն Զամբախովներին ու Զիմզիմովներին, մյուս կողմից՝ Պեպոներին: Սունդուկյանը գրնաց համքարի հետ, ապստամբության օրերին նա ոգևորում էր համքարին: Դա այն շարժումն էր, որն արձագանք գտավ ինչպես համայն երկրում, այնպես էլ նրա սահմաններից դուրս, Գերցենի «Колокол»-ում:

1863—1866 թվականներին Սունդուկյանը գրեց իր վոդևիլները՝ «Գիշերվան սաբրը խեր է», «Եվ այլն կամ նոր Դիոգենես», «Օսկան Պետրովիչն էն կինքումը»: Նույն այս ժամանակ նա երկնում էր իր մեծ գործերը՝ «Խաթաբալան» (ա. տարբերակ), «Մախլաս» («Էլի մեկ զոհի» ա.տարբերակը): Բացված էր հայ նոր դրամատուրգիայի ճանապարհը: Պահպանողականությունը կռվում էր նույնիսկ վոդևիլների հեղինակի դեմ. հիրավի, նոր էր վոդևիլների նյութը, նոր էին գործող անձինք, նոր՝ մտքերը: Նորարարությունը թատրոնում և դրամատուրգիայում ուներ իր գաղափարական ու էսթետիկական ծրագիրը, ըստ որի իրական կյանքը պետք է իշխեր արվեստում, իրականությունը՝ իր ողջ բովանդակությամբ մտնելու էր գեղարվեստական մտածողության ու պատկերման ոլորտները:

Սունդուկյանը, նրա սերունդը, դրամատուրգիայում ու թատրոնում նախապատրաստեցին ու իրագործեցին մի կատարյալ հեղաշրջում՝ մահացու հարված հասցնելով հակառեալիստական ուղղություններին: Մարդը դարձավ նոր դրամատուրգիայի ու թատրոնի անատոմիական քննության առարկան: Կենդանի մարդու հետ երևան եկավ կենդանի մարդու պատկերը՝ նրա սոցիալական էության ու ներքնաշխարհի ճշմարտացի նկարագրով: Գերեզման իջավ պատմական ողբերգության պրիմիտիվ էսթետիկան: Սունդուկյանը կարդաց նրա ռեքվիեմը:

## 2

Ժամանակի, սոցիալական, հոգեբանական ի՞նչ հատկանիշներ ու գծեր բացահայտեց Սունդուկյանն իր հիմնական երկերում:

Դրամատուրգն իր ուշադրությունը կենտրոնացրեց քաղաքի վրա: Այլևս քաղաքն էր տոն տալիս երկրին, այստեղ ավելի վաղ, քան գյուղում, ձևավորվեցին սոցիալ-տնտեսական, քաղաքական, մշակութային կյանքի նոր երևույթները: Սունդուկյանն էլ քայլեց պատմական մայրուղիներով: Ո՞վ էր Զամբախովը, ի՞նչ էր արտացոլում Զիմզիմովի տիպը, ի՞նչ էին անում Փարսիղը, Բրիլիանտովը, Սարգիսը. ո՞րն էր Օսեփի ողբերգության հասարակական հիմքը: Սունդուկյանի՝ հայ նոր գրականության մեծագույն ծառայություններից մեկը ազգային բուրժուազիայի, նրա դասակարգային էության մերկացումը եղավ: Կապիտալի բոլոր ձևերը ներկայացնող բուրժուազիան գտավ իր օբյեկտիվ նկարագիրը:

Սունդուկյանը շոշափեց առավել ակնառու, առավել խոցելի երևույթները: Արվեստի ցայտուն դրսևորումներով երևան եկավ Զամբախովը՝ առևտրականի և կապալառուի մոնումենտալ կերպարը, դարաշրջանի տիպը: «Խաթաբալայով» նա ամբիոն բարձրացավ՝ մերկացնելով իրեն, մերկացնելով իր դասակարգը: Մարդը մարդու համար գայլ է,— այս էր հավատում Զամբախովը, կյանքում գործում են մրցակցության, փող դիզելու դաժան, անողոք օրենքները: Կրոնը, քաղաքակրթությունը, ծեսը, սովորույթը կոչված են վարագուրելու մարդ-գազանի դեմքը: Կշեռքի վրա են դրված բոլոր սրբությունները. վաճառքի է հանված ամեն ինչ՝ խիղճ, զգացմունք, նույնիսկ՝ մարդը, նաև հարազատ աղջիկը: Մարքրիտը «դալը ապրանք է», ծախիր նրան, թեկուզ բարոյական ոչնչացման գնով: Նա տեղ չունի կյանքում, նրան մերժում են լույսը, արևը, արգելում են քայլել, ապրել, շնչել: Արդարացնում էր Զամբախովն ամեն ոճրագործություն. ինչ իրական է, այն բանական է. այս զարհուրելի, միաժամանակ սառը, քստմնելի քարոզն էր կարդում նա:

Փողի այլասերող ուժը ծնեց «Էլի մեկ զոհի» Սարգսին ու Բրիլիանտովին, բայց նույն ուժը այլասերեց հայրերին փոխարինելու եկած նրանց նոր սերնդին ևս: Բուրժուազիայի միջավայրը լի էր «ոսկե» երիտասարդության պատկերը մարմնավորող Վանոյով ու Նատոյով: Անգլուխ, անմիտ, գաղափարազուրկ, ապազգային, հոգով որբ ու աղքատ այդ երիտասարդությունը խտացնում էր տերերի բարոյական քայքայման ընդհանուր նկարագիրը: Հեռանալով նահապետականությունից, այդ երիտասարդությունն ընկել էր Արևմուտքին կապկորեն նմանվող այլասերված տարրերի ու նրանց բարքերի գիրկը:

Գողություն, հափշտակություն, կողոպուտ, խաբեություն, ստախոսություն, սուտ կրոն, կեղծիք, այլասերում, բռնություն, մարդավաճառություն-ահա՛ թե ինչ ծնեց կապիտալի նախակուտակման ժամանակը, ահա՛ թե ինչ տեսավ Սունդուկյանը այդ ժամանակի մեջ և ինչը նա վերարտադրեց գեղարվեստական անմեռ կերպարներում ու պատկերներում:

«Քանդած օջախը» շռայլության ողբերգության, անբանական կյանքի, անբնական ու կեղծ բարքերի համապարփակ պատկերն է: Ու երբ Փարսիղը, իր մռայլ ու խավար «ակադեմիայում» Դարչոյին ու Միխոյին այդ «ակադեմիայի» աստիճաններով բարձրացնում էր «վեր», դեպի կողոպուտն ու թալանը, Օսեփը օրհասական կռիվ էր մղում ապականության ու կեղծ քաղաքակրթության դեմ, իր ցասկոտ ձայնն ուղղելով քանդող ու քանդվող կյանքին: Սակայն փրկություն չկար: Շատերի պես Օսեփը ևս սուզվեց նույն կյանքի հատակը:

Համարյա մեկ դար «Պեպոն» բեմի վրա է: Կանցնեն էլի տարիներ ու տարիներ, և «Պեպոն» կշարունակի ապրել բեմի վրա, գրականության մեջ: Գեղարվեստական խոսքի զարմանահրաշ ծրնունդ է այդ երկը, հազվագյուտ մի ստեղծագործություն մայրենի թատերգության մեջ, յուրահատուկ և ինքնատիպ նաև համայն աշխարհի դրամատուրգիայում:

Սունդուկյանի անունն անքակտելիորեն կապված է «Պեպոյի» հետ, պիեսը հավերժացրել է հեղինակին: Դարաշրջանի ճշգրիտ պատկերն է «Պեպոն», նրա հայելին, ոգին ու էությունը միաժամանակ: Դրամատուրգի կողմից նյութը մինչև հոգու խորքը վերապրված է: Այդ նյութը ցնցել, համակել է դրամատուրգին ամբողջությամբ, և երկը ստեղծվել է, կարելի է ասել, մի շնչով: Ծայրահեղորեն սեղմ, լակոնիկ շարադրությամբ, բայց վիթխարի ուժի ընդհանրացումներով հարուստ «Պեպոն» դարձավ ժողովրդի հոգևոր աշխարհի անբաժանելի մասնիկը: Հիրավի, անբաժանելի են «Պեպոն» ու ժողովուրդը:

Պայքարով բեմ բարձրացավ «Պեպոն». բազմաթիվ բշնամիներ է ունեցել այն ձեռագիր վիճակում: Բեմից այն որոտացել է դահլիճում. տասնյակ տարիներ հարուցել է հարցեր, որոնց պատասխանը հասարակությունը չէր կարողանում տալ: «Պեպոյի» հարուցած առեղծվածները լուծվեցին միայն ռևոլյուցիայի միջոցով:

Ինքը՝ Սունդուկյանը, պիեսի սևագիր օրինակում որոշակի արտացոլել էր 1865 թվականի համքարական շարժման դեպքերը, ոգին: Պիեսի վերամշակության ընթացքում նա կերտում է ո՛չ միայն այդ ոգին արտահայտող պատկերներ, նա երևան է բերում ժողովրդի ու բուրժուազիայի հարաբերության ու հակադրության ընդհանուր հարցերը, երկը դարձնում մի ամբիոն, որտեղից հնչում ու շառաչում էր մտրակող ու քաջարի խոսքը՝ ուղղված բուրժուազիային. Պեպոն է ասում. «էս օսկե պատիրը, վուր սարքիլ իս, ո՞ւմ փուղով… Հազար ինձ պեսներուն թա՛լնիլ իս, գա՞նա. քար ու կիրը միր ա՛րնով իս շաղըղի, գա՞նա. դիփունանց անկիրք արլանդվա իս արի ու հիմի ծանդր ու բարակ քիզ համա նստած քեփ իս անում, է՛լի»:

Այս էր ամենաէականը. ձկնորս Պեպոն հանդես էր գալիս տասնյակ հազարավոր մարդկանց՝ բուն ժողովրդի անունից: Ինքնագիտակցության եկած այդ ժողովուրդը իր Պեպոյին մղել էր պատմության թատերաբեմ, նրա բերանով, պեպոյական ողջ կոլեկտիվի միջոցով արտահայտելու և կենդանի ցույց տալու ժողովրդի ապրած ողբերգությունը, նրա վիշտը, նրա ոտնահարված ու անիրավված դրությունը: Պեպոն իրավունքներ էր պահանջում, անհավասար կռվի էր դուրս եկել արդարության համար: Նա արդեն պարզ պատկերացում ունի այն մասին, որ ժողովրդի անլուր շահագործումը ծնում է Զիմզիմովների անտակ հարստությունը. «Մա՞րթ էիր ուզում դառնա՞. կ'եհեիր մարթիկ կու թալնեիր, գողութին կ'ոնեիր, իմ նման խղճերուն կու զրնեիր. քանունինգ հազար տիղ արին արտըսունք կու թափիլ տեիր, էն արտըսունքնիրը փուղ կու շինեիր ու էն փուղով օսկե տնիր…»: Կյանքը, իրականությունը դաժան պայքարի պատկերն ուներ, ու Պեպոն գիտակցել էր, որ բուրժուազիան գայլերի ոհմակ է. «…Մտիկ իս անում՝ սա՛ղ քաղաքը գիլաներով լքցվիլ է. ո՞վ է ասում քիզ, վուր օխչրի, երիշով ման գաս… Ձիս գիդի՞, վուր գառնի վիրչը դասաբխանեն է…»:

«Պեպոն» պսակազերծեց բուրժուազիային. սրա բարոյական նկարագիրը ոչնչացված էր, և՛ հակառակը, բարոյական բարձր գնահատական էր տրվում հասարակ մարդկանց: Բոլոր առաքինությունների տերը ժողովուրդն է, գողը, ավազակը, մարդասպանը բուրժուազիան է: Գիքոն, Կակուլին, Շուշանը, Կեկելը, Պեպոն կանգնած են մի բևեռում, Զիմզիմովը, էփեմիան՝ մյուս: Սրանց միջև այնպիսի տարբերություն կա, որպիսին է ազնվության, առաքինության, արդարամտության և հափրշտակության, գողության ու ավազակության աշխարհների միջև եղած տարբերությունը:

Սունդուկյանը ստեղծել էր վերին աստիճանի ժողովրդային մի երկ, ժողովրդային իր բուն էությամբ. ժողովուրդն էր նրա հերոսը, ժողովրդի միտքը, հոգին, բնավորություններն էին նրա էությունը և ժողովրդի ապրած վիճակի, նրա բողոքի ու ցասման կիրքն էր ոգի տվել երկին, ու ժողովրդի դիրքերից, նրա աչքերով էր դիտված իրականությունը:

Պեպոն զոտեմարտի էր բռնվել տիրող իրավակարգի հետ և այդ պայքարի ընթացքում արթնանում, խորանում էր նրա միտքը: Ունե՞ր նա նախապաշարումներ և սահմանափակումներ իր մտածողության մեջ: Ունե՛ր, ունեցել է: Հեղինակը ևս ունեցել է: Ակներև հակասություն կար պիեսի ցասկոտ ոգու, նրա շառաչուն մերկացումների, նրա ժողովրդային ոգու և սովորութային ու կրոնական մտածողության միջև: Եվ սակայն «Պեպոն» ապրել է ու զարգացել հասարակական գիտակցության մեջ իր ժողովրդայնությամբ, իր խիզախ հարցադրումներով: Սոցիալական պայքարը բորբոքող, ժողովրդին վեհություն ներշնչող մի երկ է «Պեպոն», արվեստի մի իսկական կոթող, որին հավասարը հայ գրականությունը դեռ չէր ունեցել:

Գաբրիել Սունդուկյանի մեծ տաղանդի հանճարեղ ծնունդն էր և «Վարինկի վեչերը» պատմվածքը: Նա ստեղծեց մեզանում մի նոր ժանրի գրականություն-զրուցաձև արձակի, մասլահաթների ժանրը, տվեց նրան խոր բովանդակություն և սոցիալական նպատակասլացություն: Օրը օրին, առօրյա ամբողջ կյանքն ու կենցաղը մտան Սունդուկյանի մասլահաթների մեջ: Նա և՛ հրապարակախոս է, և՛ գեղագետ: Ոչինչ նրա աչքից չվրիպեց: Սրտի արյունով նա արձագանքեց հայ ժողովրդի ապրած ծանր տարիներին, նշավակեց Արևմուտքի բուրժուական տերություններին. «Մոդ ին էլի աղեքն ու ջաններուս հանում ին: Քա՛նի խոսկիր ու խոստմունքնիր, քա՛նի ումիկ ու մխիթարանք: Ամա դիփ սուտ, դիփ ղալբ, վունցոր իրանք սուտ ու ղալբ ին: Սըրտացավ օչով չէլավ միզ համա»: Զաղկեց Սունդուկյանը ներքին կյանքի բոլոր հոռի կողմերը: Ապրում են երեք հարյուրը, դժբախտ են 299 հազար 700-ը: Սա Թիֆլիսի մասին էր: Բայց նա տեսնում էր դժբախտներին ամենուրեք: Մարզ-գավառներ ամեն տեղ կան: Սրանք հորինել են կոտորածի, կողոպուտի մի սիստեմ, որը գործում է անարգել, ընդդեմ ժողովրդի:

Անկրկնելի վարպետությամբ Սունդուկյանը նկարագրեց մեծ քաղաքի սոցիալական հակադրությունները: Այդ քաղաքի անվի տակ ճզմվում, ոչնչացվում էր հասարակ մարդը: «Վարինկի վեչերը» հենց այդ էր պատմում: Անհունորեն ողբերգական էր կարուհի Մակակոյի վիճակը հարուստ Վարինկայի

տանը: Միամիտ, մաքուր, օրնիբուն աշխատանքի տակ կքած Մակակոն տեսնում էր հարուստի գործած ոճիրների արդյունքը. թալանն ու կողոպուտը ոսկի էր դարձել և երջանկություն տվել գազանաբարո մարդկանց: Հեղինակը ողբում է հասարակի համար, բայց նա գույներ չի խնայել ցույց տալու, թե ինչ է ներկայացնում իրենից վերնախավերի կյանքը: Սատիրայի հուժկու արվեստով ոչնչացնող բնութագիր տվեց Սունդուկյանը այդ վերնախավերին: Ապրելու իրավունք ունի ժողովուրդը. այդ իրավունքից զրկված է հանցագործ դասակարգը,— ասում էր հեղինակը:

Ինչո՞ւ ցարական գրաքննությունը երկար տարիներ արգելք էր հարուցում «Ամուսիններ» դրամային: Պիեսն ամբողջությամբ գրված էր գրական հայերենով: Այս անգամ Սունդուկյանը մի կողմ էր դրել բարբառը: Բարբառի գործածության մեջ նա անգերազանց մնաց: «Ամուսիններից» հետո իր նոր երկերը վերստին նա գրեց բարբառով: Նոր դրամայի նյութը, ընտանիքի առեղծվածը, ընտանեկան կյանքի վերափոխության պրոբլեմը նրան թվում էին ընդհանուր, լայն, կենսական խոշոր նշանակություն ունեցող մի պրոբլեմ: Բացի դրանից, դրամայի մեջ անդրադարձված էր հայ ժողովրդի ազգային ազատագրության մոտիվը ևս: Հեղինակի համակրանքն ամբողջովին իր ժողովրդի կողմն է: Նա նրան ցանկանում էր լիակատար ազատություն օտարի դաժան լծից: Սակայն «Ամուսիններ» դրաման ամենից առաջ ուղղված էր բարձրաստիճան չինովնիկության դեմ: Սունդուկյանն այստեղ ևս ոչինչ և ոչ ոքի չէր խնայել: Ցարիզմը տեսավ այդ դրամայի մեջ իր պետական ապարատի մարդկանց խայտառակ պատկերը: Բիրտ ուժը, բռնությունը և բարոյական անկումը երևան էին բերված միաժամանակ. որտեղ բռնություն և բռնի օրենք, այնտեղ մարդու անկում, որտեղ օրենքի դաժանություն, այնտեղ և սարկամտություն: Սակայն նույն պիեսը ցույց էր տալիս, որ նույն բռնությունն ու բռնի օրենքը հավերժական չեն: Ծնվում են ուժեր, որոնք ըմբոստանում և ապստամբում են բռնության, բռնի օրենքի դեմ: Նոր մարդիկ գոչում էին՝ «մահ կամ ազատություն». և ցարական գրաքննությունը ձգտում էր ոչնչացնել պիեսի հրապարակախոսական-մարտական ոգին:

Հայ պահպանողականությունն իր հերթին հանգիստ չէր տալիս Սունդուկյանին, գտնելով, որ դրամատուրգը որպես թե մեղանչում է կյանքի ճշմարտության դեմ՝ միշտ և ամենուրեք տեսնելով միայն բացասականը: Քանդվող կյանքի մասին դրամատուրգը պատմում էր նույնքան «քանդող» լեզվով: Նա պատկերում, արտացոլում, դատապարտում, խարազանում էր: Կյանքն իր հոսքի մեջ կանգառ չուներ: Ալիք ալիքի հետևից այդ հոսքը բերում էր իր հետ ավերածություն, քայքայում, անկում, վիշտ, տառապանք: Սակայն Սունդուկյանի միտքը թափանցել գիտեր իրական կյանքի բոլոր ծալքերը: Նա ինքը երկփեղկված տեսավ նույն կյանքը ու, եթե պահպանողականությունը ողբում էր անցյալի մահը, կառչում այդ անցյալից, Սունդուկյանը գտավ, ցույց տվեց և՛ նրանց, ովքեր խավարի թագավորության զոհերն էին, և նրանց, ովքեր չկամեցան ծնկաչոք մեռնել:

Եթե «Խաթաբալայում» Մարքրիտը զոհն էր, նույն պիեսի Գևորգ Մասիսյանցը չէր ուզում զոհ լինել: Եթե «Էլի մեկ զոհում» տիրակալ բիրտ ուժը փողն է, ապա նույն պիեսի Միքայելը պատռում էր հայրերի դիմակը, նետվում ազատության գիրկը, ապավինելով անշահագործ աշխատանքի, ազնիվ ու անբասիր կյանքի իդեալներին: Եթե «Քանդած օջախում» Օսեփը աղաղակում էր իր և կյանքի կործանման մասին, Գիժ-Մոզին շարունակում էր ծաղրել ու ամենակրքոտ կերպով մերկացնել ու դա-



տափետել նույն կյանքը, նրա տերերին: «Ամուսիններում» տվեց հայ նոր երիտասարդության կերպարը, Արտաշեսի, Մարգարիտի, հայ ժողովրդասեր մտավորականի կերպարը: Պեպոն, Կակուլին, Շուշանը, Գիժ-Մոզին ժողովրդի ընդերքից ելած, բարձր առաքինություններով օժտված դեմքեր էին: Սրանց վրա, հայ ազնիվ մտավորականի կերպարների վրա հիմնվեց դրամատուրգը սոցիալական տիրող չարիքի դեմ մղած իր գաղափարական պայքարում: Դա դեմոկրատիայի պայքարի արտացոլումն էր դրամատուրգիայում և թատրոնում, նրա ձգտումների ու իդեալների դրսևորումը հայ արվեստի մեջ:

Այսպես, Սունդուկյանի դրամատուրգիայում երևան եկան և՛ բացասվող, և՛ նոր, նորը հաստատող դեմքեր: Կոնտրաստը, հակադրությունը, հակադրությունների պայքարը իրական կյանքի արտացոլումն էին: Ծագեց սունդուկյանական կատակերգության տեսակը, որի մեջ լույսն ու խավարը, բացասվող ու հաստատվող երևույթներն ու բնավորությունները տալիս էին մեռնող ու զարգացող նույն այդ երևույթների ու բնավորությունների պատկերները:

Գաբրիել Սունդուկյանն ունեցել է և իր երազանքները: Կանգնած իրականության ահռելի հակասությունների առաջ, վշտով, ցասումով ու զայրույթով նկարագրելով ու խոսելով դրանց մասին. նա, այնուամենայնիվ, ելք է որոնել: Ի՞նչ է երազել նա: Երազել է բնության, անեղծ ու կուսական բնության թագավորությունը մարդու կյանքում, երազել է երկիրը տեսնել հարուստ ու երջանիկ, ոչինչ և ոչ ոք չպետք է վրդովեր երկրի այդ կյանքը: Բարձր քաղաքակրթությունը փոխարինելու էր այն ժամանակ գոյություն ունեցող հետամնացությանն ու կեղտին: Ազնիվ աշխատանքը, ազնիվ մարդը դրամատուրգի ներբողման առարկան էին: Սրանք նրա մտքի ուժեղ կողմերն էին: Ակներև է դառնում և Սունդուկյանի թուլությունը, երբ նա հնարավոր է համարում հաշտեցնել անհաշտելին, բարի ցանկություններով ու բարի կամքով երազանքը իրականություն դարձնել: Ծերունի դրամատուրգը հավատում էր բարեգործության գաղափարին: «Բաղնըսի բոխչա», «Կտակ», «Սեր և ազատություն» վերջին պիեսներում նա մնում է նույն ռեալիստը: Անսքող և անխնա պատկերել է արդեն մերձիմահ բուրժուազիային: Բայց այս օրերին էլ նա քարոզեց բարեգործության գաղափարը, տվեց այն միամիտ դեղատոմսը, որ վաճառականը կարող է վերածնվել: Կյանքը հիմնովին սրբագրեց հեղինակին, այն հեղինակին, որն իր ողջ ստեղծագործությամբ հաստատել էր պատմա-սոցիալական մեծ ճշմարտություններ:

## 3

Ռեալիստ, ստեղծագործության մեջ ժողովրդային ու դեմոկրատ Սունդուկյանը մեծապես նպաստել է ռուս և հայ, հայ և վրաց, հայ և ադրբեջանական ժողովուրդների գրական-թատերական կապերի ամրապնդմանը: Ծանոթ լինելով բազմաթիվ լեզուների, յուրացնելով այդ լեզուներով ստեղծված հոգևոր արժեքները, Սունդուկյանին խիստ մատչելի էր տարբեր ժողովուրդների հանդեպ ունեցած բարեկամության, նույնիսկ հոգեհարազատության գաղափարը: Դա նրա էությունն էր, նրան զարդարող հատկանիշը: Կուլտուրայի ազգային ու ինտերնացիոնալ ակունքներից սնված, այդ տրադիցիայով դաստիարակված Սունդուկյանը իր մտքով ու գրչով ծառայել է դրան, ինտերնացիոնալ կապերով ու գաղափարներով հարստացրել հայ ժողովրդի մշակույթը:

Ռուս ժողովրդի մեծ կուլտուրայի երկրպագուն է նա: «Պեպոյի» հեղինակը անսահման համակրել է Հյուգոյին:

Արևելքը նրան հարազատ էր և՛ հին կլասիկ լեզուներով, և՛ դասական բոլոր արտահայտություններով՝ պոեզիայի, երգի, երաժշտության մեջ: Ուշադրությամբ ուսումնասիրեցեք դրամատուրգի երկերում հանդես բերված «ամենաաննկատելի» մարդկանց՝ ծառաներին, տեսեք, թե ի՞նչ են նրանք ասում, երգում, ինչպե՞ս են նրանք մտածում, ո՞րն է Պեպոյի, Կակուլու, Գիքոյի, Գիժ-Մոզու ներքին աշխարհը, ինչո՞վ են ապրում մայրերը՝ ծեր կանայք, հոգևոր ինչպիսի սնունդ է տվել նրանց հայ, վրաց, ադրբեջանական, պարսկական ժողովրդական ստեղծագործությունը, առհասարակ ժողովրդական բանավոր հոգևոր կուլտուրան, և կտեսնեք, որ Սունդուկյանի համար ամենաթանկը, հավասարապես արժեքավորը-ժողովրդի, ժողովուրդների ստեղծած հոգևոր գանձերն են: Վերլուծեցեք դրամատուրգի լեզուն. իր հիմքում հայերեն այդ լեզուն որքա՞ն զգայուն է և այլ լեզուների նկատմամբ: Սունդուկյանը չէր բռնանում կուլտուրայի զարգացման բնական ընթացքին, նա ինքը կատարել է կուլտուրաները մերձեցնող քայլեր:

Ստեղծագործության մեջ Սունդուկյանը դրսևորեց հասարակության զարգացման այնպիսի օրինաչափություններ, որոնք ընդհանուր էին և՛ հայ, և՛ ոչ հայ ժողովուրդների կյանքում: Էականը արտաքին նմանությունները չեն: Անիմաստ է կրկնել բազմիցս կրկնված այն խոսքերը, թե Սունդուկյանը «հայ Օստրովսկին է» կամ՝ «հայ Մոլիերը»: Սունդուկյանը է՝ Սունդուկյան: Բայց ռեալիզմի ու ժողովրդայնության դիրքերի վրա կանգնած Սունդուկյանը՝ իր յուրահատկությամբ, լեզվով ու կոլորիտով միաժամանակ հարազատ էր և՛ ռուս, և՛ վրաց, և՛ ադրբեջանական իրականությանը, բացահայտել էր երևույթներ ու վրձնել բնավորություններ, որոնք կային և տեղ ունեին նաև այլազգի սոցիալական կյանքում: Սունդուկյանը մեծ է, որովհետև հոգեհարազատության մթնոլորտ ստեղծեց սոցիալական չարիքի դեմ մղվող պայքարում: Ա. Ն. Օստրովսկին Թիֆլիսում անձամբ համոզվեց, թե որքան ճիշտ ճանապարհի վրա են կանգնած հայ և վրաց դրամատուրգները և թատրոնները: Բարեկամանում են Օստրովսկին, Աբաշիձեն, Սունդուկյանը: Չմշկյանը խաղում է Պեպոյի դերը վրաց բեմի վրա: Վրաց թատրոնում բեմ են բարձրանում Սունդուկյանի համարյա բոլոր պիեսները: Ծերեթելին, Ճավճավաձեն, Մեսխին, Սունդուկյանը, Չմըշկյանը, Ամերիկյանը դարբնում են ազգամիջյան բարեկամության գաղափարը:

«Պեպոն» խանդավառել է Գորկուն: Շատ բան արեց Յու. Վեսելովսկին Սունդուկյանին ժողովրդականացնելու համար: Ամերիկյանը Կ. Պոլսում գրեց՝ «Պեպոն» բոլոր ժողովուրդներինն է: Լեոն, 1901 թվականին, «Պեպոյի» 30-ամյակին, ասաց. «Մարդակերության, ատամների կրճտոցի այս դարում որքա՞ն հրաշալի էր այն ջերմ, եղբայրական համերաշխությունը, որով ռուսը, վրացին, հայը գալիս էին սրտաբուխ, անկեղծ հարգանք մատուցանելու օրվա հերոսին...» («Մշակ», № 97, 1901 թ.):

Հայտնի են Ծերեթելու տողերը՝ նվիրված Սունդուկյանին.

Սրտումն ուներ հրաշագեղ
Իղձեր, տենչեր հուսալի,
Մարդ էր փնտրում նա ամեն տեղ,
Եղբայրության սիրով լի:

Կամ՝

Ես մի վրացի, իսկ դու հայ ես մի,
Բայց մենք երկուսով եղբայր ենք հիմի.
Երկուսս էլ կավակ նույն հողի, ջրի,
Ե՛վ նույն բնության, և՛ նույն լեռների:

Վրաց բեմահարթակում 1903 թվականի հոկտեմբերին «Խաթաբալայի» ներկայացման առթիվ վրացական մամուլում գրվել է. «Թատրոնում տիրում էր կատարյալ համերաշխություն, կատարյալ ներդաշնակություն, և ամենքը հափշտակված էին գեղարվեստով և նրա այն իդեալով, որ պահանջում է միություն, եղբայրություն և ճշմարտություն, ո՛չ միայն մարդկանց, այլև ամբողջ ազգերի մեջ...» («Մուրճ», № 11, 1903 թ.):

Ժողովուրդների եղբայրության սիմվոլիկ արտահայտություններ են եղել «Պեպոյի» բազմալեզու ներկայացումները:

## 4

«Պեպո» ներկայացումով սկիզբ առավ հայկական առաջին պետական թատրոնի՝ Սունդուկյանի անվան թատրոնի պատմությունը: Թումանյանի հետ Սունդուկյանը այն դեմքն էր, որին «նվաճեցինք» սովետահայ կուլտուրայի զարգացման անդրանիկ օրերից: Սունդուկյանը մտավ նոր հասարակության կյանքը: Սովետական Հայաստանի թատրոններն անընդմեջ բեմադրել են Սունդուկյանին: Բաքուն, Թբիլիսին ընդունել են «Պեպոյի» ներկայացումները: Վրացերեն լույս է տեսել դրամատուրգի երկերի ժողովածուն: Մոսկվայում Սունդուկյանը տպագրվել էր երկու անգամ: Հրապարակի վրա է մեծ գրողի երկերի ակադեմիականը: Ստեղծվեց «Պեպո» հռչակավոր կինոնկարը: Սովետահայ գրականությունը և թատերագիտությունը անդրադարձել և ուսումնասիրել են Սունդուկյանին տասնյակ տարիներ: Վրաց սովետական բանասիրությունը և թատերագիտությունը ստեղծել են հայ դրամատուրգին նվիրված հետազոտություններ: Հաղթահարելով ֆորմալիզմը և վուլգար սոցիոլոգիզմը, սովետահայ գեղարվեստական ու գիտական միտքը Սունդուկյանին արժեքավորեց ըստ ամենայնի: Մերժվեցին և լիբերալ պատմագիտության տեսակետները:

Գաբրիել Սունդուկյանը այսօր ևս կենդանի է, կենդանի որպես գեղագետ, ռեալիստ, ժողովրդային ու դեմոկրատ հեղինակ: Նա սովորեցնում է ճանաչել կյանքը, ներշնչվել կյանքով: Նրա օրինակը ժխտում է ամենայն մոդեռնիզմ ու ձևամոլություն. նրա արվեստը ծառայում է բարձր գաղափարայնության ու վարպետության դրամատուրգիայի ու թատրոնի զարգացմանը: Սունդուկյանը հրաշալիորեն ներդաշնակել է ռեալիզմը հումանիստական աշխարհայեցողության հետ: Մեծ դրամատուրգը հար մարտնչում էր հանուն տիպականության, բնավորությունների կերտման: Նա մեծ հավատ է ունեցել մարդու և ժողովրդի նկատմամբ: Դաժան անցյալում նա տեսել է մարդուն և ժողովրդին ու բերել նրանց բեմ: Հավատարիմ նրա ավանդներին, մենք զարգացնում ենք նոր մարդու պատկերման արվեստը:

ՍՈՒՐԵՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
*Արվեստի վաստակավոր գործիչ*



# Գիտության աշխարհում

Մ. Դ. ՄԻԼԻՈՆՇՉԻԿՈՎ

Ակադեմիկոս, ՍՍՌՄ ԳԱ վիցե-պրեզիդենտ

## ԱՊԱԳԱՅԻ ԷՆԵՐԳԵՏԻԿԱՅԻ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

Հասարակական տեխնիկական պրոգրեսի աստիճանը ընդունված է բնութագրել էներգիայի այն քանակությամբ, որ բաժին է ընկնում հասարակության յուրաքանչյուր անդամին: Այդ չափանիշի մեջ արտացոլվում է ժամանակակից հասարակության զարգացման հիմնական տենդենցը՝ բնության տարերային ուժերի ենթարկումը մարդուն: Գիտության ու տեխնիկայի զարգացման մակարդակից, բնության հիմնական օրենքների իմացության խորությունից կախված է բնության մեջ թաքնված անսպառ էներգետիկ ռեսուրսների օգտագործման աստիճանը:

Չնայած գիտության ու տեխնիկայի զարգացման բնագավառում մինչև 20-րդ դարի երկրորդ քառորդը մարդկության ձեռք բերած բազմակողմանի և զարմանալի նվաճումներին, նա ոչնչով չէր կարող առանձնապես հպարտանալ էներգիայի աղբյուրների ընտրության ասպարեզում: Իրոք, դրանց ճնշող մեծամասնությունն ըստ էության ուներ նույն ծագումը, ինչ-որ նեանդերթալյան մարդու խարույկի ջերմությունը: Որոշ իմաստով, մինչև վերջին տարիներն այդ բնագավառում էներգետիկան մնում էր դեռ բարբարոսությանստադիայում: Եվ նույնիսկ այժմ առաջվա պես էներգիան մենք վերցնում ենք հիմնականում այն հսկայական, բայց ամենևին էլ ոչ անվերջ շտեմարանից, որը երկրի վրա ստեղծվել կամ ստեղծվում է Արեգակի ճառագայթման հաշվին: Այդ շտեմարանն իր մեջ ընդգրկում է այրվող հանածոները, գետերի հոսանքի, քամու և մի շարք այլ աղբյուրների էներգիան: Առայժմ մի կողմ թողնենք էներգիայի այնպիսի աղբյուրները, ինչպես ստորերկրյա ջերմությունը (գեոթերմալ էներգիան) և մակընթացությունների էներգիան, քանի որ նրանց նշանակությունը սահմանափակվում է Երկրի մակերևույթի վրա այդ աղբյուրների պատահական բաշխմամբ:

Բնական աղբյուրները, որոնցից մարդկությունը ստանում է իր օգտագործած էներգիայի հիմնական մասը, իրենց ծագումով պարտական են արեգակնային ճառագայթների ազդեցության տակ Երկրի մակերևույթի վրա ընթացող նազանազան ֆիզիկո-քիմիական պրոցեսներին: Այդ վերաբերում է ինչպես գետերին ու քամիներին, որոնք վերջ ի վերջո, գոյություն ունեն Երկրի մակերեվույթն ու մթնոլորտը Արեգակի միջոցով անհավասարաչափ տաքացնելու շնորհիվ, այնպես և հին օրգանական կյանքի հանածո մնացորդներին (ածուխ, նավթ), որոնց էներգիան ոչ այլ ինչ է, եթե ոչ բույսերի կենսագործունեության հիմքում ընկած և իր ծագումով արեգակնային լույսի էներգիային պարտական ֆոտոսինթեզի ռեակցիայի մնացորդային էներգիա:

Տեսանելի լույսի ազդեցության տակ ընթացող ռեակցիաների պրոդուկտներն ամենից ավելի մատչելի են, բայց էներգապարունակության տեսակետից ամենևին չեն ներկայացնում էներգիայի լավագույն աղբյուրները: Այդ կապված է նրա հետ, որ որևէ պրոցեսի շնորհիվ կուտակվող էներգիայի կոնցենտրացիան կախված է պրոցեսին բնորոշ էներգիայից, իսկ տեսանելի քվանտների ազդեցության տակ ընթացող պրոցեսների էներգիայի մեծությունը համաչափելի է ատոմների էլեկտրոնների էներգիայի հետ և ունի էլեկտրոն-վոլտ միավորների կարգը:

Վիթխարի պրոգրեսը, որ XX դարի գիտությունը ձեռք է բերել նյութի կառուցվածքի ուսումնասիրման, մասնավորապես, ատոմային միջուկների կառուցվածքի և նրանց կազմող մասնիկների փոխազդեցության ուսումնասիրման բնագավառում, մարդկության առջև բացեց որակապես նոր պրոցեսներ, որոնք բնութագրվում են մոտավորապես միլիոն էլեկտրոն-վոլտ էներգիայով: Այսպես կոչված «միջուկների կապի էներգիաները», որոնք ատոմների կապի էներգիայի համեմատությամբ, ունեն այդպիսի հսկայական մեծություն, հաջողվեց առաջին անգամ ազատել ուրանի միջուկային ռեակտորներում և ատոմային ռումբերում:

Իբրև էներգիայի դեռևս հզոր աղբյուր կարող է ծառայել թեթև միջուկների սինթեզի ռեակցիան, որը սովորաբար անվանում են ջերմամիջուկային, քանի որ իր իրագործման համար նա պահանջում է շատ բարձր ջերմաստիճաններ: Նրա պրակտիկ օգտագործումը մարդկությանը կապահովեր էներգիայի գրեթե անսպառ աղբյուրով:

Այսպիսով, էներգիայի միջուկային աղբյուրների սկզբունքային առավելություններից մեկն այն է, որ նրանց մեջ կուտակված էներգիայի կոնցենտրացիան շատ կարգերով գերազանցում է առաջներում մեզ հայտնի աղբյուրների էներգիայի կոնցենտրացիայից:

Բացի դրանից, քանի որ միջուկային ռեակցիաների պրոդուկտների կինետիկ էներգիան միլիոնավոր անգամ գերազանցում է սովորական այրման պրոդուկտների էներգիայից, նրանց օգտագործման ժամանակ կարող են ձեռք բերվել շատ ավելի բարձր ջերմաստիճաններ: Միջուկային վառելիքի այդ հատկությունը էական է այն կապակցությամբ, որ թերմոդինամիկական օրենքների համաձայն, ջերմության որևէ աղբյուրի հաշվին կատարվող օգտակար աշխատանքն այնքան ավելի մեծ է, որքան մեծ է ջերմաստիճանների անկումը և, հետևաբար, աճում է աղբյուրի ջերմաստիճանի բարձրացման ժամանակ:

Վերջին տասնամյակի գիտական ու տեխնիկական նվաճումները հանգեցրին այն բանին, որ միջուկների բաժանման էներգիան արդեն այժմ կարող է էֆեկտիվորեն օգտագործվել որպես էներգիայի հզոր աղբյուր, հատկապես թանկ արժեցող վառելիք ունեցող շրջաններում:

Միջուկային էնրեգիային գործնականորեն տիրապետելու պրոբլեմի նշանակությունը ավելի պարզորոշ է ուրվագծվում, եթե հիշենք, որ մարդկային հասարակության տեխնիկական պրոգրեսը մինչև այժմ հիմնվում էր ժամանակակից տեսակետից էներգիայի խիստ պրիմիտիվ աղբյուրների օգտագործման

վրա։ Իսկ որպիսի՜ զարկ կստանա տեխնիկական քաղաքակրթությունը, եթե մարդիկ կարողանան էֆեկտիվորեն օգտագործել էներգիայի ավելի հզոր աղբյուրը։

Այդպիսին են էներգիայի աղբյուրների օգտագործման վիճակն ու հեռանկարները։ Տեսնենք հիմա, թե ի՞նչ վիճակումն են բնական աղբյուրներից էներգիա արտադրելու եղանակները։

Էներգիայի մեզ հայտնի բոլոր տեսակների մեջ օգտագործման հարմարության իր աստիճանով աչքի է ընկնում էլեկտրական էներգիան։ Բոլոր անհրաժեշտ մյուս ձևերի հեշտությամբ փոխակերպվող էլեկտրաէներգիայի ստացումը ծառայում է իբրև վերջնական նպատակ էներգետիկ պրոցեսների մեծ մասում։ Սակայն այդ նպատակին տանող ճանապարհին ժամանակակից ջերմային էլեկտրակայաններում մինչև այժմ կորչում է վառելիքից սկզբնական ձևով արտազատվող էներգիայի հսկայական քանակությունը (մոտ 60—70%)։

Ո՞ւր է կորչում այդ էներգիան։

Վառելիքի այրման ժամանակ անջատվող էներգիայի մոտ 10%-ը կորչում է այրման բուն պրոցեսում անդառնալի կորուստների և այրման պրոդուկտների թերի պաղեցման պատճառով, մոտավորապես այդքան էլ անհետանում է մեխանիկական կորուստների ու տուրբոգեներատորներում գոլորշու հոսքի էներգիայի թերի օգտագործման հաշվին և ամենից ավելի շատ, մոտ 40—50% կորչում է, այսպես կոչված, թերմոդինամիկական կորուստների հաշվին։

Ինչպես էլ կատարելագործելու լինենք էներգիայի ստացման մեթոդները, այդ վերջին կորուստներից անհնար է ազատվել։ Բանն այն է, որ ամեն մի ջերմության հաշվին չէ, որ մարմինը կարող է օգտակար աշխատանք կատարել։ Աշխատանքի ստացման համար անհրաժեշտ է ջերմությունը հաղորդել մի մարմնից մյուսին, որն ավելի ցածր ջերմաստիճան ունի, քան առաջինը։ Այդ կանոնը, որ թերմոդինամիկայի հիմնական օրենքներից մեկն է, նույնքան ընդհանուր է, ինչպես և էներգիայի պահպանման օրենքը, լուրջ սահմանափակումներ է դնում օգտակար գործողության գործակցի (ստացված աշխատանքի ու ստացված ջերմության հարաբերության) վրա։ Օգտակար գործողության առավելագույն գործակիցը՝ այսպես կոչված Կառնոյի ցիկլի օգտակար գործողության գործակիցը, չի կարող գերազանցել $\frac{T_1-T_2}{T_1}$ մեծությունից, որտեղ $T_1$ և $T_2$, համապատասխանորեն, աշխատանք կատարող մարմնի սկզբնական ու վերջնական ջերմաստիճաններն են (Կելվինի աստիճաններով)։ Դրանցից երևում է, որ էներգիայի փոխակերպման մեթոդը այնքան ավելի էֆեկտիվ կլինի, որքան մեծ է ջերմաստիճանների անկումը և որքան լրիվ է նա օգտագործվում։

Իսկ ինչպիսի՞ ջերմաստիճանային անկումներ են օգտագործվում ժամանակակից ջերմային էլեկտրակայաններում։

Թեև վառելիքների տեսակների մեծ մասի բոցի ջերմաստիճանը ընկած է 1900—2200° դիապազոնում, ժամանակակից լավագույն շոգետուրբիններում աշխատանքային մարմնի (գոլորշու) ջերմաստիճանը 560—580°C-ից չի անցնում։ Քանի որ արդյունաբերական տեղակայումներում մենք չենք կարող սառնարանի ջերմաստիճանը շրջապատող միջավայրի ջերմաստիճանից ավելի ցած



իջեցնել, օգտակար գործողության գործակիցը բարձր չի լինում և 40%-ից չի գերազանցում։ Այդ նշանակում է, որ այրվող վառելիքի կեսից ավելին ծախսվում է աննպատակ կերպով։ Այդ պատճառով շոգետուրբինային ու գազատուրբինային տեղակայումների կատարելագործումը կապված է առաջին հերթին աշխատանքային մարմնի սկզբնական ջերմաստիճանի բարձրացման հետ, այն առավելագույն չափով վառելիքի այրման ջերմաստիճանին մոտեցնելու հետ։

Այդ նկատառումներն էլ որոշում են ժամանակակից «կլասիկ» ջերմաէներգետիկայի զարգացման հիմնական տենդենցները, որոնք ուղղված են էլեկտրակայանների էֆեկտիվության բարձրացմանը, ինչպես ցիկլերը սիստեմատիկաբար բարելավելու, սիստեմի բոլոր էլեմենտների աշխատանքի ռեժիմները ամենաձեռնտու ռեժիմների հասցնելու և մեծ կարողության ագրեգատներ կիրառելու հաշվին, այնպես և «բարձր պարամետրերի» ագրեգատներին անցնելու հաշվին, այսինքն՝ գոլորշու ջերմաստիճանն ու ճնշումը բարձրացնելու հաշվին։ Խոշոր էներգետիկ տեղակայումներում այդպիսի ցիկլերի կիրառումը պահանջում է բազմաթիվ տեխնիկական խնդիրների լուծում, այդ թվում հրակայուն նյութերի ստեղծում, վառելիքի մաքրում, ջրի նախապատրաստում, տուրբինների թիակների պաղեցում։

Բոլոր հիմքերը կան կարծելու, որ հիմնական գիտատեխնիկական խնդիրների հաջող լուծումը թույլ կտա բարձրացնել տեղակայումների օգտակար գործողության գործակիցը մինչև 42—43%։ Այդ նշանակում է, որ 1970 թ. ՍՍՌՄ-ում միայն նման եղանակով տնտեսված վառելիքի հաշվին կարելի է արտադրել այնքան էներգիա, որքան արտադրում են տասնյակ այնպիսի էլեկտրակայաններ, ինչպես Դնեպրի հիդրոէլեկտրակայանը։

Չնայած բոլոր կատարելագործումներին, բարձր ջերմաստիճանների պայմաններում և միաժամանակ մեծ մեխանիկական բեռնավորումների դեպքում աշխատունակ տուրբինների համար նյութեր ստեղծելու հետ կապված դժվարությունններն այնքան մեծ են, որ չի կարելի հույս դնել շոգե-կամ շոգեգազային տուրբոգեներատորներում թերմոդինամիկական կորուստները ամենամոտ ապագայում էապես իջեցնելու վրա։ Ուստի բոցի ջերմաստիճանի և աշխատանքային մարմնի ջերմաստիճանի միջև «պարապ» ջերմաստիճանային անկման օգտագործումը կազմում է էներգետիկայի վիթխարի ռեզերվը։

Տաք գազից իմպուլսը հաղորդվում է տուրբինին գազի ատոմների ու թիակների փոխհարվածումների հաշվին։ Դժվար է թիակները պաղեցնել, քանի որ այդ դեպքում անխուսափելիորեն նվազում է մեխանիկական ամրությունը։ Ուստի ավելի տաք աշխատանքային մարմին օգտագործելու համար անհրաժեշտ է հրաժարվել գազի կինետիկ էներգիան պինդ մարմնին (տուրբինին) հաղորդելու սկզբունքից։ Այդ կարելի է անել, փոխարինելով տուրբինն ու էլեկտրագեներատորը՝ հաղորդող հեղուկ կամ գազակերպ միջավայրով։

Այդպիսի դեպքում որպես էլեկտրաէներգիայի գեներատորի շարժվող էլեմենտ օգտագործվում է անմիջականորեն այն միջավայրը, որի մեջ տեղի է ունենում ջերմության անջատումը, այսինքն՝ բոցը, շիկացած գազերը։ Բարձր ջերմաստիճաններում գազի մոլեկուլները շարժվում են մեծ արագությամբ և նրանց կինետիկ էներգիան բավական է, որպեսզի բախվելիս մոլեկուլները կորցնեն էլեկտրոնների մի մասը և առաջացնեն դրականապես լիցքավորված իոններ։ Այդ դեպքում գազը, որը ցածր ջերմաստիճաններում բաղկացած է չեզոք մոլեկուլներից, փոխարկվում է էլեկտրոնների, իոնների, ինչպես նաև մնա-

ցած չեզոք մոլեկուլների մի մասի խառնուրդի։ Այդ խառնուրդը սովորաբար անվանում են ցածրաջերմաստիճանային պլազմա։ Լիցքավորված մասնիկների (առաջին հերթին էլեկտրոնների) բավարար քանակության դեպքում գազը ձեռք է բերում էլեկտրական հոսանքն անցկացնելու ընդունակություն։

Էլեկտրաէներգիայի սովորական գեներատորներում ծագում է էլեկտրական հոսանք, երբ մետաղե հաղորդիչը շարժվում է մագնիսական դաշտում։ Այդ հաղորդչի դերը կարող է խաղալ նաև ցածրջերմաստիճանային պլազման, եթե նրա հաղորդականությունը բավական մեծ է։ Ջերմային էներգիան էլեկտրականի փոխակերպելու այդ եղանակը կոչվում է մագնիսահիդրոդինամիկական կամ, ավելի ճիշտ, մագնիսագազադինամիկական (ՄԳԴ)։

Խցում գազը ընդարձակվում է (այդ դեպքում նրա ջերմային էներգիան փոխարկվում է կինետիկի), իսկ այնուհետև մագնիսական դաշտում արգելակվում է (այդ դեպքում նրա կինետիկ էներգիան փոխարկվում է էլեկտրաէներգիայի)։ Այդ նման է այն պրոցեսին, որ տեղի է ունենում սովորական տուրբինում, որտեղ գազը ընդարձակվում է տուրբինի ծայրափողակում և կորցնում իր կինետիկ էներգիան, պտտելով տուրբինի ռոտորը։

Քանի որ այրումը, ինչպես և ջերմային էներգիայի փոխակերպումը էլեկտրականի, տեղի են ունենում նոր սխեմայում, տաք միջավայրի կոնտակտը պինդ մարմնի հետ դադարում է սկզբունքային դեր խաղալուց—ՄԳԴ-գեներատորի այրման խցի ու կանալի պատերը կարելի է էֆեկտիվ կերպով պաղեցնել։

Տեսականորեն ՄԳԴ-գեներատորը կարող է ունենալ ինչքան ուզես մեծ չափեր, և այդ դեպքում պատերի պաղեցման պատճառով փոքր է լինում ջերմության կորուստը, քանի որ բավականաչափ մեծ տեղակայումի մեջ կանալի մակերևույթի ու նրա ծավալի հարաբերությունը փոքր է։

Չնայած ՄԳԴ-գեներատորի աշխատանքի սկզբունքի պարզությանը, նրա հուսալի կոնստրուկցիայի իրագործումը կպահանջի հսկայական ծրագրով գիտական հետազոտություններ։

ՄԳԴ-գեներատորի էֆեկտիվությունը կախված է, առաջին հերթին «աշխատանքային մարմնի»՝ ցածրաջերմաստիճանային պլազմայի էլեկտրահաղորդականությունից, ինչպես նաև այն մագնիսական դաշտի լարվածության մեծությունից, որի մեջ նա շարժվում է։ Նույնիսկ առավելագույն ջերմաստիճանում, որը կարելի է ստանալ հանածո վառելիքների այրման միջոցով՝ մոտ 3000°, այրման պրոդուկտները օժտված են աննշան էլեկտրահաղորդականությամբ։ Այդ տեղի է ունենում այն պատճառով, որ այդ ջերմաստիճանում մոլեկուլների կինետիկ էներգիան դեռ զգալիորեն փոքր է էլեկտրոնների կապի էներգիայից։ Բարեբախտաբար, կան Մենդելեևի աղյուսակի առաջին սյունակում գտնվող մի ամբողջ շարք մետաղներ՝ ցեզիում, կալիում, նատրիում, որոնց ատոմները համեմատաբար հեշտությամբ են իոնացվում։ Այդպիսի մետաղներ ավելացնելով սովորական վառելիքների այրման պրոդուկտներին, կարելի է նրանց էլեկտրահաղորդականությունը բարձրացնել տասնյակ հազարավոր անգամ։ Մեկ տոկոս կալիումի ավելացումը մոտ 3000° ջերմություն ունեցող գազին, նրան պիտանի է դարձնում ՄԳԴ-գեներատորում օգտագործելու համար։

Ըստ երևույթին, մագնիսագազադինամիկական սիստեմների կոնստրուկցիաների մշակման ժամանակ ամենալուրջ պրոբլեմներից մեկը նյութերի ընտրությունն է։ Թեև ՄԳԴ-գեներատորում չկան շարժվող կոնստրուկտիվ մասեր,



որոնք աշխատում են բարձր ջերմաստիճանների ու մեխանիկական բեռնավորումների դեպքում (ինչպես այդ կատարվում է սովորական տուրբինում) այնուամենայնիվ շատ խիստ պահանջներ են ներկայացվում այն նյութերին, որոնցից պատրաստվում են խցի պատերը և էլեկտրոդները։ Բոլոր կոնստրուկցիոն նյութերի առավելագույն աշխատանքային ջերմաստիճանները կախված են ոչ միայն նյութի հատկություններից, այլև շրջապատող միջավայրից։ Օրինակ, վոլֆրամի լարը, որը գտնվում է վակուումի մեջ 2200 ջերմաստիճանում, մեկ տարվա ընթացքում իր շառավիղը կպակասեցնի ընդամենը սանտիմետրի հազարերորդական մասով։ Օքսիդացնող մթնոլորտում, օրինակ՝ օդում նույն ջերմաստիճանում նույն լարը գոյություն կունենա ընդամենը մի քանի վայրկյան։ Օդի մթնոլորտում 3400 հալման ջերմաստիճան ունեցող վոլֆրամի աշխատանքային ջերմաստիճանը կկազմի միայն 650։

Համանման թվեր կարելի է բերել նաև մյուս նյութերի համար, բայց բերված օրինակն էլ բավական ակնառու կերպով լուսաբանում է կոնստրուկցիոն նյութերի պրակտիկ աշխատանքային ջերմաստիճանների դիապազոնը։ Այդ պատճառով ՄԳԴ-գեներատորների ստեղծման պրոբլեմի հաջող լուծումը զգալի չափով որոշվում է դժվարահալ ու ջերմակայուն նյութերի առկայությամբ, որոնք օժտված են մի շարք այլ հատկություններով, օրինակ՝ մաքրության բարձր աստիճանով։ Պետք է լուծվեն նույնպես գեներատորի կանալների պատերի էֆեկտիվ պաղեցման պրոբլեմները։

Կանգ առնենք ՄԳԴ-գեներատորների ստեղծման համար արտակարգ կարևոր մի պրոբլեմի վրա ևս, որի վերջնական լուծումը, դժբախտաբար, դեռ հեռու է։ Էֆեկտիվ ՄԳԴ-գեներատորների ստեղծման պայմաններից մեկը 40—1000 հազար էրստեդ լարվածությամբ մեծ ծավալով մագնիսական դաշտերի ստացումն է, քանի որ դրանից է կախված իոնացված գազի արգելակման աստիճանը, հետևաբար՝ գեներատորի էֆեկտիվությունը։ Ժամանակակից տեխնիկայում կիրառվող մեթոդները թույլ են տալիս ստեղծել մագնիսական դաշտեր, որոնց լարվածությունը 25 հազար էրստեդից չի գերազանցում, բայց որոնք այդ դեպքում պահանջում են մեծ քանակությամբ էներգիայի ծախսումներ։ Այդ էներգիան ծախսվում է էլեկտրամագնիսի կոճերի էլեկտրական դիմադրության հաղթահարման վրա։ Ելքը կարող է գտնվել գերհաղորդիչ մագնիսների օգտագործման մեջ։ Բացարձակ զրոյին մոտ ջերմաստիճանում (հեղուկ հելիումի ջերմաստիճանը) շատ մետաղներ՝ անագ, կապար, ալյումին, դառնում են գերհաղորդիչ, այսինքն ձեռք են բերում գործնականորեն առանց կորուստների էլեկտրական հոսանքը բաց թողնելու հատկություն։ Սակայն նույնիսկ համեմատաբար թույլ մագնիսական դաշտը քայքայում է գերհաղորդականությունը։ Ճիշտ է, այժմ գտնվել են համաձուլվածքներ ու միացություններ, որոնք պահպանում են գերհաղորդականությունը մինչև մոտ 100 հազար էրստեդ լարվածությամբ դաշտերում, օրինակ, նիոբիումի, ցիրկոնիումի և անագի համաձուլվածքները։ Սակայն այդ աշխատանքներն առայժմ միայն փոքր չափով են դուրս գալիս լաբորատոր հետազոտությունների շրջանակներից։

Պահանջները մագնիսական սիստեմների նկատմամբ կարելի է թուլացնել, ստեղծելով տուրբինանման մի բան, ստիպելով գոլորշուն մղել ոչ թե պինդ տուրբինը, այլ հեղուկ մետաղը, որը բնականաբար, բարձր ջերմաստիճաններից չի վախենում և որի մեջ մեխանիկական լարումներ չեն ստեղծվում։ Մղված

մետաղն ընկնում է մագնիսական դաշտ, արգելակվում, և նրա մեջ ծագում է էլեկտրական հոսանք: Բայց հուսալիության բարձրացման և մագնիսական դաշտի լարվածության փոքրացման համար մենք ստիպված ենք հատուցել փոխակերպիչի էֆեկտիվության իջեցմամբ, քանի որ գոլորշուց հեղուկ մետաղին էներգիան հաղորդելու պրոցեսում կորուստները նույնիսկ ավելի մեծ են, քան սովորական ջերմային մեքենաներում էներգիան տուրբինին հաղորդելիս: Ներկայումս այդպիսի փոխակերպիչները ենթադրվում է օգտագործել տրանսպորտային սարքերում, միջուկային ռեակտորների հետ զուգակցված, որտեղ կարելի է օգտակար գործողության գործակիցը իջեցնել հուսալիության բարձրացման և մեծածավալ մագնիսական սիստեմների կշռի նվազեցման հաշվին:

Հատուկ նշանակություն ունի ՄԳԴ-գեներատորների ստեղծումը ատոմային էլեկտրակայանների համար, որտեղ ջերմության աղբյուր է ծառայում ատոմային ռեակտորը, իսկ որպես աշխատանքային գազ՝ իներտ գազերից մեկը՝ հելիումը, արգոնը և այլն: Այդպիսի գազի էլեկտրահաղորդականությունը մեծացնելու համար կարելի է օգտագործել, այսպես կոչված՝ «անհավասարակշիռ հաղորդականության» էֆեկտը էլեկտրոնների տաքացման հաշվին, գազի ոչ բարձր ընդհանուր ջերմաստիճանում: Հենց այդ էֆեկտի հաշվին էլ պահպանվում է գազային պարպումը ռեկլամի համար օգտագործվող նեոնյան լամպերում:

ՄԳԴ-գեներատորների ստեղծման հետ կապված հետազոտությունները լայնորեն ծավալվել են մի շարք երկրներում: Սովետական Միությունում աշխատանքներ են տարվում էքսպերիմենտալ կիսաարդյունաբերական ՄԳԴ-գեներատորների ստեղծման ուղղությամբ: Պետք է նկատի ունենալ, որ ՄԳԴ-գեներատորների ստեղծումը ո՛չ միայն խոշոր քայլ է ջերմային էներգիան էլեկտրականի փոխակերպելու սկզբունքորեն նոր մեթոդների մշակման գործում, այլև հանդիսանում է սովորական ջերմային էլեկտրակայանների օգտակար գործողության գործակցի բարձրացման հսկայական ռեզերվ: ՄԳԴ-գեներատորից դուրս եկող տաք, բայց արդեն անհրաժեշտ էլեկտրահաղորդականությունը կորցրած գազը կարող է աշխատել սովորական ցիկլի տեղակայումներում, որոնք բաղկացած են տուրբիններից ու մեքենայական գեներատորներից: Այսպիսով ՄԳԴ-գեներատորի օգտագործման սխեման, համենայն դեպս, ներկայումս հանդիսանում է համակցված և ընդգրկում է էլեկտրական էներգիայի ստացման սովորական մեթոդները, թույլ տալով ջերմային էլեկտրակայանների օգտակար գործողության գործակիցը բարձրացնել մինչև 50 (և նույնիսկ ավելի) տոկոսի: Այդ օգուտը գնահատելու համար բավական է ասել, որ մեր բոլոր ջերմային էլեկտրակայանների օգտակար գործողության գործակցի այդ մակարդակի բարձրացումը 1970 թ. կտար մի աճ, որ հավասար է Սովետական Միության այժմ գործող էլեկտրակայանների կարողության կեսին:

Վերջերս զգալի ուշադրություն է նվիրվում ջերմային էներգիան առանց մեքենայի էլեկտրականի փոխակերպելու ևս մեկ հնարավորության գործնական իրականացմանը վաղուց հայտնի թերմոէլեկտրական էֆեկտի օգտագործմանը: Եթե զանազան հաղորդիչներից կազմված փակ էլեկտրական շղթայի կոնտակտները գտնվում են տարբեր ջերմաստիճանում, ապա շղթայում ծագում է էլեկտրական հոսանք: Բայց, դժբախտաբար, մետաղների բարձր ջերմահաղորդականության հաշվին մատուցվող ջերմության մեծ մասը տաք կոնտակտից գնում է դեպի սառը և այդպիսի կառուցվածքի օգտակար գործողության



գործակիցը կազմում է թերմոդինամիկայի օրենքներով թույլատրելի՝ $\frac{T_1-T_2}{T_1}$-ին հավասար ամենամեծ օգտակար գործողության գործակցի՝ փոքր մասը: Բացի այդ, թերմոէլեմենտում ծագող հոսանքի էներգիայի մի մասը թերմոէլեմենտի ներսում փոխարկվում է ջերմության և նույնիսկ չի կարող օգտագործվել: Այդ հանգեցնում է այն բանին, որ մետաղե թերմոէլեմենտների օգտակար գործողության գործակիցը չի գերազանցում 0,5%-ից, բացառելով այդպիսի կառուցվածքները որպես էլեկտրաէներգիայի գեներատորներ օգտագործելու հնարավորությունը: Փոխակերպման թերմոէլեկտրական մեթոդի մասին հնարավոր դարձավ խոսել միայն կիսահաղորդիչների ֆիզիկայի հաջողությունների կապակցությամբ:

Կիսահաղորդչային թերմոէլեմենտներում հարաբերակցությունը թերմոէլեմենտի ստեղծած էլեկտրաէներգիայի և այն ջերմության միջև, որ կորչում է ջերմահաղորդականության և թերմոէլեմենտի ներսում հոսանքի անջատման միջոցով, շատ ավելի նպաստավոր է, քան մետաղներում: Այդ քանակական տարբերությունը առաջ է բերում նոր քանակական հնարավորություններ: Վերջին տարիներին մշակված բազմազան կիսահաղորդչային նյութերը թույլ են տալիս թերմոէլեկտրական փոխակերպիչների էֆեկտիվությունը հասցնել Կառնոյի ցիկլի օգտակար գործողության գործակցի 18%-ի: Օգտակար գործողության այդ գործակիցը դեռ շատ փոքր է և այն բարձրացնելու համար կպահանջվի զգալի պրոգրես նոր կիսահաղորդչային նյութերի ստեղծման գործում: Այնուամենայնիվ, մեծ պարզության, փոքր չափերի և թերմոէլեկտրական կիսահաղորդչային փոխակերպիչների կայուն աշխատանքի շնորհիվ, կարելի է սպասել, որ նրանք կարևոր տեղ կգրավեն փոքր էներգետիկայում: Ներկայումս արդեն թերմոէլեկտրական գեներատորները որպես էլեկտրաէներգիայի աղբյուր սկսում են լուրջ դեր խաղալ զանազան տեսակի մեկուսացված օբյեկտների համար:

Սովետական Միությունում ստեղծվել է «Ռոմաշկա» առաջին ռեակտոր-փոխակերպիչը, որի մեջ արագ նեյտրոններով աշխատող բարձրաջերմաստիճանային ռեակտորի էներգիան փոխակերպվում է էլեկտրականի՝ սիլիցիում-գերմանիումային կիսահաղորդչային էլեմենտների օգնությամբ: Այդ ռեակտոր-փոխակերպիչը կարող է նախատիպ լինել տրանսպորտային սարքերի էներգետիկ տեղակայումների համար:

Ջերմության այնպիսի բարձր ջերմաստիճանային աղբյուրների երևան գալը, ինչպիսիք են միջուկային ռեակտորները, առաջ բերեց ջերմային էներգիան էլեկտրականի փոխակերպող սարքի ևս մեկ տիպ, այսպես կոչված թերմոէլեկտրոնային կամ թերմոէմիսիոն փոխակերպիչների:

Եթե տարբեր ջերմաստիճանում գտնվող երկու էլեկտրոդների միջև ստեղծենք վակուում, ապա տաք կատոդից գոլորշիացող էլեկտրոնները կկլանվեն սառը անոդի միջոցով և արտաքին շղթայում էլեկտրոդների միջև կծագի էլեկտրական հոսանք: Որոշ իմաստով այդ հիշեցնում է մթնոլորտում ջրի բնական կոնվեկցիան, երբ ավելի տաքացած տեղերում գոլորշիացող ջուրը կոնդենսացվում է ավելի սառը, բայց ավելի բարձր դասավորված տեղերում:

Իր սկզբունքներով այդ արտասովոր պարզ կառուցվածքի իրագործման համար անհրաժեշտ են կատոդներ, որոնք ընդունակ են աշխատելու բարձր ջեր-

մաստիճաններում։ Հետևաբար, կատոդի նյութը պետք է օժտված լինի գոլորշիացման բարձր ջերմաստիճանով, նրա արագ քայքայումից խուսափելու համար։ Այդ հատկությունը, սակայն, սահմանափակում է միաժամանակ կատոդի մակերևույթից գոլորշիացվող էլեկտրոնների հոսանքը քառակուսի սանտիմետրից մոտ 10 ամպեր մեծությամբ։ Այդպիսի գեներատորի էլեկտրական կարողությունը կկազմի քառակուսի սանտիմետրից ընդամենը 10 վատտ, մինչդեռ ջերմային ճառագայթման կարողությունը գրեթե 10 անգամ ավելի մեծ կլինի։ Նույնիսկ անոդների հատուկ կոնստրուկցիաների օգտագործման դեպքում ջերմային հոսքի մեծ մասը աննպատակ կորչում է, որի հետևանքով այդպիսի փոխակերպիչների էֆեկտիվությունը մեծ չէ։

Սակայն հաջողությունները, որոնք ձեռք են բերվել միջուկային ռեակտորների բազմազան տիպերի մշակման գործում, երբ նրանց հետ միասին ամենից ավելի նպատակահարմար է օգտագործել փոխակերպիչի այդ տիպը, արդարացնում են շատ երկրների գիտնականների կողմից թերմոէմիսիոն փոխակերպիչի ստեղծմանը նվիրված ուշադրությունը։

Այդպիսին են ջերմային էներգիան էլեկտրականի փոխակերպելու նոր սխեմաների հիմնական տիպերը։

Նրանց բոլորի մեջ դրված է մի ընդհանուր ձգտում՝ վերացնելով շարժվող էլեմենտները, որոնք աշխատում են բարձր ջերմաստիճանների և մեծ մեխանիկական լարումների պայմաններում, բարձրացնել աշխատանքային ջերմաստիճանների թույլատրելի մակարդակը և էներգետիկ տեղակայումների հուսալիությունը, դրանով իսկ պակասեցնելով նաև ջերմության անդառնալի կորուստները, որոնցով ներկայումս մարդկությունը հատուցում է ջերմային էներգիան ավելի հարմար ձևի՝ էլեկտրաէներգիայի փոխակերպելու համար։

Ուղղակի փոխակերպման գաղափարի կիրառումը չի սահմանափակվում ջերմային էներգիան էլեկտրականի փոխակերպելով, քանի որ գիտության ժամանակակից նվաճումները թույլ են տալիս ռեալ կերպով դնել, օրինակ, էներգիայի այնպիսի տեսակները անմիջականորեն էլեկտրականի փոխակերպելու հարցը, ինչպես քիմիական և Արեգակի ճառագայթման էներգիան։

Ամենից ավելի մշակված են որոշ քիմիական ռեակցիաների էներգիան անմիջականորեն էլեկտրականի փոխարկելու մեթոդները։ Դրա համար օգտագործվում են այսպես կոչված վառելիքային էլեմենտները, որոնք աշխատում են սովորական մարտկոցների սկզբունքով, բայց սկզբնական նյութերի անընդհատ վերականգնման դեպքում։ Չափավոր ջերմաստիճաններում աշխատող այդպիսի կառուցվածքների օգտակար գործողության գործակիցը կարող է հասնել 65—70 տոկոսի։

Նրանց հետագա կատարելագործման, առաջին հերթին տեսակարար կարողության և ծառայության ժամկետի բարձրացման պայմանով, նրանք կարող են իրենց էֆեկտիվությամբ իրավահավասար դառնալ էներգիայի մյուս հայտնի աղբյուրների հետ։ Վերջին տարիներին այդ ուղղությամբ ձեռք բերված պրոգրեսը այնքան նշանակալի է, որ նույնիսկ այդ բնագավառում աշխատող գիտնականներին թույլ է տալիս եզրակացություն անել մեծ էներգետիկայի նպատակների համար քիմիական աղբյուրների օգտագործման հնարավորության մասին։

Մեր մոլորակի էներգետիկ ռեսուրսների մյուս ռեզերվը՝ դա Արեգակի ճառագայթման օգտագործումն է։ Ընդհանուր ձևով այդ պրոբլեմը, ինչպես և



էներգիայի քիմիական աղբյուրների պրոբլեմը, դրվել է շատ վաղուց՝ մի քանի տասնամյակ առաջ։

Բայց միայն ժամանակակից բարձր էֆեկտիվ կիսահաղորդչային ֆոտոէլեմենտների զարգացման գործում տեղ գտած հաջողությունները թույլ տվեցին անցնելու հոսանքի արեգակնային աղբյուրների գործնական կիրառմանը այնպիսի պայմաններում, ինչպես, օրինակ, թռչելու կոսմիկական ապարատներում։ Էներգետիկայի նպատակների համար արեգակնային էլեմենտների կիրառման գործում հիմնական խոչընդոտներ են հանդիսանում նրանց ցածր (10 տոկոսից ոչ ավելի) օգտակար գործողության գործակիցը, նրանց համար անհրաժեշտ նյութերի թանկությունը և Երկրի մակերևույթի վրա ընկնող արեգակնային ճառագայթման փոփոխականությունը։

Գնահատելով էներգետիկայի զարգացման հեռանկարները, որ, ըստ երևույթին, ավելի ու ավելի մեծ չափով կհիմնվի ներմիջուկային փոխարկումների էներգիայի վրա, պետք է մեկ անգամ ևս ընդգծել ջերմային էներգիան անմիջականորեն էլեկտրականի փոխակերպելու կարևորությունը։

Ամենայն հավանականությամբ ապագայի միջուկային կամ ջերմամիջուկային տեղակայումներում խիստ տաքացրած միջավայրի էներգիան անմիջականորեն էլեկտրաէներգիայի փոխակերպելու եղանակը կծառայի իբրև օգտակար էներգիայի ստացման հիմնական մեթոդ։

Ուստի, ուղղակի փոխակերպման մեթոդների բնագավառում աշխատող գիտնականների ջանքերը, որոնք ներկայումս ուղղված են հիմնականում սովորական վառելիքների օգտագործման էֆեկտիվությունը բարձրացնելուն, միաժամանակ հիմքեր են դնում ապագայի էներգետիկայի մեթոդների համար։

«Наука и человечество — 1964».



# ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

## ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅԱՆ ՈՒ ԵԼԱԿԵՏԻ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ[1]

Հ. ՈՒԹՄԱԶՅԱՆ

*Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում արտադրողական ուժերի քանակական աճից բացի, վճռական նշանակություն ունի նաև դրանց որակական փոփոխությունը: Կոմունիզմի նյութատեխնիկական բազան կապիտալիստականից տարբերվելու է ո՛չ միայն քանակական, այլև որակական առումով: Արմատական այդ թռիչքը կարող է կատարվել գիտատեխնիկական նոր ռևոլյուցիայի շնորհիվ:*

*Գիտության ու տեխնիկայի զարգացումն այժմ արդեն ավետում է այդ ռևոլյուցիայի վերահաս ժամանակաշրջանը: Համաշխարհային ասպարեզում կողք-կողքի գոյություն ունեցող սոցիալ-տնտեսական երկու տիպի՝ սոցիալիստական և կապիտալիստական հասարակարգերում միանգամայն տարբեր են գիտատեխնիկական ռևոլյուցիայի իրականացման պայմանները: Կապիտալիստական «արտադրահարաբերությունները չափազանց նեղ են գիտատեխնիկական ռևոլյուցիայի համար: Այդ ռևոլյուցիան իրագործել և հասարակության օգտին նրա պտուղները օգտագործել կարող է միայն սոցիալիզմը» (ՍՄԿԿ ծրագիրը, էջ 32):*

*Գիտատեխնիկական ռևոլյուցիայի բնույթի, էության, իրագործման ձևերի, հնարավորությունների, սոցիալ-տնտեսական հետևանքների և շատ այլ հարցերի շուրջ այժմ բանավեճ է տեղի ունենում՝ Սովետական Միության, սոցիալիզմի լագերի և անգամ համաշխարհային մասշտաբով, և արտահայտվում են բազմաթիվ կարծիքներ: «Ժամանակակից գիտատեխնիկական ռևոլյուցիայի պրոբլեմների մասին» թեմայով, 1964 թվականի սկզբներին, բանավեճ եղավ Մոսկվայում, որ կազմակերպել էր ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի բնական գիտությունների և տեխնիկայի ինստիտուտը (բանավեճի արդյունքների մասին հաղորդումը տե՛ս «Вопросы философии» 1964, № 9): Վիճարկվող հարցերից մեզ հետաքրքրում են երկուսը՝ գիտատեխնիկական ռևոլյուցիայի բովանդակությունն ու դրա ելակետի հարցը:*

*Այդ բանավեճի ընթացքում գիտատեխնիկական ռևոլյուցիայի բովանդակության մասին այն կարծիքն արտահայտվեց, թե դա գիտության առումով նշանակում է գիտության վերածումը հասարակության անմիջական արտադրողական ուժի, իսկ տեխնիկայի առումով՝ արտադրության եղանակը փոխելու համար անհրաժեշտ տեխնիկական միջոցների ստեղծում: Ընդ որում, տեխնիկական միջոցներ ասելով նկատի են առնվում միայն աշխատանքի մեխանիկական միջոցները:*

*Այս բնորոշումը, ըստ մեզ, թերի է:*

1 Տպագրվում է հարցադրման կարգով: Խմբ.:



*Նախ՝ մեր կարծիքով, ոչ թե գիտությունն ինքն է, որպես այդպիսին, վերածվում արտադրողական ուժի, այլ նրա նվաճումների ներդրումը արտադրության մեջ: Կասկածից վեր է, որ գիտությունը հասարակական գիտակցության ձև է և, որպես այդպիսին, վերնաշենքային կատեգորիա է: Բնական գիտությունները (և ոչ միայն դրանք) օբյեկտիվ ռեալության՝ մատերիայի շարժման տարբեր ձևերի օրինաչափությունների իմացաբանական արտացոլումն են մարդու ուղեղում: Գիտությունը թափանցում է բնության գաղտնիքների մեջ և ինչքան խորանում է, այնքան մարդիկ ավելի լայն են ըմբռնում օբյեկտիվ օրինաչափությունները:*

*Բայց գիտության զարգացումն ինքնանպատակ չէ: Մարդկությունն այն ծառայեցնում է իր նյութական արտադրությանը: Մարդկային հասարակության ամբողջ պատմության ընթացքում գիտությունն ուղեկցել է նյութական կյանքի արտադրության և արտադրողական ուժերի զարգացմանը, այն առարկայացել ու իրայնացել է դրանց մեջ՝ համապատասխան իր զարգացման աստիճանի: Գիտության ու արտադրության կապը առավել սերտացավ կապիտալիստական արտադրաեղանակի ձևավորման շրջանում, երբ, հատկապես, բնագիտության նվաճումների հիման վրա աշխատանքի միջոցի հին պարզ արհեստային գործիք ձևը վերածվեց նոր, առավել արտադրողական մեքենա ձևին, ստեղծվեց մեքենական խոշոր արդյունաբերությունը, որը և դարձավ արդյունաբերական հեղաշրջման հիմքը (XVIII դարում):*

*Հետագայում և, հատկապես, XX դարում բնագիտությունը կատարեց մեծագույն հայտնագործություններ, ստեղծվեցին բնական ու տեխնիկական գիտությունների նոր ու նորագույն ճյուղեր (ռադիոէլեկտրոնիկա, կիբեռնետիկա, բիոքիմիա, բիոֆիզիկա, պոլիմերային քիմիա, էլեկտրոնիկա և այլն), որոնց նվաճումները լայնորեն կիրառվում են արտադրության մեջ: Առավել սերտ կապ է ստեղծվել գիտության, տեխնիկայի ու արտադրության միջև, որոնց զարգացումը փոխադարձաբար պայմանավորված է միմյանցով:*

*Գիտության նվաճումներն արտադրողական ուժի են վերածվում հետևյալ ուղիներով: Նախ՝ գիտության տվյալների բազմակողմանի կիրառման շնորհիվ փաստորեն հեղաշրջում է կատարվում աշխատանքի միջոցների կառուցվածքի մեջ: Ո՛չ միայն կատարելագործվում են աշխատանքի մեխանիկական միջոցները՝ փոխվում է դրանց կոնստրուկցիան, թեթևանում ու առավել արտադրողական են դառնում, այլև ստեղծվում են ավտոմատ մեքենաներ, ավտոմատ գծեր ու սարքեր, կառավարող ու կարգավորող բազմատեսակ հարմարանքներ, էլեկտրոնային ու հաշվիչ մեքենաներ, որոնք առանց մարդու անմիջական մասնակցության կարգավորում ու կառավարում են արտադրության պրոցեսները: Մարդը դրանով իսկ մեքենային միացնում է չորրորդ մասը (օղակը) և նրան հանձնում արտադրության պրոցեսները կառավարելու ու կարգավորելու ֆունկցիան:*

*Բայց գիտության նվաճումները ոչ միայն իրայնանում ու առարկայանում են աշխատանքի մեխանիկական միջոցների մեջ, այլև, ինչպես կտեսնենք ստորև, դրանք այժմ արդեն իսկ վեր են ածվում նաև տեխնոլոգիական պրոցեսների: Այդ նշանակում է, որ գիտության տվյալներն ուղղակիորեն ազդում են աշխատանքի առարկայի վրա ու փոփոխում այն, դրանով իսկ դառնալով աշխատանքի միջոց:*

*Գիտության տվյալները մեծ ազդեցություն են գործում նաև աշխատանքի առարկաների զարգացման վրա: Մի կողմից՝ գիտության շատ ճյուղեր (գեոլոգիան, գեոֆիզիկան, գեոքիմիան, հանքաբանությունը և այլն) լարված ուսումնասիրում են բնությունը, որոնում ու հայտնաբերում են էներգիայի ու նյութերի նոր աղբյուրներ, մշակում դրանց օգտագործման մեթոդները և օգնում ա[…]տադրողական ուժերի ճիշտ տեղաբաշխմանը, մյուս կողմից՝ ստեղծում են (հատկապես պոլիմերային քիմիան) այնպիսի նոր նյութեր, որոնք չկան բնության մեջ: Դրանով իսկ արտադրությունը ժամանակի ընթացքում մեծապես կազատվի բնությունից՝ հումքի բնական պաշարից ունեցած կախվածությունից:*

Այնուհետև, գիտության տվյալները վեր են ածվում հասարակական արտադրության կազմակերպման, կառավարման, ամբողջ հասարակական կյանքի ղեկավարման գիտական հիմքի։ Ընդ որում, այդ գործում բնական գիտությունների հետ միասին որոշիչ դեր են խաղում նաև հասարակական գիտությունները և, հատկապես, տնտեսագիտությունը։ Ժամանակակից բազմաճյուղ ու ծավալուն արդյունաբերության պլանավորումը, ժողովրդական տնտեսության օպտիմալ համամասնությունները սահմանելու, տեխնոլոգիական բարդ պրոցեսները կազմակերպելու ու ղեկավարելու մեծ ու դժվարին խնդիրներն անհնարին է լուծել առանց գիտության ու տեխնիկայի նորագույն ճյուղերի՝ ռադիոէլեկտրոնիկայի, հեռուստամեխանիկայի, էլեկտրաէներգիայի, տնտեսական գիտությունների նվաճումների կիրառման։ Մարդու բնական կարողություններն ի վիճակի չեն կատարելու վիթխարի չափերով աճած ու բարդացած գիտատեխնիկական հաշվումները, կազմակերպելու տեխնիկատնտեսական ինֆորմացիաների ստացումը և այլն։ Այդ ամենը մարդն իրագործում է՝ կիրառելով կառավարման նոր, ժամանակակից տեխնիկական միջոցներ, ամեն կարգի «խելացի» սարքեր ու հարմարանքներ, մաթեմատիկական, քիմիական, բիոլոգիական մեթոդներ։

Եվ, վերջապես, գիտության տվյալները ներազդում են բուն արտադրողների վրա։ Դրանք հարստացնում են մարդու էմպիրիկորեն ձեռք բերած փորձը, հմտությունը, արտադրական գիտելիքներն ու աշխատանքային ունակությունները, բարձրացնում կուլտուր-տեխնիկական մակարդակը, մասնագիտական որակավորումը։ Գիտության տվյալներով զինված մարդը դառնում է ավելի գործունյա ու ձեռներեց։

Արտադրողական ուժերի գլխավոր տարրի՝ աշխատավորների զարգացման գործում իրենց մեծ լուման ունեն նաև մարքսիստական հասարակական գիտությունները, որոնք կոմունիզմի կառուցման, մարդկանց կոմունիստական աշխարհայացքի ձևավորման գիտական հիմքն են, բնական գիտությունների ըմբռնման տեսական բանալին ու դրանց զարգացման մեթոդոլոգիան։ Հասարակական գիտություններն ամենից առաջ մարդուն զինում են նյութական արտադրության ու հասարակական կյանքի զարգացման օրինաչափություններն ըմբռնելու կարողությամբ, նրան դարձնում նպատակասլաց, կրթված ու դաստիարակված մարդ և դրանով իսկ օգնում նրա մասնագիտական գիտելիքների խորացմանը։

Այսպիսով, գիտության նվաճումները կիրառվելով նյութական արտադրության մեջ առարկայանում ու իրայնանում են աշխատանքի միջոցների, առարկաների, տեխնոլոգիական պրոցեսների, աշխատանքի և արտադրության կազմակերպման ու կառավարման մեթոդների, արտադրողների արտադրական հմտությունների, փորձի ու գիտելիքների մեջ։ Այդ ամենը որոշակի իմաստով բնության օրինաչափությունների իրայնացած ձևերն են, առարկայացած գիտելիքներ, գիտության հայտնագործումների մարմնացում։ Եվ դրանով իսկ գիտության այդ նվաճումները վեր են ածվում արտադրողական ուժի։ Զարգացման այժմյան էտապում գիտության հայտնագործություններն առավել շատ են ներգրավվում արտադրության մեջ, հատկապես, սոցիալիստական հասարակարգում, ուր դրա համար, ի տարբերություն կապիտալիզմի, կան բոլոր պայմանները։

Բայց գիտության որոշ տվյալներ ու հիպոթեզներ անմիջականորեն, կամ ընդհանրապես չեն կիրառվում արտադրության մեջ, ուստի դրանք արտադրողական ուժ չեն։ Եվ, ընդհանրապես, գիտությունը, որպես հասարակական գիտակցության ձև, ինքնին արտադրողական ուժ չէ։ Այն արտադրողական ուժի է վերածվում, երբ նրա նվաճումները կիրառվում են արտադրության մեջ և մարմնավորվում արտադրողական ուժերի հիմնական տարրերի մեջ։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը զուգընթաց, առավել ևս ապագա կոմունիզմի ժամանակ, գիտության տվյալներն ավելի լայնորեն կկիրառվեն արտադրության մեջ, որի շնորհիվ գիտությունն ավելի լայն չափով կդառնա արտադրողական ուժ։ Մեր կարծիքով, միայն այս առումով պետք է հասկանալ



ՍՄԿԿ ծրագրի այն դրույթը, թե զարգացումը կհասցնի այն բանին, որ «գիտությունը լրիվ չափով կդառնա անմիջական արտադրողական ուժ»։

Երկրորդ՝ գիտատեխնիկական ռևոլյուցիայի վերոհիշյալ բնորոշմամբ, ինչպես արդեն նշվեց, «տեխնիկա» հասկացության մեջ մտցվում են միայն աշխատանքի մեխանիկական միջոցները։ Ինչ խոսք, որ աշխատանքի միջոցները տեխնիկայի էական մասն են, բայց դրանք չեն սպառում այդ հասկացության բովանդակությունը։

— «Տեխնիկան» հին հունարեն բառ է և սկզբնական շրջանում նշանակել է վարպետություն, որևէ բան կատարելու արվեստ, հմտություն։ Հետագայում, մեքենական արտադրության զարգացման շրջանում, մեքենան փոխարինում է մարդու բնական արտադրողական օրգաններին՝ ձեռքերին, ոտքերին, այսինքն՝ բանվորների փոխարեն մեքենաներն սկսեցին գործիքներ բանեցնել։ Դրա հետևանքով «տեխնիկա» բառի իմաստը ևս փոխանցվում է մեքենաներին։ Մարքսը նշում է, որ «աշխատագործիքների հետ միասին այն բանեցնելու վիրտուոզությունը ևս բանվորից անցնում է մեքենային» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 440)։ Ուստի մեքենաներն ու սարքավորումները «տեխնիկա» անվանելը հետևանք է այն բանի, որ գործիքները բանեցնելու վարպետությունը, հմտությունը բանվորից անցնում է մեքենաներին ու սարքավորումներին։

Այսպիսով, «տեխնիկա» բառի իմաստը աստիճանաբար լայնանում է։ Ուշագրավ է, որ այժմ էլ «տեխնիկա» բառը գործ է ածվում երկու իմաստով՝ ա) մեքենաների, սարքերի և ընդհանրապես աշխատամիջոցների ամբողջություն. բ) ինչ-որ գործ, աշխատանք կատարելու ժամանակ կիրառվող ձևերի, եղանակների, մեթոդների, հմտության ու վարպետության ամբողջություն։

«Տեխնիկա» բառի իմաստը լայնանում է նաև արտադրության զարգացման արդի էտապում։ Մարդն այժմ աշխատանքի առարկայի վրա ներգործում է նաև առանց աշխատանքի մեքենամիջոցի, ուղղակի էներգիայի, քիմիական ու բիոլոգիական ռեակցիաների միջոցով։ Իրավացի է նշում Կուրտ Տեսմանը, որ գնալով մեծանում են բիոտեխնիկայի, քիմիատեխնիկայի, էներգատեխնիկայի (էներգիայի միջոցով ներգործելու իմաստով) և արտադրական այլ մեթոդների դերը, արտադրության առարկայական միջոցների (աշխատանքի միջոցներով կատարվող արտադրության) հետ համեմատած (տե՛ս «Вопросы философии» 1964, № 11, 178—179, նաև М. Саков, Материально-техническая база коммунистического общества, «Коммунист», 1961, № 12, стр. 63)։ Այդ կարգի մեթոդներ են՝ անմեքենա գեներատորների օգտագործումը, ածխի ստորերկրյա գազի վերածումը, էլեկտրալիզները, մետաղների էլեկտրակայծային մշակումը, նյութերի քիմիական մշակումը, տեխնոլոգիական պրոցեսների համար ուլտրաձայնի, ուլտրամանուշակագույն ճառագայթների, ֆոտոսինթեզի օգտագործումը։ Տեխնիկայի են վերածվում էլեկտրաէներգիան և հիշյալ տեխնոլոգիական մեթոդները։

Այս բանից հետո, ըստ մեզ, գիտատեխնիկական ռևոլյուցիայի բնորոշման բովանդակությունը պետք է ընդլայնվի։ Այդ ռևոլյուցիայի էությունն է՝ գիտության հետագա բուռն զարգացումը և դրա նվաճումների կիրառումը արտադրության մեջ. գիտական այդ տվյալների հիման վրա աշխատանքի միջոցների զարգացումը, ընդ որում, թե մեխանիկական միջոցների զարգացումը (ավտոմատ մեքենաների սիստեմի ստեղծում ) և թե անոթային ու ընդհանրական միջոցների զարգացումը. աշխատանքի առարկաների բազմապատկումը, արհեստական ու սինթետիկ նոր նյութերի ստեղծումը. որպես աշխատանքի միջոց տեխնոլոգիական պրոցեսների օգտագործման ոլորտի ընդլայնումը. արտադրության կազմակերպման ու կառավարման մեթոդների կատարելագործումն ու զարգացումը. արտադրողների արտադրական հմտության, գիտելիքների հարստացումն ու նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումը։

Որոշակի հետաքրքրություն է ներկայացնում և այն հարցը, թե գիտատեխնիկական ռևոլյուցիայի և ընդհանրապես կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում՝ արտադրողական ուժերի նյութական տարրերից

(նյութ, էներգիա, աշխատանքի միջոց) որի՞ն է պատկանում առաջնությունը, ելակետային դերը: Ի դեպ, այս հարցը գիտական կարևորություն է ստանում ու բանավեճի առարկա է դառնում բեկումնային դարաշրջանում: Այն վեճի առարկա էր կապիտալիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման դարաշրջանում, այդպիսին է նաև այժմ՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման նախօրեին:

Այդ հարցի պարզաբանումն ունի տեսական ու գործնական նշանակություն: Միայն դրա պարզաբանմամբ է հնարավոր կողմնորոշվել, թե ո՞րն է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և գիտատեխնիկական ռևոլյուցիայի իրականացման առաջատար օղակը:

Գրականության մեջ այժմ արտահայտվում է երեք տեսակետ, որոնցից յուրաքանչյուրը գիտատեխնիկական արդի ռևոլյուցիայի մեջ ելակետային առաջնությունը տալիս է արտադրության նյութական տարրերից մեկին ու մեկին՝ աշխատանքի միջոցին, նյութին կամ էներգիային: Հայտնվում է նաև այն կարծիքը, թե իբր միշտ ելակետը եղել են «աշխատանքի գործիքները» (տե՛ս Ա. Առաքելյան, Գիտատեխնիկական հեղափոխության պրոբլեմները ՍՍՌՄ-ում, «Հայաստանի ժողովրդական տնտեսություն» 1964, № 5, էջ 3—5):

Տվյալ հարցի լուծման ճիշտ մեթոդոլոգիան տվել է Մարքսը: Ելնելով այն փաստից, որ պատմականորեն զարգացող ու անցնող արտադրության եղանակները, ինչպես նաև արդյունաբերական դասակարգերն իրենց շահերով ու ձգտումներով եղել են տարբեր, Մարքսը նկատել է, որ տնտեսական տարբեր դարաշրջաններում արտադրողական ուժերի զարգացման ելակետը տարբեր է եղել: Նա երբեք չի պնդել, որ տնտեսական բոլոր դարաշրջաններում արտադրության եղանակի հեղաշրջման ելակետը եղել են «աշխատանքի գործիքները»: Ընդհակառակը, նա ցույց է տվել, որ զարգացման տարբեր, իրար հաջորդող դարաշրջաններում հեղաշրջման ելակետը հաջորդաբար եղել է աշխատանքի նյութը, ուժը (էներգիան) և աշխատանքի միջոցը (բայց ոչ «գործիքները»), պատմական հաջորդականությունն այսպիսին է՝ նախապատմական դարաշրջաններում ելակետը եղել է նյութը, մանուֆակտուրայի մեջ՝ ուժը (էներգիան), խոշոր մեքենական արդյունաբերության մեջ՝ աշխատանքի միջոցը (մեքենան): Ահա թե ինչ է ասել Մարքսը այդ մասին. «... գոնե նախապատմական ժամանակները շրջանների են բաժանվում բնագիտական ու ոչ թե, այսպես կոչված, պատմական հետազոտությունների հիման վրա, ըստ գործիքների ու զենքերի նյութի՝ քարե դար, բրոնզե դար, երկաթե դար» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 191: Ընդգծումը մերն է—Հ. Ու.): «Մանուֆակտուրայի մեջ արտադրության եղանակի հեղաշրջման ելակետ է ծառայում աշխատանքի ուժը, իսկ խոշոր արդյունաբերության մեջ՝ աշխատանքի միջոցը» (Նույն տեղում, էջ 390: Ընդգծումը մերն է— Հ. Ու.)

Արտադրության եղանակի հեղաշրջման ու տեխնիկական ռևոլյուցիայի ելակետի հարցը որոշելիս չպետք է երկու բան շփոթել իրար հետ. մի բան է տնտեսական դարաշրջանները միմյանցից տարբերելու գործում աշխատանքի միջոցների ունեցած վճռական նշանակությունը, այլ բան է արտադրության եղանակների հեղաշրջման ելակետի բնորոշումը: Ինչ խոսք, որ աշխատանքի միջոցները տնտեսական դարաշրջաններն իրարից տարբերելու գործում ունեն մեծ նշանակություն և կազմում են մարդկային աշխատուժի զարգացման չափանիշն ու արտադրահարաբերությունների ցուցանիշը. բոլոր դարաշրջաններում էլ տեխնիկական առաջադիմության իմաստը, վերջին հաշվով, աշխատանքի միջոցների փոփոխումն է: Ելակետի խնդիրը հարցի այս կողմին չի վերաբերում, այլ այն բանին, թե աշխատանքի գոյություն ունեցող միջոցների զարգացումը ինչո՞վ է խթանվում, ո՞րն է այդ խթանիչ ուժը: Այդ առումով մոտենալիս տեսնում ենք, որ առաջադիմության ելակետը միշտ չէ, որ աշխատանքի միջոցներն են: Դրանք եղել են նաև պահպանողական և չեն ծառայել որպես առաջադիմության ելակետ:

Հասարակության զարգացման սարին աստիճաններում, ընդհուպ մինչև մանուֆակտուրային արդյունաբերության շրջանը, մարդիկ որպես աշխատանքի միջոց, հազարամյակներ շարունակ օգտագործել են արհեստային պարզ գործիքներ, որոնք օգտագործվել են բացառապես մարդու մկանային ուժի միջոցով և այդ պատճառով էլ չեն դարձել առաջադիմության ելակետ:



Խոսելով աշխատանքի մանուֆակտուրային բաժանման մասին արհեստանոցի ներսում և հասարակության մեջ, որը հենվում էր բացառապես մարդու մկանային ուժի վրա, Մարքսը գրել է. «Քանի դեռ արհեստն ու մանուֆակտուրան կազմում են հասարակական արտադրության ընդհանուր հիմքը, արտադրողի ենթարկումը արտադրության բացառապես մի որոշ ճյուղին, նրա զբաղմունքների սկզբնական բազմազանության խորտակումը զարգացման անհրաժեշտ մոմենտն է: Հիշյալ հիմքի վրա արտադրության ամեն մի առանձին ճյուղ էմպիրիկ ճանապարհով գտնում է իրեն համապատասխանող տեխնիկական կառուցվածքը, դանդաղ կատարելագործում է այն և արագ բյուրեղացնում, հենց որ ձեռք է բերված հասունության որոշ աստիճան: Ժամանակ առ ժամանակ տեղի են ունենում փոփոխություններ, որոնք առաջ են գալիս, բացի առևտրի մատակարարած նոր աշխատանյութից, աշխատանքի գործիքի աստիճանական փոփոխությունից: Բայց երբ արդեն էմպիրիկ կերպով գտնվել է գործիքի համապատասխան ձևը, քարանում է նաև աշխատանքի գործիքը, ինչպես այդ ցույց է տալիս դրա հաճախ հազարամյակներ տևող անցումը մեկ սերնդի ձեռքից մի ուրիշ սերնդի ձեռքը» (Կ. Մարքս, Կապիտալ հ. 1, էջ 509—510: Ընդգծումը մերն է— Հ. Ու.): Խոշոր արդյունաբերությունը, ասում է Մարքսը շարունակության մեջ, պատռեց աշխատանքի բաժանման այդ քողը և սահմանեց նոր սկզբունք՝ արտադրության ամեն մի պրոցես տրոհել իր բաղկացուցիչ տարրերի, առանց նկատի ունենալու մարդկային ձեռքը, նրա մկանների ուժը և դրանով իսկ առաջ բերեց տեխնոլոգիայի ամբողջ արդի գիտությունը: Ուստի «Արդի արդյունաբերությունը (խոշոր արդյունաբերությունը— Հ. Ու.) արտադրության պրոցեսի գոյություն ունեցող ձևը երբեք չի դիտում ու մեկնաբանում որպես վերջնական ձև: Այդ պատճառով նրա տեխնիկական բազիսը ռևոլյուցիոն է, մինչդեռ արտադրության բոլոր նախկին եղանակների բազիսը ըստ էության պահպանողական էր» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 510: Ընդգծումը մերն է— Հ. Ու): Ավելին, Մարքսը նշում է, որ մանուֆակտուրային շրջանում, եզակի դեպքերում դրանից էլ առաջ, գործիքները զարգանալով, դառնում էին մեքենաներ, բայց արտադրության եղանակը չէին հեղափոխականացնում, նույնիսկ մանուֆակտուրայի ժամանակաշրջանում (XVII դարի վերջին) հնարված շոգեմեքենան, ընդհուպ մինչև արդյունաբերական հեղաշրջումը (XVIII դարի 80-ական թվերը), «արդյունաբերական ոչ մի ռևոլյուցիա առաջ չբերեց» (Նույն տեղում, էջ 394: Ընդգծումները մերն են— Հ. Ու.): Բայց աշխատանքի միջոցը ռևոլյուցիոնացնող նշանակություն է ձեռք բերում, երբ պարզ արհեստային գործիքի փոխարեն տիրապետող են դառնում աշխատամեքենաները: Շարունակելով իր միտքը՝ Մարքսը նշել է. «ընդհակառակը, հենց աշխատամեքենաներ ստեղծելն անհրաժեշտ դարձրեց ռևոլյուցիան շոգեմեքենայի մեջ» (Նույն տեղում, էջ 394):

Մարքսը խոշոր որակական տարբերություն էր տեսնում պարզ արհեստային գործիքի և աշխատամեքենայի միջև: Պարզ արհեստային գործիքը նա համարում էր նախակապիտալիստական տնտեսակարգերին հատուկ, իսկ աշխատամեքենան՝ կապիտալիստական տնտեսակարգին հատուկ աշխատամիջոց: Մարքսն էր այն իմաստուն տնտեսագետը, որ ելնելով պատմական այդ մեծ թռիչքից և կապիտալիստական խոշոր արտադրության եղանակի ու բուրժուազիայի առանձնահատկություններից, նկատեց, որ արտադրության այդ եղանակի մեջ առաջընթացի ելակետը դարձել է աշխատանքի միջոցը՝ մեքենան: Եվ այդ դիրքերից էլ Մարքսը պայքարեց բոլոր նրանց դեմ, ովքեր իներցիայի ուժով շարունակում էին մեքենական խոշոր արտադրության մեջ ևս հեղաշրջման ելակետը համարել ուժը (էներգիան):

Այս կապակցությամբ հարկ է վերհիշել նաև, որ տարբեր դարաշրջանների տեխնիկական բազիսի ռևոլյուցիոն կամ պահպանողական լինելը կախված է ոչ այնքան այդ բազիսից, որքան արտադրության ձևից ու եղանակից և արդյու-

նաբերող դասակարգերի սոցիալական գոյավիճակից ու ձգտումներից: Խոշոր արդյունաբերության սկզբունքն է՝ արտադրության ամեն մի պրոցես տրոհել բաղկացուցիչ տարրերի, անընդհատ փոփոխել արտադրության ձևը, տեխնոլոգիան ու աշխատանքի միջոցները, մինչդեռ հասարակական արտադրության նախորդ ձևերը, որոնց ընդհանուր հիմքը կազմում են արհեստն ու մանուֆակտուրան, տարերայնորեն ծնում են արտադրության առանձնացած ճյուղեր ու դրանց համապատասխան գործիքներ և դրանք քարացնում ու անփոփոխ պահպանում են հազարամյակներ շարունակ (տե՛ս, Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 509—511): «Բուրժուազիան չի կարող գոյություն ունենալ առանց անընդհատ հեղաշրջումներ առաջացնելու արտադրության գործիքների մեջ, հետևաբար և առանց ռևոլյուցիոնացնելու արտադրական հարաբերությունները, ուրեմն և հասարակական հարաբերությունների ամբողջությունը: Ընդհակառակը, «բոլոր նախկին արդյունաբերական դասակարգերի գոյության առաջին պայմանը կազմում էր արտադրության հին եղանակի անփոփոխ պահպանումը» (նույն տեղում, էջ 510: Ընդգծումը մերն է— Հ. Ու., համեմատել Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Կոմունիստական պարտիայի մանիֆեստը, էջ 47):

Արտադրության եղանակի հեղաշրջման և տեխնիկական առաջադիմության ելակետի հարցը լուծելիս պետք է նկատի ունենալ նաև, որ արտադրության եղանակի հեղաշրջումը, վերջին հաշվով, տեղի է ունենում ոչ թե «ելակետ ծառայող» տարրերի փոփոխումից միայն, այլ արտադրողական ուժերի նյութական բոլոր տարրերի փոփոխման, դրանց ամբողջության հեղափոխականության շնորհիվ: Մարքսը արտադրության հասարակական եղանակի հեղաշրջումը համարում է «արտադրության միջոցների փոխակերպության... անհրաժեշտ արդյունքը» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 496: Ընդգծումը մերն է— Հ. Ու.) և ոչ թե միայն աշխատանքի միջոցների (առավել ևս ոչ թե գործիքների) փոխակերպության արդյունքը: Զարգացումն սկսելով արտադրողական ուժերի մեկ տարրից, որին Մարքսը ոչ պատահականորեն «ելակետ» է անվանել, անմիջապես տարածվում է նաև մյուս տարրերի վրա և այդպիսով շարժվում ու փոփոխվում է արտադրողական ուժերի նյութական մասի ամբողջությունը, որն, իր հերթին, փոփոխում է նաև նրա կենդանի տարրի, արտադրողների կուլտուր-տեխնիկական մակարդակը: Արտադրողական ուժերն, ամբողջությամբ վերցրած, դառնում են արտադրության շարժուն և ռևոլյուցիոն մասը, որոնք հեղաշրջման առաջ են կանգնեցնում հասարակության ամբողջ կացութաձևը:

Շոգին ու մեքենաները, նշել են Մարքսն ու Էնգելսը, ռևոլյուցիա առաջացրին արդյունաբերական արտադրության մեջ, մանուֆակտուրայի տեղը գրավեց խոշոր արդյունաբերությունը: Ֆեոդալական գույքային հարաբերություններից բուրժուական հարաբերություններին, իսկ վերջինից էլ սոցիալիստականին անցնելու անխուսափելիության հիմքը արտադրական հարաբերությունների և արտադրողական ուժերի (ամբողջության և ոչ թե մեկ տարրի) միջև զարգացման ընթացքում առաջացող անհամապատասխանությունից ծագող կոնֆլիկտն է, որը լուծվում է ռևոլյուցիայով (տե՛ս Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Կոմունիստական պարտիայի մանիֆեստը, 1938, էջ 44, 50—52):

Այսպիսով, ակնհայտ է, որ ըստ Մարքսի նախակապիտալիստական արտադրության եղանակներում աշխատանքի միջոցը եղել է պահպանողական և դրանց հեղաշրջման ելակետը չի ծառայել: Այն ելակետ է դառնում միայն կապիտալիստական խոշոր մեքենական արտադրության մեջ, երբ դրա հին՝ պարզ արհեստային «գործիք» ձևը վեր է ածվում «աշխատամեքենա» ձևի: Հետևապես, մարքսիստական մեթոդոլոգիայի համաձայն տնտեսական բոլոր դարաշրջաններում արտադրության եղանակի հեղաշրջման ելակետը արտադրողական ուժերի միայն մեկ տարրը՝ աշխատանքի միջոցները չեն եղել: Այդպիսիք եղել են նաև արտադրողական ուժերի այլ տարրերը:

Ղեկավարվելով մարքսիստական այս մեթոդոլոգիայով և հաշվի առնելով արդյունաբերության ու տեխնիկայի զարգացման ժամանակակից նվաճումնե-



րը, կարելի է որոշակիորեն նշել, թե ինչը կլինի արտադրության արդի եղանակի հեղաշրջման ելակետը:

Եթե ընդունենք, որ ապագայում, կոմունիզմի ժամանակ, արտադրության. աշխատանքի միջոցները պետք է լինեն միայն մեքենաների ավտոմատ սիստեմը, ապա իրոք որ արտադրության արդի եղանակի հեղաշրջման ելակետը կարող է լինել միայն ժամանակակից աշխատամիջոցի (մեքենայի) զարգացումը՝ եռամաս մեքենայից քառամաս մեքենաներին անցնելը, այսինքն՝ մեքենաների ավտոմատ սիստեմ ստեղծելը: Աշխատանքի միջոցների այդ որակական նոր մակարդակն էլ կոմունիզմի տնտեսական դարաշրջանը կտարբերի կապիտալիզմի դարաշրջանից:

Բայց արտադրողական ուժերի ժամանակակից զարգացումը որոշակի կռվաններ է տալիս պնդելու, որ մարդու նպատակահարմար գործունեությունը աշխատանքի առարկաներին հաղորդելու դերը աշխատանքի ժամանակակից մեքենական միջոցների մենաշնորհը չէ: Ժամանակակից արտադրության մեջ նման դեր կատարում են նաև էներգիան, քիմիան, բիոլոգիան և այլն:

Արտադրության մեջ էներգիայի (տվյալ դեպքում էլեկտրաէներգիայի) դերը մեծացել է ո՛չ միայն որպես շարժիչ (մեքենաներ ու սարքավորումներ շարժող) ուժ, այլ նաև որպես գործող (տեխնոլոգիական պրոցեսներ կատարող) ուժ: Այժմ արդյունաբերության շատ ճյուղերում և գյուղատնտեսության մեջ տեխնոլոգիական նպատակով օգտագործվում են էլեկտրակայծային, էլեկտրոլիզի, էլեկտրազոդման և այլ մեթոդներ, որոնց ընթացքում էլեկտրաէներգիան ձեռք է բերում մարդու նպատակահարմար գործունեությունն ուղղակիորեն աշխատանքի առարկային հաղորդելու և այն նպատակահարմար ձևով փոփոխելու ֆունկցիա: Դրանով իսկ էլեկտրաէներգիան, փաստորեն, վեր է ածվում աշխատանքի միջոցի, տեխնիկայի:

Եթե անգամ անտեսենք էներգիայի տեխնոլոգիական պրոցեսներ կատարելու, տեխնիկայի վերածվելու այս կողմը, այն ելակետային նշանակություն ունի նաև այլ առումով: Առանց ժամանակակից էներգիայի նոր ձևերի ու նոր հատկությունների բացահայտման ու օգտագործման, ինչպես նաև առանց նոր նյութերի ստեղծման, աշխատանքի միջոցները կմնային հին՝ մեքենական մակարդակում և չէին հասնի կոմունիզմի նյութատեխնիկական բազային հատուկ մեքենաների ավտոմատ սիստեմի մակարդակին: Բավական է նշել մի օրինակ. տեսականորեն վաղուց հայտնի էր տիեզերական հրթիռների ստեղծման հնարավորությունը, բայց դրանք չէին ստեղծվում, քանի որ չկային համապատասխան վառելիք (էներգիա) ու խիստ դիմացկուն նյութ: Ինչ խոսք, որ այդ վառելիքն ու նյութը չէին կարող մարդուն տանել տիեզերք, եթե չստեղծվեին տիեզերանավերն ու դրանց տանող հրթիռները: Միայն այդ երեք տարրերի փոխադարձ զարգացումը հնարավորություն տվեց մարդուն բնության նկատմամբ ձեռք բերել նոր ազատություն: Բայց տիեզերանավերի ու հրթիռների ստեղծման ելակետ (խթանիչ) դարձան էներգիան ու նյութը:

Եվ այսպես, էներգիան (էլեկտրական և այլն) ո՛չ միայն որպես շարժիչ ուժ դառնում է տեխնիկայի հզորացման ու կատարելագործման հիմքը, այլև որպես գործող ուժ ուղղակի իմաստով ինքն է դառնում տեխնիկա:

Այնուհետև, մարդու նպատակահարմար գործունեությունն աշխատանքի առարկային հաղորդող դեր են կատարում նաև բնության այլ ուժեր, որոնց տիրապետում են մարդիկ: Այդ առումով հսկայական հեռանկարներ է բացում ֆոտոսինթեզի կիրառումը արտադրության մեջ: Հայտնի է, որ էներգիան վճռական դեր ունի նաև բնության արտադրության մեջ, ուր էներգիայի աղբյուրը արևի ճառագայթներն են: Բնության հիմնական արտադրական պրոցեսը՝ ֆոտոսինթեզը, ցույց է տալիս, որ բույսերի միջոցով ստեղծված սննդամթերքների՝ օրգանական միացությունների ստեղծման գործում արևի էներգիան ունի վճռական նշանակություն, որպես այդ արտադրության գործոններից մեկը: Բնության այդ բարդ ու հիասքանչ «գործարանում» արտադրության հիմնական գործիքի դեր են կատարում տերևները: Արևի էներգիան ո՛չ միայն խտացվում ու նյութայնացվում է սինթեզվող օրգանական միացությունների մեջ, այլև

# ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ



## ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՄԱՐՏԻԿԸ

(Հայկազ Արկադիի Կոստանյան)

Հայրը տուն էր գալիս ուշ, ներկից ու մրից կոշտացած հագուստով, ձեռքերը հոգնությունից ծանրացած: Նրա տակ ճռում էր ծռված ոտքերով թախտը: Հայրը ուժեղ էր, բարձրահասակ: Հայկազը նստում էր նրա դիմաց, աթոռակին. հայրը գունատ էր, այտերը փոս ընկած, խոշոր, սևացած ձեռքերով: Ձեռքերը... հայրը դրանք դնում էր սեղանի խնամքով մաքրված երեսին, և Հայկազն զգում էր, որ դրանք հանգստանում են: Մայրը նրանց առջև դնում էր ապուր, հաց. նրանք ուտում էին լուռ, վերջացնում էին, և հայրը առանց խոսք ասելու մեկնըվում էր թախտին, նրա գունավոր բրդե գուլպաներով ոտքերը մնում էին թախտից դուրս:

Հայկազը եղել էր կաշեգործարանում, տեսել մեքենաները, գիտեր, որ այդ մեքենաների մոտ հայրը տքնում է առավոտից մինչև երեկո, հոգնած գալիս տուն, մեկնվում թախտին և անշարժ հայացքը հառում առաստաղին: Հարևան Շալիկոյի հայրը գործարանից տուն էր գալիս հարբած, նույնպես ներկոտ շորերով, կանգնում էր բակի մեջտեղում, բռունցքները վերևի հարկի պատըշգամբների կողմը թափահարելով հայհոյում և օրորվելով մտնում տուն: Իսկ վերի պատըշգամբի մարդիկ չէին հոգնում. Հայկազն այդ հասկանում էր նրանց քայլվածքից, փափլիկ ձեռքերից, ուռած փորերից. նրանք ուտում էին ընտիր կերակուրներ, հագնում թանկարժեք ու նոր հագուստներ: Նա հասկանում էր, որ այստեղ ինչ-որ բան կա, տրամաբանությանը հակառակ ինչ-որ բան, ինչ-որ անարդարություն, որի մասին անպայման պետք է խոսվեր, որը պետք է անհանգստացներ մարդկանց: Սակայն հայրը չէր խոսում, իսկ հարևան Շալիկոյի հայրը ամեն երեկո հայհոյում, աղմկում էր ամբողջ թաղով մեկ. «Ես արդարություն ստեղծողի...»: Իսկ առավոտյան գլուխը քարշ, ասես ամաչելով գնում էր գործարան: Հայրը այդպես էլ մնացել է Հայկազի հիշողության մեջ. թախտի վրա մեկնված, լռակյաց, խոժոռ հայացքը՝ առաստաղին:

Հայկազը հավատում էր՝ ինչ-որ տեղ կան մարդիկ, որ մի օր պետք է պղարարեն աշխարհին մարդկանց միջև եղած անարդարության մասին և բողոքեն, սակայն ո՛չ իր հոր մռայլ լռությամբ և ոչ էլ Շալիկոյի հարբած հոր աղմկելով...

Հետագայում, մանկական տարիներից նա համարյա ուրիշ ոչինչ չէր հիշում: Մտածկոտ, լուրջ տղա էր: Ճիշտ է, կատակում էր, սիրում ընկերական զվարթ միջավայրը... սակայն մեծ մասամբ խոհուն էր:

Թիֆլիսյան պով երեկո: Գոլովինսկի պրոսպեկտում վխտում էր ընտիր հասարակություն. շրջում էին նուրբ ընչացքով, սև, փայլուն կաշվե երկարաճիտ կոշիկներով պինվորականներ, ժանեկազարդ ճերմակ հագուստներով ու նեղլիկ ուսերով կանայք, սև մահուդե պգեստներով առևտրականներ, նեղ, կարճ հովարով և ցից կոկարդով գլխարկներ կրող պաշտոնյաներ, անգլիական ֆրակ ու նեղ շալվար հագած մտավորականներ: Հայկազն այդ օրը ճաշել էր Աբասաբադսկայա հրապարակում գտնվող իրենց դպրոցական ճաշարանում՝ Անաստասի հետ:

Երկու դասընկերները միասին էլ դուրս եկան ճաշարանից և պբոսնում էին կուշտ ու գոհ այդ բազմության մեջ: Եվ Հայկազը նրան պատմեց իր խոհերը: Նիհար, թուխ դեմքով, միջահասակ պատանի էր Անաստասը: Հայկազը, չգիտես ինչու, հենց նրան հայտնեց իր մտքերը. այդ տղայի աչքերում կար ինչ-որ խելացի խոհ: Վստահ էիր, որ նա անպայման կհասկանա իրեն: Պատմեց դեռ մանկուց նկատած սոցիալական անհավասարության մասին: Դպրոցում, ճիշտ է, իրենց դասավանդում էին այդ ժամանակվա լավագույն հայ մանկավարժները, սակայն այն մասին, ինչ պատմում էր Հայկազը, նրանք իրենց ոչինչ չէին ասում, ամենայն պգուշությամբ լռում էին:

Ալեքսանդրյան այգում նվագում էր պինվորական նվագախումբը: Փայտե կանաչ ժանյակով երիզված բիլիարդանոցում, կանաչ մահուդով ծածկված սեղանների վրա, իրար զարկվելով չրխկում էին ոսկրե խաղագնդերը: Պաղպաղակ վաճառողի գույնզգույն անվասայլակի մոտ խմբված էին երեխաներ: Նրանք անցան մի խաղաղ ծառուղով ու նստեցին: Թեթև քամին ծառերից գցում էր աշնան առաջին տերևները: Երաժըշտությունն այստեղ հասնում էր հեռվից: Եվ այն, ինչ Անաստասը այստեղ բացատրեց Հայկազին, ընդմիշտ տպավորվեց նրա ուղեղում. սոցիալական անհավասարությունը դարեր շարունակ մտահոգել է մարդկության ազնիվ հոգիներին. այդ անհավասարության վերացումը մարդկության մեծագույն երազանքն է: Նա պատմեց փարիզյան կոմունայի մասին, և թե ինչպես հինգ թվականին Ռուսաստանի բանվորները բարիկադների վրա մարտնչում էին հանուն այդ երազանքի իրականացման:

Ուշ էր, վաղուց այգում մարել էին լապտերները, քաղաքը թաղվել էր մթնում: Այգու հեռավոր անկյունի նստարանին նստած՝ նրանք դեռ վիճում էին. Հայկազին թվում էր, թե այդ խավարը տարածվում է հեռո՛ւ, շատ հեռու... Սակայն այժմ նա չէր ընկճվում, գիտեր՝ այնտեղ, հեռվում կան ոտքի ելած ճնշվածներ և իրենց հետ բոլոր մարդկանց բերում են խավարը ցրող ազատության լույսը: «Այդ մարդիկ,— ասում էր Անաստասը,— բոլշևիկների պարտիայի անդամներն են»:

Անաստասի հետ հանդիպեցին հաջորդ երեկոյան. անցան նեղլիկ ու խավար փողոցներով, քնած բակերով և իջան ինչ-որ ներքնատուն: Կոշկակարի ցածլիկ սեղանի վրա վառվում էր նավթի լամպը, և լույսի տակ Հայկազը ճանաչեց իր ընկերներին՝ Վահան Բալայանին, Գևորգ Ալիխանյանին, Արտյոմ Բաբլումյանին և մյուսներին: Նրանց սպասում էին: Ընկերներից մեկն ասաց. «Արդեն բոլորը հավաքվեցին, սկսենք»: Ներսիսյան դպրոցի գրական խմբակի անդամներն էին նրանք: Դպրոցում կային այդպիսի խմբակներ, և Հայկազը դրանց ակտիվ մասնակիցներից մեկն էր: «Այս տղան գրադարանում է՛լ գիրք չթողեց», նրա մասին ասում էր գրադարանավար Սիմակ Սահակյանը:

Սակայն ներքնահարկում, կոշկակարի սեղանի շուրջ հավաքված պատանիները խոսում էին այն մասին, ինչ մանկությունից սկսած մտահոգել էր Հայկազին. այստեղ նա զգաց, որ ինքը մենակ չէ, համախոհները շատ են: Կես-գիշերին, երբ նրանք մեկ-մեկ դուրս գալով ցրվում էին, Անաստաս Միկոյանը նրա վերնաշապկի տակ խցկեց մի բարալիկ գրքույկ: Տանը Հայկազը հանեց գրքույկը և կարդաց՝ Կ. Մարքս և Ֆ. Էնգելս *Կոմունիստական պարտիայի մանիֆեստ:* Ամբողջ գիշեր նա կարդաց: Այնուհետև նրա մտքից այլևս չէր հեռանում այդ գրքի հետևյալ նախադասությունը. «Մի ուրվական է շրջում Եվրոպայում—կոմունիզմի ուրվականը...»: «Կախարդական գիրք էր դա,— հետագայում պատմում էր նա:— Ես հասկացա, որ այլևս իմ կյանքն ամբողջովին պատկանում է ամենասըրբազան գործին — ճնշված աշխատավորների ազատագրության համար մղվող պայքարին»:

Այսպես, անցան դպրոցական տարիները Թիֆլիսում: Նրանք ավարտեցին դպրոցը և ցըրվեցին երկրի տարբեր կողմերը՝ իրենց հետ տանելով մարքսիստական գաղափարներ: Այդ գաղափարների անձնվեր պինվորներն ամեն ինչ արին՝ սկսած գործը հաղթական վախճանին հասցնելու համար: Էջմիածնի ճեմարանում նա մնաց միայն մի տարի: Նեղ ազգայնական գաղափարներով հագեցած միջավայրից ուսանելու ոչինչ չուներ. այդ մի տարին բավական եղավ, որպեսզի համոզվեր, որ այդ գաղափարներով մոլեռանդության աստիճան վարակված մարդկանց անհնար է փոխել և, որ պատմության կողմից նրանք դատապարտված են մահվան: Եվ նա տեղափոխվում է Ռուսաստան՝ քաղաքական ու պատմական մեծ իրադարձությունների, տարբեր գաղափարների բուռն պայքարի ասպարեզ: Սովորում է Սարատովի համալսարանի բժշկական ֆակուլտետում, սակայն ռևոլյուցիոն

գործունեությունը, աշխատանքը մարքսիստական խմբակներում, մարքսիստական գրականության ուսումնասիրությունը պահանջում են համեմատաբար ավելի շատ ժամանակ: Չորրորդ կուրսից նա թողնում է ուսումը: Այստեղ, Ռուսաստանի խոշոր քաղաքներում նա ավելի մոտիկից և ավելի հստակ է տեսնում քաղաքական իրադարձությունների ընթացքը և համոզվում, որ իր տեղը ազատության ու խաղաղության համար պայքարի ելած միլիոնների շարքերում է:

Առաջին իմպերիալիստական պատերազմի տարիներին Հայկազ Կոստանյանը վերջնականապես ձևավորվում է որպես կազմակերպված ռևոլյուցիոն մարտիկ: 1916 թ. սկզբներին, տասնութ տարեկան հասակում նա ընդունվում է Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական (բոլշևիկների) պարտիայի շարքերը:

1917 թ. փետրվարյան ռևոլյուցիայից հետո Կոստանյանը գալիս է Բաքու: «Ռուխս» նավթահանքերի բանվորները հատուկ համակրանքով էին ընդունում իրենց շրջանում հաճախ հայտնվող՝ հանքային վարչության այդ երիտասարդ, գեղեցկադեմ աշխատողին, որը նրանց պատմում էր Ռուսաստանում բարձրացող ռևոլյուցիոն հզոր ալիքի, Լենինի մասին: Անհրաժեշտ էր մաքրել այդ մարդկանց ուղեղները մուսավաթականների, մենշևիկների և դաշնակների ներարկած թույնից: Իսկ այդ կատարեց Հոկտեմբերյան ռևոլյուցիան:

Ռևոլյուցիայից հետո Հայկազ Կոստանյանը նորից Սարատովում է, ընդհատակյա հին ընկերների շրջանում: Այստեղ նա նշանակվում է լուսավորության ժողովրդական կոմիսար:

Ռևոլյուցիայի ալիքը տարածվում էր Ռուսաստանի ծայրամասերը, ուր անհրաժեշտ էին ընդհատակյա գործունեության փորձ ունեցող ռևոլյուցիոներներ:

Պարտիայի Կենտրոնական կոմիտեի կողմից Հայաստան՝ ռևոլյուցիոն գործունեության ուղարկվածների հետ է նաև Հայկազ Կոստանյանը: Հայաստանում այդ տարիներին պարտիական բջիջները գործում էին անջատ-անջատ, չկար ընդհանուր ղեկավարություն, աշխատանքների կոնկրետ ծրագիր:

Եվ ահա, Հայաստանի կոմունիստական պարտիայի ղեկավար գործիչները՝ մի խումբ անձնվեր բոլշևիկ-լենինյաններ, 1919 թ. սեպտեմբերյան մի օր հավաքվում են Արշավիր Տեր-Ղազարյանցի տանը՝ նախկին Ցարսկի փողոցի վրա. Ասքանազ Մռավյան, Սերգո Խանոյան, Աստուր Կախոյան (բանվոր Խեչո), Սարգիս Կասյան, Ղուկաս Ղուկասյան, Աղասի Խանջյան, Դանուշ Շահվերդյան, Դրաստամատ Տեր-Սիմոնյան, Սերգո Մարտիկյան և ուրիշներ, մարդիկ, որոնց բնավորությունը կոփվել, ամրապնդվել էր երկար տարիների ընդհատակյա պարտիական աշխատանքում: Նրանցից յուրաքանչյուրը պատրաստ էր կյանքը վոհել հարազատ ժողովրդին բնաջնջումից փրկելու, նրա ազատության ու երջանկության համար:

Նրանց հետ էր և երիտասարդ Հայկազը:

Խորհրդակցության ժամանակ ձևավորված պարտիական հանրապետական կենտրոնի՝ Արմենկոմի կազմում Ստ. Ալավերդյանի, Աս. Մռավյանի, Դ. Շահվերդյանի և ուրիշ հայտնի բոլշևիկների հետ միասին, ընտրվում է նաև Հ. Կոստանյանը: Նրանց խնդիրն էր՝ կազմակերպել մասսաներին՝ դաշնակների բուրժուա-նացիոնալիստական ռեժիմի տապալման և երկրում սովետական իշխանության հաստատման համար:

Մինչև 20 թվականի մայիսը Հայկազի համար լարված ընդհատակյա պարտիական, կազմակերպչական աշխատանքի ամիսներ էին: Հեռու չէին Հայաստանում բանվորների և գյուղացիների իշխանության համար գալիք մարտերը, և հարկավոր էր ամենուրեք՝ թե՛ գավառում *և* թե քաղաքում կազմակերպել աշխատավոր մասսաներին, նախապատրաստել: Պետք էր եռապատկել, քառապատկել կոմբջիջների թիվը, ամուր կապ հաստատել արհեստակցական միությունների հետ, պայքար ծավալել, մանավանդ, բանակում և բանվորության շրջանում: Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների 1920 թ. հունվարյան կոնֆերենցիայում Հ. Կոստանյանը նորից ընտրվում է Արմենկոմի անդամ:

Մոտենում էր 1920 թվականի մայիսը:

Հաշվի առնելով ռևոլյուցիոն իրադրությունը՝ տեղական պարտիական կազմակերպությունները կոնկրետ միջոցների են դիմում զինված ապստամբություն սկսելու համար: Հայկազն այդ օրերին Ալեքսանդրապոլում է, Հայաստանի ռևոլյուցիոն ուժերի դարբնոցում: Կայարանից քիչ հեռու կանգնած «Վարդան զորավար» զրահագնացքը բարձրացնում է կարմիր դրոշ: Պարտիայի Ալեքսանդրապոլի կոմիտեի կոչը քաղաքում առաջացնում է ռևոլյուցիոն վերելքի ալիք: Հաջորդ օրը կայարանը բոլշևիկների ձեռքում է: Ապստամբած բանակային զորամասերը գրավել են Կազաչի Պոստը: Զրահագնացքը դառնում է ապստամբությունը ղեկավարող յուրատեսակ շտաբ:

Զրահագնացքը ետ ու առաջ է շարժվում ռելսերի վրայով, Հայկազը հրակնատից նայում է դուրս. նեղ անցքից երևում է կայարանի բարձր տանիքը, ուր փողփողում է ապստամբության կարմիր դրոշը: Այո՛, մտածում է Հայկազը, հաղթանակի դրոշը միայն կարմիր պիտի լինի, կենքը ձեռքիդ ելնում ես թշնամու դեմ և երկուսից մեկը՝ կամ նա քեզ կոչնչացնի և կամ՝ դու նրան. ու եթե ընկնես այդ պայքարում, գալիք սերունդները կհիշեն անունդ, և անմեռ փառքը կլինի վաստակդ:

Հապա Մարուսյա՞ն:

Ահա թե ինչ ունի ինքը, որը կմնա այստեղ, այս կյանքում: —

Փոթորկոտ իրադարձություններում չի կարողանում նույնիսկ մի երկտող ուղարկել նրան և միայն մտածում է. «Այ, կհաղթի ռևոլյուցիան, Հայաստանը ազատ կլինի, կգնանք Երևան, ամեն ինչ կարգի կընկնի և այն ժամանակ կարելի կլինի ապրել մարդավարի, միևնույն հարկի տակ, առանց անջատումի»:

Զրահագնացքում քնած չեն. Ղարիբջանյանը շարունակ ծխում է: Եգոր Սևյանը ափի մեջ առած ցնցում է ծանր մազերը, հայհոյում. «Նստել են այնտեղ, Երևանում և դեպքերին նայում են հեռվից. այստեղ մենք մարդկանց ոտքի ենք հանել, իսկ այդ ինտելիգենտիկները դաշնակների գլխի տակ փափուկ բարձ են ուզում դնել... Պետք է փշրել այդ գլուխը և վերջացավ գնաց...»:

Արմենկոմը հապաղում է վճռական ցուցումներ տալու: Սարգիս Մուսայելյանը մռայլ է. ամեն օր բանվորներից ու զինվորներից ներկայացուցիչներ են գալիս զրահագնացքը և հայտնում իրենց պատրաստակամությունը՝ կռվելու հանուն սովետական իշխանության:

Երեկ, 1920 թվականի մայիսի 7-ին, այս պլատֆորմում հավաքվել էին Ղարսի, Սարիղամիշի, Դիլիջանի, Քավթառլիի բոլշևիկների ներկայացուցիչները՝ Արմենկոմից եկած ընկերների հետ մեկտեղ: Ստեղծվեց Հայաստանի Ռազմահեղափոխական կոմիտե. Հայաստանի պատմության մեջ առաջին անգամ, զրահապատ գնացքում, լամպի լույսի տակ, նառերի վրա քնած զինվորների կողքին՝ ստեղծվեց Ռազմահեղափոխական կոմիտե, որի հանձնարարությամբ Հայկազը պետք է մեկներ Թիֆլիս:

Ղարիբջանյանը լռում է, հետո ընկերները ձեռք են պարզում նրան.

— Դե՛, Հայկազ, մաղթում ենք հաջողություն: Ուրիշ ի՞նչ:

Եվ գրկախառնվում են:

Նա գոտու տակ շոշափում է ատրճանակը, բացում է ծանր դուռը:

Դրսում մութ է: Լուրեր են պտտվում, որ Սեպուհը գրավել է Ջաջուռի լեռնանցքը: Այդպիսով, այդ խորամանկ աղվեսը կարող է վիժեցնել Ղարաքիլիսայի վրա շարժվելու՝ Ռազմահեղափոխական կոմիտեի մտադրությունը.

Երեկ գիշեր, խորհրդակցության ժամանակ որոշվեց Հայկազ Կոստանյանին գործուղել Թիֆլիս՝ Երկրային կոմիտեի հետ ապստամբության ժամկետը համաձայնեցնելու: Հետագայում, երբ ընկերները հավաքվում էին մի բաժակ թեյի շուրջ կրույցի, նա հաճախ պատմում էր, թե ինչպես ճանապարհին համոզեց դաշնակցական զինվորին:

«Բոլշևիկ եմ, ասացի,— պատմում էր նա:— Հնամաշ հագուստով, մազակալած դեմքով զինվորը զարմանքից ապշած բացեց կարմիր, մսոտ շրթունքներով բերանը. մարդը երևի առաջին անգամ էր տեսնում բնական վիճակում բոլշևիկ: Եվ, երևի, բոլշևիկի դեմքին և հայացքի մեջ ամեն ինչ մարդկային էր, որովհետև զինվորը կզուշորեն զննեց շուրջը և, համոզվելով, որ իրենց ոչ ոք չի լսել, ասաց. «Նստիր կողքիս, ես քեզ կանցկացնեմ, դու իմ հորեղբոր տղան ես»:

Այդպես անցավ Ջաջուռը, հասավ Ղարաքիլիսա: Այդտեղից այն կողմ էլ հեշտ չէր անցնելը. մի քանի անգամ քիթը կուպե խոթեց մենշևիկյան խուզարկուն. այդպիսի պահերին, նա ջանում էր զսպել հուզմունքը, սակայն մկաններում զգում էր դող և ակամա հիշում գոտու տակ թաքցրած ատրճանակը:

Այսպես նա հասավ Թիֆլիս: Այստեղ նա լսեց Ալեքսանդրապոլում ապստամբության պարտության լուրը: Ձերբակալված են Ղարիբջանյանը, Մուսայելյանը, մյուսները...

Գիշերը նրան անկողնից հանում են չորս ոստիկան, զինաթափում և, ապտակներով իջեցնելով, խցկում են փակ կառքի մեջ:

Տասնհինգ օր մնում է Մետեխի բանտում: Այստեղ արդեն ժամանակ կար, նա կարող էր դատել կատարվածի մասին, կարող էր պլանավորել: Հետագայում էլ, երբ հիշում և պատմում էր Ալեքսանդրապոլի ապստամբության մասին, համեմատում էր այն Փարիզյան կոմունայի հետ. «Ապստամբած հերոսները,— ասում էր նա,— այնտեղ իսկապես գրոհում էին երկինքը»:

Միխա Ցխակայայի խորհրդով ընկերների հետ միասին նա բանտում սկսում է ուսումնասիրել *Կապիտալը:* Նա ասում էր ընկերներին.

«Մեզ, կոմունիստներիս, գաղափարական զինվածությունից բացի անհրաժեշտ է տիրապետել նաև մարտական վենքին: Ալեքսանդրապոլում մայիսյան ապստամբության փորձը ցույց տվեց, որ ռևոլյուցիան դատարկ ձեռքերով չեն անում, զինված ապստամբության համար պահանջվում են մարտական գործն իմացող մարդիկ, որոնք կարող են դիպուկ կրակել թշնամու վրա»: 1920 թ. մայիսի վերջերին Սովետական Ռուսաստանի և Վրաստանի միջև կնքված պայմանագրով քաղաքական կալանավորները բանտից ազատ արձակվեցին:

Մեկ ամիս անց Հայկազը Բաքվում էր: Չնայած անառողջ վիճակին, նա մշտական կապ էր պահպանում Հայաստանի պարտիական կազմակերպությունների հետ, լուրջ աշխատանք տա-

նում ապստամբության պարտությունից հետո ցաք ու ցրիվ եղած կազմակերպությունները վերամիավորելու, պարտիական ղեկավարության կազմակերպչական մասնատվածությունը վերացնելու, ինչպես նաև՝ Հայաստանի կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի և նրա արտասահմանյան բյուրոյի ստեղծման գործում: Ողջ էությամբ նա նվիրվում է Հայաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի իրականացման գործին: Զենքը ձեռքին նա ակտիվ մասնակցում է Հայաստանում սովետական կարգերի հաստատմանը:

1920 թվականի դեկտեմբերից մինչև 1921 թվականի մայիսը նա Սովետական Հայաստանի սոցիալական ապահովության կոմիսարն է, 1921 թվականի փետրվարին՝ դաշնակցական ավանտյուրայի ջախջախման մասնակից, 1922 թվականից՝ Հայաստանի ներքին գործերի ժողովրդական կոմիսար. այս պատասխանատու պաշտոնում նա իր ուժերը դրսևորում է լավագույն ձևով: Այնուհետև նա վարում է պարտիական ու սովետական պատասխանատու պաշտոններ՝ Սովետական Միության տարբեր ռեսպուբլիկաներում:

1928 թ. որպես ճանաչված ու հարգված պարտիական ու սովետական գործիչ նա ընտրվում է ՀԿ(բ)Պ Կենտկոմի առաջին քարտուղար:

Կենտկոմի նոր քարտուղարը ապրում էր Աբովյան փողոցի վրա «Ինտուրիստ» (այժմ «Երևան») հյուրանոցի մոտ գտնվող երկհարկանի տան երկրորդ հարկում, զբաղեցնելով երեք սենյականոց ընդհանուր բնակարանի սենյակներից մեկը. երկրորդ սենյակում ապրում էր Հայաստանի ժողկոմխորհի նախագահ Սահակ Տեր-Գաբրիելյանը, իսկ երրորդ սենյակը, որի մեջ բացվում էին այդ երկու սենյակների դռները, ընդունարանն էր, կամ ընդհանուր սենյակը: Հաճախ Թիֆլիսից նրա մոտ էր գալիս Մարուսյան. նրա անձնական կյանքի անբաժան ընկերը:

Երբեմն նրա մոտ հավաքվում էին հին ընկերները՝ Ներսիսյան դպրոցի հեղափոխական սաները, ընդհատակյային ընկերները՝ հեղափոխական մարտերին մասնակցած պինակիցները, ղեկավար աշխատողներ. կրուցում էին մինչև ուշ գիշեր, հիշում իրենց անցած օրերը, ընկերներին, որոնք ընկան ազատության պայքարի ճանապարհին: Այդ ընկերները հավաքներում վիճում էին գրականության ու արվեստի ամենատարբեր խնդիրների շուրջը, քննարկում ու մշակում էին ռեսպուբլիկայի զարգացման հեռանկարները: Նրանք մտահոգված էին հարազատ ժողովրդի երջանկության կռման հոգով:

Ես հաճախ եմ հանդիպել Հայկազին,— գրում է հին բոլշևիկ Գ. Ոսկանյանը,— ինչպես նրա ընդհատակյա գործունեության շրջանում, նույնպես և սովետական իշխանության հաստատումից հետո, և ամեն անգամ նրա բնավորության մեջ հայտաբերում էին լենինյան տիպի ռևոլյուցիոների նորանոր հիանալի գծեր: Արիակամ, սկզբունքային և բյուրեղի պես մաքուր կոմունիստ էր նա: Ջերմորեն սիրում էր իր պարտիային, խորապես հավատում նրա գաղափարների հաղթանակին: Հայկազը պարտիայի անձնազոհ մարտիկն էր:

Նա սկզբունքային կոմունիստ էր,— հիշում է հին բոլշևիկ Ա. Բաբլումյանը,— պարտիայի դեմ մեղանչողին նա չէր խնայում:

Այսպիսին էր նա՝ Հայկազ Կոստանյանը, ուր էլ որ լիներ, ինչ աշխատանքի էլ ուղարկեր նրան պարտիան—Ղրիմի մարզկոմի առաջին քարտուղար, թե Պրոֆինտերնի պատասխանատու քարտուղար, քաղբաժնի պետ, թե պարտիական պրոպագանդիստ:

Հայկազ Կոստանյանը եռանդուն կազմակերպիչ էր ու կարող ղեկավար: Նա Ա. Խանջյանի, Ս. Տեր-Գաբրիելյանի և մյուս ընկերների հետ շատ ջանքեր է թափել ռեսպուբլիկայի ինդուստրացման պլանների մշակման և կիրառման գործում: Հայաստանում, Ղրիմում ու Պրոֆինտերնում գործած տարիներին դրսևորվեցին նրա որպես քաղաքական գործչի բնորոշ գծերը՝ անսասան հավատ պարտիայի գործի նկատմամբ, մասսաներին կազմակերպելու և նրանց ամենօրյա պայքարը սոցիալիզմի կառուցման մարտերում գլխավորելու կարողություն, հասարակական գործունեության մեջ անվիճող սկզբունքայնություն:

Ինչպես յուրաքանչյուր ոք կյանքում, Հայկազ Կոստանյանը ևս բուռն պայքարում հանդես էր բերում անխուսափելի կրքոտություն, որի հետևանքով և մասնակի շեղումներ լենինյան գծից: Հետագա տարիներին, երբ նա հեռվից էր նայում հարազատ ժողովրդի անցած ճանապարհին, անկեղծորեն ընդունում էր, որ իր ղեկավարության տարիներին Հայաստանում սխալ մեկնաբանություն տրվեց հայ ժողովրդի անցյալի ազատագրական պայքարի ու կուլտուրական ժառանգության մի քանի հանգուցային հարցերին:

Նա ևս, իր մի շարք ընկերների հետ, 1937 թվականին ապօրինության և կամայականության զոհ դարձավ:

Կ. ՏՈՆՈՅԱՆ

# Նոր մարդու ԵՐԿՈՒՆՔԸ

## ԻՍԿԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՈՒՄԸ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ Է

«Լենինյան ուղիով» ամսագրի էջերում ուսուցման և դաստիարակության շուրջ բարձրացված հարցերը այսօր չափազանց հուզում ու հետաքրքրում են ո՛չ միայն մանկավարժներին: Կոմունիզմի ծավալուն կառուցումը մեր դպրոցի առաջ անհետաձգելի խնդիր է դրել՝ հասարակությանը տալ բազմակողմանիորեն զարգացած շրջանավարտներ, որոնք կարողանան հաստատուն քայլերով մտնել կյանք, ինքնուրույն լուծել արդիականության առաջադրած պրոբլեմները:

Դպրոցի առջև ծառացած հենց այս խնդիրն է, որ դաստիարակությունը դարձնում է ուսուցմանը հավասար անհրաժեշտություն:

Այսօր մեր դպրոցը չի կարող առաջ գնալ երեկվա քայլերով, բավարարվել ձեռք բերած նվաճումներով:

Ուսուցման և դաստիարակության համար չափազանց կարևոր հանգամանք է ուսուցչի և աշակերտի փոխհարաբերությունը: Ի՞նչ ուղիով կընթանա նրա սաներից յուրաքանչյուրը, ի՞նչ տեղ կգտնի կյանքում, երջանի՞կ կլինի, թե՞ դժբախտ — դրա համար մեծ պատասխանատվություն է կրում ուսուցիչը: Նրա գիտելիքները ու վարպետությունը, ճիշտ փոխհարաբերությունը աշակերտների հետ բախտորոշ նշանակություն ունեն վերջիններիս համար:

Հաճախ, թեև իրավացի, մենք շատ ավելին ենք պահանջում ուսուցչից, քան ներում են պայմանները: Օրինակ, չասենք ինչպես, բայց ի՞նչ արդյունք կարող են տալ քաղաքի ճանաչված դպրոցներից մեկի (Խ. Աբովյանի անվան) տարրական դասարաններում պարապող ուսուցիչների գերհզոր ջանքերն անգամ, երբ երեխաները մինչև ծնոտները թաղված են իրենց տարիքին անհամապատասխան նստարանների մեջ, դասասենյակները զուրկ են նորմալ լուսավորությունից ու արևից, այնտեղ նստարաններից ու գրատախտակից բացի ոչինչ չկա: Այս անհրապույր՝ երեխաներին միայն տաղտուկ բերող դասասենյակները վանում են նրանց հետաքրքրասիրությունը, կոտրում նրանց աշխույժը և, որ ամենացավալին է, վնասում են աշակերտների ֆիզիկական ու հոգեկան նորմալ աճին: Եվ, այնուամենայնիվ, բոլոր նման դեպքերում ամեն մի մանկավարժ պետք է ամենայն լրջությամբ, իր վրա դրված պատասխանատվության խոր գիտակցությամբ որոնի ու գտնի ուսուցման և դաստիարակության արդյունավետ մեթոդներ:

Ուսուցչի տակտով, աշակերտների հետ ունեցած փոխհարաբերությամբ է մասամբ պայմանավորված երեխայի անհարկի ամոթխածությունն ու ինքնամփոփությունը, համարձակությունն ու ինքնավստահությունը, գոռոզամտությունն ու ինքնահավանությունը և այլն:

Ուրեմն՝ պակաս գիտելիքներով կամ ճիշտ դաստիարակություն չստացած կյանքի ուղեգիր ստացող պատանու սխալների ու սայթաքումների համար, սխալ չէր լինի, եթե, ասենք, հիմնականում պատասխանատու են դպրոցն ու մանկավարժները: Իրավ, երբ Նելսոն Ստեփանյանի, Հունան Ավետիսյանի, տիեզերքը նվաճող հերոսների սխրագործությունների հիմքում տեսնում ենք այն դպրոցների ու մանկավարժների երախտիքը, որոնք նրանց մեջ դաստիարակել են դյուցազնական ոգի, ապա ինչպե՞ս կարող ենք չհիշել նաև այն դպրոցն ու մանկավարժներին, որոնց սանը դարձել է քրեական հանցագործ:

Բերեմ ուսուցչի և աշակերտի ոչ ճիշտ փոխհարաբերության մի օրինակ: 9-րդ դասարանի ծնողական ժողովում հայոց լեզվի և գրականության դասատուն պատմեց այսպիսի մի «աննշան» դեպք. «Նոր դասը բացատրելուց, ամփոփելուց ու տնային հանձնարարություն տալուց հետո երբ դիմեցի դասարանին, թե ո՞վ հարց ունի, Լարիսան թույլտվությամբ կանգնեց ու հարցրեց.

— Տա՞նը պետք է գրենք շարադրությունը, թե՞ դասարանում:

— Չգիտեմ: Ես ամեն ինչ պարզ ասացի, բարի լինեիր լսել,— պատասխանեցի զրգոված, չոր ու կոպիտ:

— Իսկ ի՞նչ վատ է իմանալու համար հարցնելը,— ոչ հանդուգն, ոչ հանդիմանող, բայց արդարացող տոնով ասաց Լարիսան ու նստեց:

Փորձեցի խոցել աղջկան «հանդուգն» պատասխանի համար, բայց զսպեցի ինձ: Զսպեցի և... խորհեցի... Այդ մասին էի մտածում նաև տանը

նան մեկից ու մյուսից պարզապես ոչինչ չիմացող, անգամ երաժշտական լսողությունից զուրկ աշակերտները: Ես չեմ կարող մի մուկ էլ նըկարել, բայց, որքան հիշում եմ, միշտ էլ նկարչությունից «5» եմ ստացել: Կարծում եմ՝ ես բացառություն չեմ. չեմ հանդիպել մի դպրոցականի (նախկին կամ այսօրվա), որ երգեցողությունից կամ նկարչությունից ո՛չ միայն երկու, այլև երեք գնահատական ստացած լինի: Ամեն մի առարկայի գնահատական միաժամանակ տվյալ անձնավորության այդ կողմի բնութագիրն է, որը պետք է լինի ռեալ: Ի դեպ, երգ-երաժշտությունից, նկարչությունից նույնպես պահանջվում է աշակերտների գիտելիքները գնահատել այնպես, ինչպես մյուս առարկաներից, սակայն, մեր կարծիքով, թե՛ այդ երկու առարկայի, թե՛ օտար և ռուսաց լեզվի (հայկական դպրոցում) վատ գնահատականը չպետք է ազդի աշակերտի դասարանից դասարան փոխադրվելու վրա:

Բոլորի համար էլ պարզ է, որ լավ է, երբ մարդ մի քանի լեզու գիտե, բայց երբ որևէ մեկն էլ իր մայրենի լեզվից բացի չգիտե ուրիշ և ոչ մի լեզու, ապա դա չի խանգարում, որ նա մայրենի լեզվով ձեռք բերի իրեն անհրաժեշտ գիտելիքները և հասարակության համար դառնա պիտանի մարդ: Մի՞թե երգել, նկարել, կամ մայրենի լեզվից բացի այլ լեզու չիմանալը կարող է խանգարել որևէ մեկին, որ նա լավ մաթեմատիկա, ֆիզիկա, քիմիա կամ կենսաբանություն իմանա և հաջողություն ունենա այս կամ այն բնագավառում:

Որքան հաջող ու հմտությամբ է ընթանում դպրոցում ուսուցումը, այնքան հաջող և արդյունավետ է դաստիարակությունը: Դաստիարակությունը ուսուցման մյուս երեսն է, ուսուցման արդյունքը, որ կարող է վատ կամ լավ, սխալ կամ ճիշտ լինել: Երբ ուսուցումը սխոլաստիկ է, դոգմատիկ, ապա դաստիարակությունն էլ սխալ է, հասարակության իդեալներին անհամապատասխան, նպատակներին անհարիր և այս դեպքում կարող է խոսք լինել ոչ ճիշտ, վատ դաստիարակության, բայց ոչ դրա բացակայության մասին:

Այս առումով էլ դժվար է համաձայնել Մ. Հակոբյանի մանկավարժ և ուսուցիչ բառերի իմաստային նեղ, բառարանային սահմանազատված բացատրության հետ («Լենինյան ուղիով» № 1, 1965, էջ 104): Այնպես է ստացվում, որ ուսուցիչ բառն արդեն համանշանակ է վարժապետ բառին: Հոդվածագիրը վկայակոչում է բառարանները, մոռանալով, որ դրանք իրենց բառիմաստային բացատրություններ են և ոչ թե հասկացության տրամաբանական սահմանումներ: Հենց իր իսկ բերած «մանկավարժ» բառի դիմաց կարդում ենք. «Երեխաներին վ ա ր ժ ե ց ն ո ղ, դաստիարակող, մ ա ր զ ո ղ...» (ընդգծումը մերն է — Բ. Ծ.):

Այսօր ոչ ոք էլ մանկավարժ բառի մեջ չի դընում վարժեցնող, մարզող իմաստը: Այն ծավալով ավելի լայն հասկացություն է և ընդգրկում է նաև ուսուցիչ, դասատու հասկացությունները: Ուսուցիչը մանկավարժ է ուսուցանելու և դաստիարակելու իմաստով, բայց ոչ ոք չի ասում լեզվի և գրականության մանկավարժ, հանրահաշվի մանկավարժ և այլն: Մինչդեռ համաձայնելով ընկ. Հակոբյանի «ուսուցիչ» բառի բացատրության հետ՝ մենք այն պետք է ըմբռնենք «վարժապետ» բառին համանշանակ և հրաժարվենք մեր երեխաների կրթությամբ զբաղվող մարդկանց այդ բառով կոչելուց:

Հնարավոր չէ, և չենք էլ հավակնում մի հոդվածում հանգամանորեն անդրադառնալ խմբագրության կողմից բարձրացված բոլոր հարցերին: Համոզված ենք, որ այդ կարգի քննարկմանը մասնակցող մանկավարժների և մեր դպրոցների առաջավոր ու հարուստ փորձ ունեցող ուսուցիչների ընդհանուր ջանքերով:

Բ. ԾԱՏՈՒՐՅԱՆ



Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24

ՎՖ 05233 Պատվեր 1843 Տիրաժ 9000 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 25/VI 1965 թ.:

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։

# ԲԱՑՎԱԾ Է

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

ՏՆՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻ

1965 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒԼԻՍ-ԴԵԿՏԵՄԲԵՐ ԱՄԻՍՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*հրապարակում է ՍՄԿՊ և ՀԿՊ պատմության, ռևոլյուցիոն շարժման, քաղաքատնտեսության, փիլիսոփայության, արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի, միջազգային կյանքի վերաբերյալ հոդվածներ։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է ռեսպուբլիկայում կոմունիստական շինարարության պրակտիկան, զետեղում է նյութեր պարտիական, կոմերիտական, պրոֆմիութենական և սովետական շինարարության, պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքի հարցերի մասին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է գիտության, գրականության ու արվեստի զարգացման հարցերը, տպագրում է կոնսուլտացիաներ, տեղեկանքներ, մամուլի տեսություններ, քննադատական-գրախոսական հոդվածներ, պատասխանում է ընթերցողների հարցերին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*տպագրում է նյութեր եղբայրական սովետական ռեսպուբլիկաների, ժողովրդական դեմոկրատիայի երկրների, միջազգային կոմունիստական շարժման մասին։*

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՐԺԵՔԸ**

Վեց ամիսը — 1 ռ. 50 կ.
Երեք ամիսը — 75 կ.

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝**

*Կապի գրասենյակներում, բաժանմունքներում, «Սոյուզպեչատ»-ի քաղաքային բաժիններում, գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով։*

*«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»*